Alishan

ՏԵՂԱԳԻՐ

# ՀԱՅՈՑ ՄԵԾԱՑ

Ի ՎԵՆԵՏԻԿ

1855

Alishan

# ՏԵՂԱԳԻՐ

# ՀԱՅՈՑ ՄԵԾԱՑ

Ի ՎԵՆԵՏԻԿ

1855

# ՅԱՌԱՋԱԲԱՆ



ՅԵՏ խաղաղոյ անցանելոյ մերթ տաղապաճեւմ դեգերմանցս եւ մերթ արշաւանքի ընթացիցս՝ 'ի գնին եւ 'ի ծանօթ համուրց սահմանաց քաղաքաբնակ երկրի, աշխարհագրական պատճենիւ, զօրէն արանց բազմաշրջութեամբ յածելոց 'ի տար աշխարհս, եւ այնուհետեւ մանաւանդ որոց եհաս զբօսանողակ երկրաւ պատել, ախորժաբար արդ զերեսս հատատուեալ դառնալ դադարել յանմռաց կայանս հանգստեան մերոյ, 'ի բնաւելոյն հայկեան տոհմիս. զուգընթացեալս ունելով զհօրանջն համազգիս, գուցէ թէ եւ յառաջահասս: Արդ զոր նոքա գովանի եւանդեանք 'ի վաղուց հետէ փափագանօք խնդրելին՝ տեսանել զնկարագիր երկրի գիւրեանց նախնական հայրենեաց, եւ զոր մեր իսկ ըղձումն եւ խոստումն յուսացուցանէր 'ի հերուն, ընծայեմք աւասիկ զայս ՏԵՂԱԳԻՐ ՀԱՅՈՑ ՄԵԾԱՑ. քանզի զՓոքուն եւ զայլոց անանց հայաբնակ աշխարհաց նկարագիրս՝ մատուցաք հանուրցս 'ի կարգի համաշխարհական տեղագրութեանս, իբրու ոչ սեփականաց առաջնոց հաւուց ազգիս, իբրեւ զայս՝ զոր այժմս առաջի առնեմք, ընդարձակագոյն բանիւք. որպէս եւ օրէն է ամենայն աշխարհագրաց, գիւրեանց երկրին ճառս յերկարել, զայլոցն 'ի չափու ունելով: Իսկ մեզ եւ առաւելութեամբ հանդերձ այս պարտք 'ի վերայ կային. մի՝ զի ոչ գտանի առ օտարս ոճով ինչ տեսացեալ զբօսանողակ Հայաստանեացս, նա եւ երկարապատումն իսկ 'ի նոցանէ եւ բազմահատոր մատենից հեղինակք աշխարհագրիցն՝ յերկուս էջս կամ թուղթս բովանդակեն զծանօթութիւն երկրիս Հայոց. եւ միւս եւս, զի աշխարհս մեր աշխարհ հին է, եւ 'ի կարգի մատենագրական եւ վաղնջական անուանեալ աշխարհաց, եւ նման նոցին բազում մասամբ թաքուցեալ ընդ սրբազան այլ եւ տխրական քօղով. սակայն ոչ եւ 'ի սակի իսպառ մոռացելոցն եւ անցելոց, չասեմ երկրի անցելոյ՝ այլ բնակչին իւրոյ պայազատի, նման Քաղդէացւոցն եւ Ասորոց եւ Փիւնիկեցւոց ազանց, այլովքն հանդերձ. այլ մերս ազգ եւ վայր՝ անցեալ եւ դեռ կայ, ոչ ոք երիցագոյն քան զնա, եւ ոչ ոք դարձեալ 'ի հնոցն՝ նորութեան ընդել եւ ընկալուչ քան զնոյն. որպէս զի եւ բնութիւն իսկ իւր յորդոր լինի ամենայն իմաստասէր մտաց՝ 'ի փոյթ քննութեան եւ գիտութեան երկրի Ազգին, որ յանդգնի առել ոչ միայն իւր զայն՝ այլ եւ հանուրց նախնական հայրենիս, այլ սեփական՝ ինքեան միայնոյ:

Ոչ յոյժ իսկ ոչ զոք 'ի մերոցս կարծեմ հակառակել. նա մանաւանդ խիթամ, թէ փաստս եւս ոք 'ի վերայ իւրոցն տենչից եւ յիմոց բանիցս առեալ, յանդիմանել զիս նկրտեսցի, ասելով. թէ զի այդպէս է՝ ընդէ՞ր ոչ ուրեմն եւ եւս երկարագոյն եւ մանրամասն աւանդեցեր մեզ զտեղագիր ցանկալի հայրենեացս, որում փափագեալ մնայաք: — Յուշ այդպիսումն սիրաբանի առնեմ զառ 'ի սկզբանն օրինակաւ ասացեալս, եթէ յերկար եւ յերկրապարփակ ուղեւորութենէ դարձ առնեալք. իբրեւ մասն ընդ բոլորի կամեցեալ պատշաճեցուցանել եւ զայս գործ ընդ քաղաքական աշխարհագրութեանս, եւ ոչ թէ որպէս 'ի միայնակ 'ի մերում երկրիս յածելով ընդ համուր կոյս, ամենայն նորայոցն ցանկալեաց եւ պիտանեաց կամիցիմ հանդէս առնել աստանօր. զի թէ այնպիսի ինչ կամէաք առնել առ 'ի գնորա եւ զմեր իղձս լնուլ, յոլովագոյն եւս ժամանակաց պէտք լինէին մեզ. եւ թէպէտ կարող էաք զաշխարհաց ոմանց եւ զգաւառաց ընծայել նկարագիրս ձիգս եւ բազմավէպս, օժանդակութեամբ նախնեացն մերոց յիշատակարանաց եւ նորոց տեղագրաց եւ ուղեւորաց մանաւոր գաւառաց, եւ լուսաւորել զնոսին՝ նոցա եւ մեր ջանիւք, սակայն մնացելոցն մթութիւն թխագոյն եւս թուէր թանձրանալ. յաղագս այսորիկ ոչ թուեցաւ մեզ պատշաճ եւ վայելուչ՝ զմիոյ մասնէ երկայնս աւանդել, եւ զայլոց կարճ 'ի կարճոյ կամ թէ զանխուլ անցանել, մինչեւ քննեալ մի առ մի զամենայն. ապա եւ օրէն համարեցաք յայսքան եւ յայս ձեւ չափաւորել այժմ զՏեղագիրս:

Սակայն մի եւ զայս ոք թեթեւ եւ վարկպարազի համարեսցի աշխատութիւն. քանզի եւ 'ի համառօտութեան իւրում ունի սա՝ որպէս յուսամք, տալ ծայրալիր ծանօթութիւն նոր զընդհանուր կողմանց Հայաստան աշխարհի, զբնական եւ զքաղաքական, որքան ոչ է ուրեք ցարդ ամփոփեալ՝ յետ երկասիրութեան բազմերախտ Հօրս մերոյ Ինճիճեան վարդապետի, որոյ պատուական մատեանն՝ Նոր Հայաստան, կիսադարեան հնութեամբն չունի արդ զնորագունիցս լնուլ փափագ. են են եւ այլոց յետ նորա մանրապատում նկարագիրք նա եւ մատեանք ողջոյն, այլ զգաւառաց եւ զտեղեաց ոմանց, եւ ոչ ընդհանուր, որպիսիք են Տեառն Յովհաննու Շահխաթունեան վարդապետի Ստորագրութիւն Էջմիածնայ եւ հնգեցուն գաւառաց Արարատայ, (տպագրեալ 'ի Ս. Էջմիածին յամին 1842). եւ Տեառն Սարգսի Ջալալեան վարդապետի Ուղեւորութիւն 'ի Հայս սահմանակիցս Սերաց եւ Ռուսանից, (տպագրեալ 'ի Տփխիս յամին 1842), եւ այլոց ոմանց՝ հրատարակեալք յազգային լրագիրս, կամ զոր մեք յիշեցաք 'ի յառաջաբանի Քաղաքական աշխարհագրութեանս: Արդ զայդ ամենայն յակն արկեալ մեր, եւ 'ի վերայ այնոցիկ 'ի ձեռին ունելով զպատուականագոյնն եւ զչեւ եւս հրատարակեալ վաստակ մերոյս արգոյ եւ հոգեկից եղբօր Հ. Ներսէսի վարդապետի Սարգսեան, բազմամեայ ուղեւորի 'ի մասն Փոքուն եւ Մեծաց Հայոց, եւ հաւատարմագոյն ընդօրինակողի հայ արձանաց տեղեացն յորս շրջեցաւ, այլ եւ յօտարազգի ճանապարհագրաց ընթերցեալ առաւել քան զյիսնից տեղագրութիւնս կողմանց կողմանց Հայաստան աշխարհիս, եւ բաղդատեալ ընդ իրար եւ ընդ նախնեաց մերոց աւանդս՝ յերիւրեցաք զայս Տեղագիր: Ունէաք առաջի եւ զաշխարհացոյց տախտակս ոմանս ընտիրս, զԱնգղիացւոց ուղեւորաց, եւ զՌուսաց՝ զիւրեանց բաժնին, եւ զգեղեցիկ քառեակ տախտակն Քոխայ գերմանացւոյ ուղեւորելոյ 'ի Հայս եւ 'ի Կովկաս (յամսն 1836-44, K. Koch, ճարտարեալ 'ի Պերլին յամին 1850), եւ զընտրելագոյնն բնաւից եւ զնորագոյն զՌայմերայ (Dietrich Reimer, անդ 'ի Պերլին 'ի 1854), որք ճշգրտագոյն են քան զվաղ հրատարակեալսն առ 'ի մէնջ եւ զյարեալսն 'ի սմա զփոքր աշխարհացոյցս Հայաստանի՝ ցուցանեն զսահմանս միճակաց եւ զբարձրութիւնս վայրաց, առաւելեալք եւ ընդարձակութեամբ իւրեանց:

Փոքր մի յերկարեցաք 'ի բնական նկարագրի աշխարհիս զերանգն պարաձգութիւնս եւ զհրաշալիս զօրութիւնս, եւ զգետոցն աղբերս եւ զօժանդակս, զանձանօթն 'ի բազմաց. եւ մեզէն իսկ համարձակեցաք զաղբերավայրն գետոց եւ զպարս կամ զկոյտս լերանց որոշել. վասն որոյ եւ ակն ունիմք ներողութեան բնախօսից հետաքննաց՝ եթէ վրիպեցաքս, զի եւ մեք յապայցն քննութիւն ապաստան առնեմք զուղղութիւն եւ զլրումն թերութեանցն ։ Նախորդ վարկաք զվիճակացն իւրաքանչիւր գաւառեան թուել, թող զի եւ զբազմաց անգիտանամք տակաւին, այլ զգլխաւորսն եւ զնշանաւորս ոմանս 'ի հնումն կամ 'ի նորումն. եւ տեղեաց՝ զորոց անուանս առ օտարս օտար տառիւք գտաք գրեալս եւ երկբայիմք զստուգութենէ հնչմանց անուանցն, զտարակուսութեան նշանն (?) առընթեր եդաք, մինչեւ յազգայնոցս կամ այլուստ ստուգեսցուք ։ Իսկ զկարի նշանաւոր եւ զփափագատենչ վայրացն ստորագրութիւն՝ սուղ ինչ ընդերկարեցաք, մանաւանդ զորոց եւ զտեղացոյց պատկերսն յանդիման առնեմք, զգաղափարեալսն 'ի գեղեցիկ եւ գովաբանեալ ուղեւորութեանց Տիւպուայի հելուետիացւոյ (Dubois de Montpéreux, տպագրեալ 'ի Բարիզ յամին 1839), եւ զԴէքսիէի գաղղիացւոյ արքունի ճարտարապետի (Ch. Texier, 'ի Բարիզ, 1846), եւ յայլոց ոմանց ։ Որովք եւ ակն ունիմք հաճոյագոյն զվաստակս զայս ընծայեցուցանել հանդիպելոցն. առաւել եւս զհայրենասիրացն մերոց գրգռել զսենս եւ զքաղց 'ի խնդիր եւ 'ի ճաշակ լիագոյն ծանօթութեանց. զկարօղացն եւ զգիտողաց՝ զօժանդակութիւն առ մեզ կամ առ այլս յընդաճումն այսպիսեաց տեղեկութեանց. եւ զանկարողացն առ այդոսիկ՝ զբարեսէր կամս առ վաստակաւորսն, առ սատարողս եւ առ միմեանս ։

Ի Ս. ՂԱԶԱՐ

յ'ԺԵ Մարերի ամսոյ ՌՅԴ թուին (1855).

Հ. ՂԵՒՈՆԴ Վ. ԱԼԻՇԱՆԵԱՆ

*Հայրենի եւ պարծելի բնիկ Հայկազանց աշխարհն, տունն արեւելից, որ առաջին է մասն եւ գլուխ օրինակ իմն բոլոր աշխարհի... եւ կամ թէ կոչել զնոյն աշխարհ է իրաւ՝ հայր եւ հաւ մարդկութեանս. յորում դադարեալ տապանն Նոյի, եւ բացեալ՝ անտի դարձեալ սերեցաւ մարդկային զարմ.*

**ՍԱՄՈՒԷԼ ԱՆԵՑԻ**

*Որ երթայ յաշխարհն Հայոց՝ աշխարհ մեծ է. յամս երկոսս եւ յերիս հազիւ կարէ ճանաչել, նախ զիրս աշխարհին՝ զդիւրն եւ զդըժուարն, ապա զմարդիկ աշխարհին.*

**ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑԻ**



ԱՇԽԱՐՀՆ որ յանուն Հայկայ հեղինակի ազգիս և լեզուի՝ յորում գրի բանս, կոչի ՀԱՅՔ և ՀԱՅԱՍՏԱՆ 'ի բնիկ ժողովրդենէն, իսկ յօտարաց ԱՐՄԵՆԻԱ կամ ԱՐՄԷՆՔ, յանուն հայկածին Նահապետացն Արամենակայ և Արամայ, և կամ ըստ պանծանաց բնակչացն առաջնոց՝ իբրև Արի-արանց երկիր. իսկ ըստ Սրբազան գրոց Երկիր ԱՐԱՐԱՏԱՅ. զետեղեալ կայ գրեաթէ 'ի միջավայր հնոյ աշխարհի, յասիականն բաժնի, ընդ մէջ կրկին միջերկրեայ ծովուց, Եւքսինեայ և Կասպից, ձգեալ տարածեալ երբեմն մինչ ցեզերս ծովուն մեծի, որ է բուն Միջերկրականն. բայց բնիկ սահմանք Հայոց որ և ՄԵԾ ՀԱՅՔ, յորոշումն փոքուն և այլոց աշխարհաց՝ որոց յետոյ տիրեցին, ամփոփին ընդ մէջ 36° 40′ և 41° 50′ աստիճանաց հիւսիսական լայնութեան. և ըստ արևելեան աստիճանաց երկայնութեան միջօրէին Բարիզու յ'36° է ց'47°, որ է ըստ արարատեանն Մասեաց երկայնութեան 6° ընդ արևմուտս և 6° ընդ արևելս։

2. Ըստ եզերց աստիճանացդ սահմանին Մեծ Հայք՝ յարևմտից կողմանէ հարաւահոսան Եփրատ գետով, որ անջրպետէն ընդ Փոքր Հայս, 'ի կողմանց Սևերակայ ցԱկն. անտի և 'ի վեր լերինք Անտիտաւրոսի անջրպետեն ընդ կրկին Հայս ցսահմանս Պոնտոսի. յորմէ առնու հիւսիսային սահմանն ոլորեալ առ Եգերօք (Աճարա) և Վրօք և Կուր գետով, մինչև 'ի Կովկաս լերինս ընդ արևելս կոյս. և յայսմ կողմանէ սահմանի նովին գետով և լերամբք և ծովովն Կասպից, և խոնարհագոյն՝ Գիլան և Ատրպատական աշխարհօք. իսկ 'ի հարաւոյ՝ հնով աշխարհաւն Մարաց և նորով պարսիկ Քրդաստանաւ, և Ասորեստանեօք այսինքն՝ ըստ հիւսիսոյ Մուսուլ նահանգի ցՃէզիրէ, և Միջագետօք՝ ըստ հիւսիսոյ Մծբնայ և Մարտինայ ցՏիարպէքիր և ցաշխարհն Եփրատացւոց և ցնոյն գետ՝ յարևմուտս կոյս, մինչև 'ի կողմանս Սևերակայ, ուր և բոլորին սահմանքն։ — Մեծածիգ երկայնութիւն աշխարհին Հայոց յարմկանէն Եփրատայ որ ընդ մէջ Մելիտինեայ՝ 'ի Փոքր Հայս, և Մաշէնի՝ 'ի Մեծ Հայս, յարևմտից ընդ արևելս ձգի ցբազուկն Բագաւանայ, այն է Պաքու, յեզր կասպիականին, իբրև ընդ 580 մղոն աշխարհագրական. և լայնութիւն 'ի հիւսիսոյ 'ի Կուր գետոյ առ Աղզորաւ՝ ցՄէյրհէմէգապատ և ցՔաշավէր քաղաքաւանս 'ի հարաւոյ ծովուն Ուրմիոյ ընդ մղոնս իբրև 340։ — Միահամուռ տարածութիւն երեսաց երկրի հնգետասան սեփական աշխարհաց Հայոց Մեծաց, և յարակից աշխարհացն՝ Խաղտեաց 'ի հիւսիսոյ արևմտից, Աղուանից յարևելս և Ատրպատականի ընդ արևելս հարաւոյ, լինի իբրև 120,000 քառակուսի մղոն։

# ԲՆԱԿԱՆ ՆԿԱՐԱԳԻՐ

3. ԲԱՐՁՐԱՒԱՆԴԱԿՔ. — Ըստ երկրաբանական գրիցն աշխարհս Հայաստան ճանաչի կոչել Լեռնակղզի՝ յաւագագոյն աշխարհագրէ ժամանակիս (1), և արդարև հանդերձ սահմանակից աշխարհօքն՝ Փոքր Հայովք, Կովկասաւ և Պարսկաստանեօք ամբառնայ 'ի միջի ծովուցն և ծովատարած դաշտագետնին Միջագետաց՝ բարձրաւանդակ մի մեծ, 3-8000' (2) 'ի բարձրութիւն. կուտակեալ ժայռաձեւ կոհակօք լերանց, որք ուրեք ուրեք երկպառիկ եւ առաւել վերամբառնան 'ի հարթակողմ երեսաց նորուն, բարձրագոյնք լինելով քան զամենայն աշխարհս արևմտեան Ասիոյ, որում գագաթնանայ հրաբխային Մասիս 16254' հասակաւ: Ալեձեւ ստորոտք պարածիգ լերանց և միջոցք անպարիցն՝ գործեն զառանձին բարձրաւանդական կամ զընդարձակ լեռնադաշտս և լեռնահովիտս. որպիսիք են յարևմտեան հիւսիսոյ աշխարհիս՝ Ճորոխայ դաշտն 6-7000'. Ախալցխայն յեկից նորա՝ 3000'. և դաշտք Կարնոյ 5750-6000', Երզնկայն 4-5000?, Բասենոյ 5000', Շուշար և Թէքման 5300-5500'. որոց վասն Ա. աշխարհն Հայոց՝ յորում պարագրին դաշտքս՝ անդստին 'ի վաղ ժամանակաց Բարձր կոչեցաւ Հայք, զոր և հին աշխարհագիրս մեր " Բարձր՝ ոչ միայն քան զՀայս, ,, ասէ, այլ եւ քան զամենայն երկիր. վասն որոյ ԿՈ- ,, ՏՈՐ ԵՐԿՐԻ կոչեցին զնա ,,. — Դաշտն Խարբերդու կամ Դ Հայոց 3000-3300'. — Այրարատեանն ընդարձակ դաշտ 'ի բազում բարձրաւանդակս զանազանաչափս տարածեալ 'ի լերանց, որպէս Երասխայն 2750-3500', Շիրակայն և Վանանդայ 4300-5200', հիւսիսայինն Արագածոտան ց'6300'. — Արևելեան Եփրատայ բարձրաւանդակն՝ որ է Մուրատ գետոյ կամ Գայլգետոյ 4500-5000'. — Մշոյ դաշտն 3500'. — Տոսպայն այսինքն արևելից և հարաւոյ Վանայ 6000-6500'. Աղբակայն 7500. — Արտազու կամ Մակուայ 5000'. Սեւանայ լեռնահովիտքն 6-6500'. և 'ի հարաւոյ սորա վերագոյն ամենայն բարձրաւանդակացն Հայոց 'ի հիւսիսակողմն Գաւառապաղու՝ լեռնակոհակ երկիր իբր 120 մղոն շրջապատաւ բարձր 8500', աւելի և պակաս: Ցածագոյն է արևմտեայ հարաւային կողմն աշխարհիս սահմանակից Միջագետաց, սակայն և այն 1600-2000' բարձր. իսկ արևելեայքն հարաւայինք որ 'ի Քրդաց կողմանս՝ կարի բարձունք են 5-7000'. բարձր է և Ատրպատական աշխարհ որ յարևելից Քրդաց՝ իբրև 4-5000':

(1) Ռիդդէր Գերմանացի, Ritter.

(2) Այսինքն յերից ցութ հազար ոտնաչափ. և չափ ոտիցդ է գաղղիականն կամ Բարիզու, որ է 144 գծաչափ կամ 0,32484 մետրի. իսկ մղոն զաշխարհագրականն վարեմք 'ի տեղագրութեանս յայսմիկ, որ է $\frac{1}{60}$ աստիճանի միոյ, կամ 5702 ոտք, այսինքն 1852 չափ (մետր) գաղղիական:

4. ԴԱՇՏՔ. ԽՈՊԱՆՔ. — Ի բարձրաւանդակսն բովանդակին և արգաւանդահող դաշտքն Հայոց, յորս ընդարձակութեամբ և հարթութեամբ նշանաւոր են Բասենոյ և Շիրակայն և Կարնոյ, Մշոյ, Խարբերդու, և Երզնկայ. և ընդարձակագոյն քան զնոսա Դաշտն Ամդայ: Ընդ մէջ Ալաշկերտու և Մուրատ գետոյ և Բասենոյ են դաշտածաւալ երիզուածքն Թօրլու, Գօրա-Էաղը, և այլն: Բայց բուն ընդարձակածաւալ դաշտային և խոտաւէտ երկիր է Ուտի աշխարհ և Աղուանից աշխարհն զափամբք արևելեան Կուրայ, 'ի կողմանց Գանձակայ ցԵրասխ գետ, և աստի 'ի վայր՝ Մուղանն անապատ երիզուած ցսահմանս Թալիշայ. որով լինի ընդ երկայնն 'ի հարաւոյ ընդ հիւսիս իբրև 120 մղոն, և ընդ լայնն՝ յեկից 'ի մուտս յափանց Կասպիականին ցլեռնակողմանս Արցախոյ, այսինքն ցսահմանն Շուշեայ, ոչ պակաս քան զ'100 մղոն, բայց հիւսիսակողմն անձուկ 25-30 մղոնաւ չափ. այլ և 'ի Գանձակայ և 'ի վեր՝ սակաւուք 'ի բուն հայակողմն Կուրայ որ է յաջմէ, և յոլովագոյն յահեկէն 'ի բուն աշխարհին Աղուանից, ընդ մէջ գետոյն մեծի Կուրայ և օժանդակաց նորուն՝ Իօռայ և Ալազանի՝ ձգին խոպան դաշտքն Գարաճա և Ուֆափու ('ի հնումն Բաղասական դաշտ), մինչև 'ի կողմանս Սղնախայ և Կախեթու, ցածագոյն պարուք լերանց կարկեալ ընդ երկայնն զուգահեռաձև. զոր և մարթ է զերկիրս զայս արձակածաւալ իբրև 10000 մղոն քառակուսի՝ կոչել մեծ Դաշտ և Անապատ Հայոց, բայց ոչ անդաւար և անջէն որպէս զաւազուտ անապատս:

5. ԼԵՌԻՆՔ. — Բովանդակ աշխարհն Հայոց 'ի միջի կրկին մեծաց պարուց լերանց արևմտեան Ասիոյ կայ, Կովկասայ ըստ արևելից հիւսիսոյ և Տաւրոսի ըստ արևմտից հարաւոյ, որոց և աստ ևս իսկ առաջին ոտինք զամենայն լերինս Հայոց. որք ուրեք ալպաձևեալք են և ուրեք կարճաձիգք. և բազում այն է զի անխաղացք և մեկնակք չեղջաձեւ ամբարձեալք: Մարթ է իբրև 'ի սաստն պարս և 'ի կոյտս տրոհել զլերինս Հայոց, անուանելով այսպէս. — Ա. ՊԱՐ ԽԱՂՏԵԱՑ կամ ՊՈՆՏԱԿԱՆ լերանց, որք յարևելից և 'ի հարաւոյ Սեաւ ծովուն՝ 'ի բաժնին Հայոց յարևմտեան հիւսիսոյ գործեն բազումս զուգահեռականս, և անջրպետս Ճորոխի և Եփրատայ. 'ի հիւսիսակողմանն պարուս են լերինք Պալխարայ յորս բարձրըն Խաչաթափ կամ Վարտանլըկ (որ է Վարշամակ) իբրև 12000' 'ի կողմանս Համշինու, այս բազում երկայնեալ պատի զՀարաւով Պոնտոսի. 'ի հարաւոյ սոցին Լէրինօ Սողէրա և Բաբերդու, յորոց միջի խաղայ Ճորոխ, բղխեալ 'ի Գոհանամ լեռնէ բարձունէ. 'ի հարաւոյ սոցա երրորդ բազուկն Կոփայ լերանց (Քօփ տաղ) որք յարևմտակողմն սահման հատանեն ընդ Փոքր և ընդ Մեծ Հայք, և բարձրագոյնք են 'ի համօրէն պարուն: — Բ. ՏԱՒՐՈՍ լերինք որք յիջեն 'ի Նախ-

նեաց գոլութեամբ ամուր վայրացն, և ձգին յեզերաց կողմանց ցԵփրատ առ Կաղզուանաւ, ուստի ընդ արևմուտս արձակեալ. 'ի հիւսիսակողմանն ամբառնան Արտեաց լերինք, և կից նոցին ըստ հարաւոյ Եաղամճան, Քանիա կամ Գանիա լերինք 8000'. և ըստ սոցանէ Սողանլու լերինք մինչև ցԵփրատ ընդ մէջ Բասենոյ և Ղարսայ. ընդ սոսա անցանէ ճանապարհ կարաւանին Կարնոյ և Կարուց յ'7880' բարձու. 'ի միոց սոցա ձգի սոս լերանց Ալ-Մեղէ և Գիւէճլի որ և Գարկին-Գալաւ 'ի կողմանս Կարնոյ: — Լեւլնս Կարնոյ 'ի միոց կան սոցա, յետկց քաղաքին՝ Տէվէ-դօյնու 6600', և այլ լեռնաբլուրք. այլ 'ի հիւսիսակողմն ամբառնան բարձրագոյն կատարք, երկրատարածքն Կողոյփ լեռան (Կեզզուաղ) 10000' և Տօմլու 9000', և Մխուչէ՞ 9800, որք խառնին յԵփրատական լերինս (8): Իսկ յետկց կուսէ Տայոց ձգի սոս Չըլըր լերանց:

6. Գ. Լերինք ԱՐԱՀԱՑՈՑ. յայս անուն կոչեմք զայլևայլս լերանց որ ընդ մէջ Խոյամ գետոյ և Արարատեան դաշտին, 'ի նահանգին Գուգարաց և 'ի հիւսիսի Այրարատոյ, յորում Վիրք և Հայք խառն բնակեն. հիւսիսագոյն սոս լերանցս է առ Կուրաւ՝ Քոփէան լերինք յԱզզոր միջակի, և կից նմին յետկց հարաւոյ Գոփանչէան լերինք, և սմա՝ Թռեղաց լերինք և Կանգար, որ են ըստ արդեացս Աղոց կամ Քոյթուլի լերինք. և Պէղոդփաշ և Բոմբալի լերինք բարձունք և մեծատարածք, ընդ որս անցանէ ճանապարհն Երևանոյ 'ի բարձրութեան 7340' և 6270'. յորոց և Գուչալու (Չորոյ) գետ իջեալ ընդ հիւսիս խառնի 'ի Կուր, Թողեալ յահեկէ զՄոֆրայա կամ Խանա լերինս, զԼէօփ և զԼէուլար պղնձահանն լերինս, ընդ որս անցանէ ճանապարհն Տփխեաց յԱռղըղէօյլու անդուոջ բարձու 5460'. Իսկ յաջմէ ընդ մէջ Աղստև գետոյ՝ զՉափըր և Չարփալը, որոց ըստ ելից լեռնակքն Գառողին և Գոգ (յիշատակեալն 'ի Շարականի) որ այժմ Կէօք կոչի. և Իչէկ-Մէյդան լերինք որ 'ի հիւսիսոյ ծովուն Գեղամայ, ընդ սա ևս անցանէ ճանապարհ յԵրևան և տանի 'ի Կուր. և Մոյմէխ՞ 'ի միոց նորա 7355': — Այսր պարու ոստս անջատ համարելի է զԱբարափեան լերինան որ յահեակ կուսէ Երասխայ և Ախուրեան գետոց, յորս բարձրն Ալագոծ աւելի քան զ'13000' 'ի հիւսիսոյ կողմանէ բլրովք յարի 'ի Բամբակ, յայլոց կողմանց չատարածէ ոստս. յետկց նորա կայ Արայէ լեռան (Գառնը-Եարըք) 7913'. և 'ի սորա ելից Սոփկէն որ կցի յԻշէկ-մէյտան:

7. Դ. Պար կամ աղխաղակոյս լերանց տարածեալ ընդ լայն և ընդ երկայն՝ ընդ մէջ գետոցն Աղստևայ և Հրազդանայ, 'ի կողմանց երբորդի պարուն ցգետն Երասխ ընդ հարաւ արևելից 'ի կողմանս Գարապաղու, և յետկց կուսէ 'ի կողմանց Գանձակայ ցնոյն Երասխ 'ի սահմանս Դաշտին Շարուրայ և Նախիջևանայ. զայս պար յանուան ԳԱՐԱՊԱՂՈՒ 'ի դէպ է կոչել, զի անդ է կենդրոն և բազմակոհակ կոյտքն լերանց, կամ Թէ Կովկաս Հայոց. զի բովանդակ երկիրն այն բարձրաւանդակ որ յեզերսն բարձր է 2-3000', 'ի հիւսիսի և 'ի միջակողմն 6-8000', և տարածութեամբ ընդարձակ իբրև 9000 մղոն քառ., հուռ առ հուռ ոստովք և բաղկօք հերձեալ 'ի զազաթունս ժայռաւորս, յերկայն լեռնադաշտս և 'ի խորահովիտս անձուկս, չունելով դաշտադետիս տարածեալս, գրեթէ գրեա եթէ զողջոյն նահանգն Սիւնեաց և զԱրցախ, որոյ ամուրք լերանց յառաջս իսկ ճանաչէին 'ի հնումն: Արևմտեան հիւսիսակողմն հայկական կոմկասուս պարագրէ զծովն Գեղամայ 'ի բարձու 6000' որպէս բաժակ իւրոց հրաշունչ գագաթանց. յորոյ միոց կան Լէրինքն Գեղամայ, Գեղայ լեռան (Աք-տաղ) 11480', Աճմանկան 11168', Պուղփուղ 10728'. 'ի միոց Աճմանկանայ Քէօբանէ կամ Գիւնդան-փաղ 7111', և ընդ նովաւ Հափիւ որ և Շամբռամայ լեռան. 'ի հարաւակողմն Գեղայ և ծովուն՝ Արփաղան, Ազգիւ-Աւար կամ Աքտըլայ-Սար 8596'. Գարնըլէ 10430'. Իսկ յարևելեան եզերս ծովուն, 'ի հարաւոյ ընդ հիւսիս գնալով, կարկառին լերինքն Աք-փայա, Քիւթիւրփ-փաղ, Գարա-աղաճ, Սոփան-աղաճ, Շահ-փաղ, և յարին յԻշէկմէյտան, տարածանելով բազուկս ընդ արևելս ցՈւտի աշխարհ. և են 'ի նոսա նշանաւոր լերինք Մըղըող, Խոմլըփ, Մխօ, Գըղըլճօ (Թերևս Կայծոյ-Ծոտ նախնեաց). 'ի հարաւոյ սոցա յարևմտեան սահմանս նահանգին Գանձակայ՝ Խոչխար (Թուխ Խաչքար) և Սարեօլ լերինք. յորոյ հարաւոյ Մաուղ կամ Մուրով 11540'. 'ի հարաւոյ միոց Խոչխարայ 'ի Սոթք գաւառի կից արևելեան լերանց Գեղամայ՝ Քոնիօւր բարձր 10300' (կամ Գանփուր) յորմէ Թէւ մի ձգի ընդ Մ. Հար. Մ. 'ի կողմն Շարուրայ. և 'ի միջավայրս Թևոյն 'ի հարաւոյ կուսէ ծովուն Գեղամայ են Ալակէօլ, Դաշ-Բիլաքան կամ Տիփ-Բիլաքան 10900'. Կիւղէլփէրէ 11060'. Քօչիլան, Տափիլան, Մարաղ: Ի հարաւոյ սոցա 'ի Ջանկիզօր գաւառի Գարապաղու, Ուլուխանլու, Սըըլաը, Տէվէկէօլ, Գըղըլղաղ, Մոֆատ, Գըղըլխէփէ, Գիւմուշ 9740', Ըլըփըը, և այլն, որոց ոստք տարածին ընդ մէջ գետոցն Որոտան (Պարկուշատայ) և Հաքարու: Ցետկց սոցա ամբառնան լերինք բուն Արցախոյ կամ Խաչէնոյ 'ի միջակողմն որ և Կիւլիստան. յորս Գըըփ-Կէօղ լեռան 8770' բարձր՝ բղխէ զգետն Խաչէնոյ. և Ճարաբերդու և Դիղափայփու ցԵրասխ գետ, յորս գլխաւոր Ջիարէթ-փաղ: Իսկ 'ի միոց Պարկուշատայ ձգին Լէրինք Գարաւայ որ են պարանոցք Քունկուրայ և արևելեան լերանց Գեղամայ և կոչին Ալակէօլ, յորոց մի է և Տեվէկէօղն մերայինեալ, և այլք ըստ հարաւոյ նորուն, Քըրսար, Տէվէ-Թէփէ 8042'. Քէդէըլի, Ահար, Արփաչի, և այլն. Խողանկէլ լերինք բազմոստեայք 'ի հարաւակողմն 'ի Մեղրի գաւառի, և 'ի հարաւոյ նոցա Ալանկէզ լերինք ցԵրասխ: Ըստ միոց սոցա յՈրդուատ գաւառի (Գողթան) ամբառնայ Եըլընըը լեռան. 'ի հիւսիսոյ նորա յԵրընջակ կողմանց փէկ լեռան (կամ Գախօփճաղ) բարձր 12055'. և 'ի հիւսիսոյ ելից նորա ընդ մէջ Նախիջևանայ և Շարուրայ Քէօփ-փաղ 9660': Համդերձ սոքիմբք բազում և այլ անջատ և կարճատարած լերինք 'ի լայնատափիւ կուսակիս, յորում Թէ մի գրեաԹէ ողնայարեալ յԵրասխայ ցՔունկուր և անտի ցԻշէկմէյտան, կցի ընդ նախագրեալ Դ՛ պարուն ընդ Բամբակայ և Պեղղարալայ. և Ալլախան լերամբ բարձու 9400'' ընդ Աղոցայ և Թռեղաց, և նոքիմբք Գուգուլեանայ և Քռախանայ ցԿուր, և յայնկոյս նորա ընդ

լերինն Վրաց և Եգերաց ընդ Նաթլաքեւֆ, Լոռիա, Բերաւաթի, Իջխաքարոյ, Ցոլթիմերի, Բերենկայ և Քուլուլայ, և ժամանէ մօտ ցբերան Ճորոխ գետոյ և յափն Սեաւ Ծովու։ Ըստ այսմ և 'ի հարաւոյ կուսէ Երասխայ մարթ է յերկարաձգել զլերինս ցբարձրագոյնն լերանց Ատրպատականի Սաւալան, 12200', զի ոստս ընդ արեւմուտս հիւսիսոյ ձգէ սա մինչև մերձ յԵրասխ և 'ի սահմանս Որդուաբայ՝ ուր յանդէր հարաւային թեւ երկայնաձիգ պարուն։

8. Ցարեւմտեան կամ 'ի միջին Հայս՝ երեք պարք լերանց զուգահեռականք Ճանաչին ջրբաժինք երից գետոցն հզօրաց, Երասխայ, Եփրատայ և Տիգրիսի. յորոց մի է Ե Պարն ԵՓՐԱՏԱԿԱՆ լերանց որք ձգին ընդ արեւմուտս 'ի Փոքր Հայս յԱնտիտաւրոս լերինս. 'ի Հայս աստ նորա են արեւմտեայ լերինք Բարձր Հայոց, Լէշքեֆի Դուրանաշեա յաջմէ գետոյն, և բարձրակատարն Սեպուհ կամ Գոհանամ, յորոց հիւսիսոյ Քէշիշ, Չիմէն և Քիմուր լերինք ընդ Փոքր և Մեծ Հայս, և մերձ Խաղտեաց լերանց։ Արեւմտեան թեւք լերանցս առեալք յոստոց լերանց Կարնոյ և Ղարսայ (5) ձգին ընդ մէջ Փ. Հայոց ցԱրգէոս լեառն. որում լինի երկայնութիւն յարակից պարուցն յափանց Երասխայ առ Կողզուանաւ ցԿեսարիա՝ իբրև 500 մղոն։

Զ. ՋՐԲԱԺԻՆՔ ԵՐԱՍԽԱՑ և Եփրատայ կամ Մուրատայ, պարք լերանց յաղթք և երկայնք. զոր մարթ է կոչել այժմու անուամբք Պինկէօլ-Աղըր, զի յերկոցունց բազկաց լերանցս յարաձգի, և կամ թէ ընդհ. ՀԱՅԿԱԿԱՆ ՊԱՐ. քանզի յարեւելից 'ի Մասեաց սկսեալ անընդհատ և անանջրպետ ձգի ընդ արեւմուտս, աղեղնաձեւ իմն ելով զուգահեռական Երասխայ ցաղբիւր նորա 'ի Պինկէօլ. յորոյ մասից կուսէ անանջատ ոստովք ձգեալ ժամանէ մինչեւ յԵփրատ և 'ի սահմանն Հայոց առ Ակնաւ, երկայնեալ իբրև 300 մղոն, ընդմիջելով զամենայն միջին և զարեւմտեան Հայաստան ըստ 39° լայնութեան, որ և միջին աստիճան է լայնութեան աշխարհիս մերոյ։ Կենդրոն պարուս համարելի է Պինկէօլ լայնատարածն քան զամենայն լերինս Հայոց, և արձանացեալ ընդ մէջ երից հնոց աշխարհացն՝ Բարձր Հայոց, Չորրորդ Հայոց և Տուրուբերանի, արձակելով գետս օժանդակս Երասխայ, Եփրատայ և Մուրատայ. բնիկ Պինկէօլ (ոչ Բիւրական լեառն, զի չիք այսպիսի կոչումն առ Նախնիս, այլ Սրմանց կամ Սէրմանց լեառն) բարձր թուի քան զ'11000'. 'ի հիւսիսոյ նորա կան Լէշքեֆ Կէդուր (Խորձենոյ), Շուշարայ և Թէքմանայ, և որք 'ի հարաւոյ Կարնոյ՝ Փալանթէօքէն և Շաղալար. 'ի հարաւոյ լերինք Վարդոյ, և 'ի հարաւոյ մասից լերինք Ճապաղջրոյ, յորոց մասն այլք, և Մնձուր ցգետն Եփրատ. զորս Քրդաց կալեալ է և ոչ են քաջ ծանուցեալք, այլ թուին 9000' բարձր. և ըստ հիւսիսոյ նոցա Քէօշմէր իբր 12000', Սարըխան 10000', և Տօժիկ լերինք ցնոյն Եփրատ և ցԿամախ։ Ի հարաւոյ եւս մեծի լերինն՝ ընդ մէջ Մուրատայ և Գայլէ-սու օժանդակի նորուն՝ Ջէւանօֆ և Խամուր լերինք։ Այլ գլխաւոր բազուկ Պինկէօլայ ձգի ըստ հիւսիսի արեւելից և գրեաթէ աղխաղեալ ժամանէ ցարարատեանն Մասիս, լեռնովքն Չէդմէ, Դիւզբօտ, Քոսդէկ, Շէոնէռն, Քէօսէ-տաղ որ է Սանճաք 9-10000', Շահ-Էօղ 8960', Չէքմէք. որոց ըստ հիւսիսոյ արեւելից Քէօրօղլու և Թաթօսլու. որ է Բոդդող լեառն. յելից հարաւոյ սոցա ձգին Բոււն Աղըր լերինքն ցՄասիս, այսինքն Մինկի-տաղ, Ախ-տաղ 11000', Ջօրա-տաղ իբր 10800', Խալ-Կէտան կամ Բանդալ 10000'։ Ցելից սորա և գրեթէ կից ամբառնան բարձրագոյնք լերանց Հայոց ահեղերահռչակն Մասիք, որ և գլխաւոր լերանցն Արարատայ, գրեաթէ կիցս 'ի կենդրոն Հայոց մեծաց, 16254', և գագաթիր բարձրագոյն քան զամենայն անխառնաց և չեղջածեւ լերինս վերացեալս 'ի գաշտավայրէ. յելից հարաւոյ ունի զՓոքրն Մասիս 12284'. յորոյ հարաւոյ կան լերինք Արտաղու կամ Մաքուայ. ըստ արեւելից հիւսիսոյ Թաթուղու 8982', և ըստ արեւմտից հիւսիսոյ Դուզդաղան լեառն։

Է. ՋՐԲԱԺԻՆՔ ԱՐԱԾԱՆՒՈՅ կամ Մուրատայ և Տիգրիսի. ունի լերինս ոչ սակաւ բարձունս և խիտս, և թէպէտ ոչ միայարս, այլ մերձ ընդ մերձ, որովք ձգի մինչև 'ի խառնուրդս Մուրատայ յԵփրատ. ամենայն լերանցս համարելի է Ալա-տաղ (Ծաղկաց լ.) 10000' կամ աւելի, յորմէ բղխէ արեւելեանն Եփրատ, այսինքն Արածանի. 'ի հիւսիսոյ ունի զՆպատ անջատ լեառն, և ըստ հարաւոյ պարակցի լերանց Վանայ. յարեւմտից սորա Էրիթ լեառն, և ըստ հարաւոյ մասից լերինք Բաղնոցի, Մելադկերտու, Լիզայ։

9. Ի հարաւոյ սոցա նոյնպէս և գաւառին Մշոյ է Ը ՊԱՐ ԼԵՐԱՆՑ ԱՂՁՆԵԱՑ որ են ոստք մեծագունի Տաւրոսական լերանց, ըստ Նախնեաց. Խոյթ, Սասուն, Անդզևս, Գուլ 6400', Խութ, Տալօրիկ. յորոց մասից ընդ մէջ Արածանւոյ և օժանդակաց Տիգրիսի, լերինք Դ. Հայոց՝ Կոհէր կոչեցեալ 'ի հնումն, և այժմ կալեալք 'ի Քրդաց, և մասն 'ի մեծամասն գրեալ Սիվան-Մադէնի, Բալուայ և Խարբերդու, յորում Մաստաք կամ Մուզուր, Աւլամէջ, Սըրը-Մէդէ. և Մունզուր յարեւմտից Եփրատայ. բազում և այլ անջատ լերինք ընդ մէջ Եփրատայ և օժանդակաց Տիգրիսի ցգետն Բաղէշու, ընդ որս և բարձրն Խուրշուն Աղձնեաց ընդ մէջ Բաղիշուն և Պագման գետոյ. և յայնկոյս սորին լերինք Ծոփաց Մեծաց Հաղրոս, Էկէլ (Անգղ), և Արղնի լերինք. ընդ սոսին գրելի են և որ 'ի հարաւոյ Արղնի և Տիգրիսի Մէհրան լեառն երկայնանիստ, և լերինք Շնքուշայ և Ջերմճկայ։ Եւ ըստ սոցին հարաւոյ լերինք Տիարպէքիրու Գարաճա և այլք, հատուածք Տաւրոսի միջասահմանք Հայոց և աշխարհաց Եփրատացւոց և Միջագետաց։

10. Ը. ԼԵՐԻՆՔ ՎԱՆԱՑ, յայս անուն խմանամբ զլերինս որ ամենուստ շրջապատեն զծովն սակաւ միջանկաց տարակայութեամբ, թողլով և 'ի միջի անջատ լերինս. հիւսիսակողմանն լերինք յԱլատաղ խառնին, և 'ի նմին կողման է բարձրագոյնն ամենայն շրջափակի լերանցս Սիփան-տաղ, որ և քան զյոգունս 'ի լերանց աշխարհիս բարձր է և միջաձիւն, այլ ոչ է չափեալ և թուի 12-13000'. յարեւմտից սորա և յարեւմտեան հիւսիսային ծայր ծովուն զՆպատուն լծաւ բոլորեալ են լերինքն որպէս զգաշտացեալ բաժակաւ հրաբխի, այլ ժամուք ինչ տարակայ, յորոց է և Գրիգեծան լեառն. իսկ ընդ հարաւ կոյս բոլորին լերինք զծովեզերն 'ի միջավայրի ունելով զՆէմրութ լեառն, յորոյ հարաւոյ

կուս, զանուանեն Սէհէնդ (Սոհանդ ըստ նախնեաց) 'ի հարաւոյ Դաւրիժու մեծատարած լեառն 8000' 'ի բարձրութիւն, յորոյ մէջ ամբառնայ Տէմիրփաղ 11550', և այլք բազումք շուրջ զնովաւ. և ևս հռչակաւորն Սաւալան կամ Սաւէյլան զոր 'ի վերոյ յիշեցաք (12197'), հանդերձ բազկաւն Քօշայ, որոց ըստ հիւսիսոյ Շէյվէր և Շահնէրի լերինք. ընդ մէջ Սոհանդայ և Սաւալանայ Գօզլուղ լերինք. Շահկոփ յելից Դաւրիժու և 'ի հիւսիսոյ Սոհանդայ:

14. ԿԱԶՄՈՒԱԾ ԵՐԿՐԻ. — Կազմուած լերանց և բնութիւն երկրին Հայոց զարմանալի ևս է քան զկուտակութիւն կոհակացն և զբարձրութիւն. թէ և ոչ ըստ չափ բաւականին քննեալ, այլ և 'ի հետազօտութեանց զննութեանց գիտնոց ոմանց (յաւէտ Գերմանացւոց) քաջ երևի՝ մեծապէս ներգործեալ 'ի Հայաստան երկրի և ջրեղէն և հրեղէն ազդմանց՝ յառաջ քան զսկիզբն և յառաջին դարս պատմական ժամանակաց. և ըստ գուշակութեան երկրաբանի ուրումն մեծի՝ ոչ շատ յառաջ քան զպատմական դարսն ծով ծածկէր զամենայն երկիրն. Եոքենեանն և կապիականն՝ համատարածք միապաղաղք ծովային 'ի վերայ տակացն՝ որ Հայաստան կառուցան. և տիեզերահռչակեալ ջրհեղեղն, անժխտական վկայութեամբ Գրոց սրբոց՝ ոչ ուրեք այնպէս քաջիկ հաւաստի ողողեալ զերկիր, որպէս զՀայս. զի որ քան զամենայն լեառն 15 կանգնաւ չափ վերացեալ ընդ ջուրցն տատանէր տապանն՝ նստաւ 'ի լերինս Արարատոյ, և 'ի ցածնուլ ջուրցն՝ անդ իջին 'ի վայր ապրեալքն 'ի հնոյ երկրէն: Այսու վկայութեամբ և 'ի քննութենէ Աբիխեայ երկրաբանի՝ ստուգի Մասեաց 'ի նախաջրհեղեղեան լերանցն լինել, և ջուրց ոչ շատ ազդեցեալ 'ի գագաթունս նորին. սոյն նմանակից իցեն թերևս և այլք 'ի հարաւայնոց բարձր լերանց, որք չեն քննեալք: Այլ և ոչ ընդհանուր երկիրն բոլորովին վերիվայր յեղափոխեալ է, քանզի և նշանք քառառաջ գետոցն Եգեմայ զոր ասէ Մովսէս իբրև 1600 ամօք յետ ջրհեղեղին, տան գուշակել թէ ըստ գետոցն մարթ էր և զհետս ինչ երկրի վայրաց դրախտին նշմարել, գէթ 3400 ամօք յառաջ քան զայն՝ յորում գրէրն Մովսէս: Հետք հին ջրային ներգործութեանց և ծովու ծաւալման՝ նշմարեցաւ յԵրասխեան դաշտին, յորում յերրորդականն անուանեալ գետինս՝ (terrain tertiaire) գտան բրածոյ խեցեմորթք, որոց ազգակիցք ցարդ լինին 'ի ծովափունս Կասպից: Երասխեան կամ հայկական պարուն լերինք մեծաւ մասամբ յերրորդական կրոյ կազմեալ են, և վասն սպիտակութեան նիւթոյն համարի յանանց Ալ-տաղ կոչումն լերանց ոմանց և ոչ թէ սակս ձիւնանալոյ գագաթանցն. մեծ մասն հիւսիսային արևմտակողման աշխարհիս հին երրորդական հողովք է կազմեալ, յորոց և բարձունք կուտակեալք են՝ ընդ մէջ Ճորոխի, Երասխայ և Եփրատայ, և 'ի Խաղտեաց լերինս, յորս երևին և կազմածք գաճի և կաւոյ. լերինքն որ ընդ մէջ Կարնոյ և Սօղանլուի՝ յանուանէ իսկ կոչին ցարդ Քիրէճլի (Կրուտ): Նշանաւոր է երրորդական կազմած հայ գետնի և առատութեամբ աղի, որ ուրեք ըլուրս և քարայրս գործեալ է, որպէս 'ի Դարանաղի, 'ի Կողբ, 'ի Կաղզուան, 'ի Շարուր. և բազում ուրեք աղբերս և ճահիճս և գետակս, յորոց և Դուզլու կոչումն նոցին (աղուտ) որպէս 'ի Դերջան, 'ի Թորթում, 'ի Խնուս, 'ի Գայլեգետ: Բայց զննողութեանն՝ այսինքն է զջրանիստ կազմած երկրիս՝ սաստկապէս այլայլեալ է պղուտոնականն, որ է հրայինն, գրեթէ 'ի մեծի մասին աշխարհիս. որով ոչ ուրեք երևի երկիր ընդարձակ երրորդական հողովք, և երկրորդականքն ևս ոչ կարի լայնածաւալք. յորոց գլխաւոր գրեալ է զԴաշտին Շարուրայ՝ կամ զահեակ Երասխայ յԱրարատոյ 'ի վայր. իսկ հեղեղահող (alluvium) երկիր մեծ՝ դաշտագետինքն են արևելեան Հայոց, Ուտի և Փայտակարան աշխարհք և Աղուանք:

15. ՀՐԱՅԻՆ ԿԱԶՄՈՒԱԾ. ՀՐԱԲՈՒՂԽՔ. ՋԵՐՄՈՒԿՔ. — Հրահող երկիր Հայոց կազմեալ է 'ի հասարակի որձաքարէ (տրապէտ) և պորփիւրէ, յորմէ և ողջոյն լերինք կառուցեալ են, որպէս և մեծին Մասեաց միակտուր պորփիւր է իրանն. և է պորփիւրս սեաւ և չեչոտ. գտանին խառն 'ի նոսին և այլ ազգք քարանց, փայլքար (աւկիթ, augite), քուարց, Ֆէլտսփաթ, սեւաթուրծ (mélapyre) և այլք. 'ի լերինս Սպերոյ ընդ պորփիւրի գտանի և մագնիսեան երկաթ: Բազում ևս ուրեք պատառ է կազմածն, որ և նշանակ է բուռն հրաբուխ վայրաց, զի և ընդ նմին յաճախ գտանին լաւա և չէշաքար. իսկ կռանիտ սակաւ ուրեք արտաքս ցցուեալ երևի ձայնաժև, այլ զկողիւք բարձանց պատի, ընդ նմին և եղնգնաքար հրային (obsidiane) յարևմտեան լերինս. հարաւակողմն Մուրատայ յաւէտ հերձաքար միկայիւ կազմեալ է: — Խանձող քարինքն և ջերմուկք և ջրալիր բաժակք գագաթնափոր լերանց՝ անշուշտ վկայք են շիջելոց և նուաղելոց հրաբխից Հայաստան աշխարհի, որք թերևս ոչ ուրեք այնպէս բազմաթիւ խիտ առ խիտ գտանին որպէս յերկրի մերում, և Ճըշմարտեն յինքեանս ևս զանուն Արարատեան աշխարհի. և գրեթէ յամենայն լեռնապարս հայկական բարձրաւանդակին սփռեալ կան լեռալքն արդ հրաշունչ բերանք: Ի պարս Խաղտեաց բարձրին Խաչաքար (5) և այլ կատարք 'ի կողմանս Համշինու Ճանաչին հրաբուխք. 'ի բարձրաւանդակին Տայոց բազմաթիւ են հրաբխից ջրալիր խառնարանք և բազմաց երևին և ընթացք հոսանաց խանձողիցն, 'ի սահմանս Ախալցխայի և Ջաւախաց, և 'ի Գարախըղաչքոր՝ ուր Աք-Պէլէ չէշաքարոտ հրաբուխ և խանձողք նորա ապակենման փայլեն: Ի լերինս Կարնոյ Սխուչեք և Սարջամ կոնաձև լերինք վաղաշէջ հրաբուխք են. Սխուչեքայ խառնարանն ցամաք է և խոտալից: Գոն և 'ի Սողանլու լերինս, և յելից Ղարսայ բլուրք երկու գըմբեթաձևք և շրջակայ սահմանացն քարինք հրայինք: Իսկ յերրորդ կամ 'ի Վերա-Հայոց լերանց խումբս՝ նշանաւոր և մեծ քան զբազում հրաբուխս երկրի է Արագած քառահերձ գագաթամբ և ջրալիր բաժակաւն որ Գօռալիկօլ կոչի, որոյ և խանձողք նմանք Եթնեայ լերին Սիկիլիոյ տառատապէս զեղեալք. և թուի յետին վերածխութիւն նորա 'ի սկիզբն Արշակունեաց հարստութեան լեալ. երևին և 'ի կողս նորա պատառուածք, զի մեծամեծ հրաբուխք Հայոց կողմ-

պատառաք են, փոքունքն հրաբխատարք․ այսպիսի է և մերձաւորն Արայի լեռան հերձեալ հրաբուխ․ և միջակին Սհաթլու որ է սահման Արմաւրայ՝ ծածկեալ է հաստնոք լաւայի։ Այլ յոլովագոյն և հզօրագոյն են հրաբուխք են 'ի Դ լեռնակոյան զեզերբք ծովուն Սեւանայ՝ որ և ունեղ բաժակ մի թուի նոցին, յորոց և գետոյն որ մասամբ 'ի ծովէն ելանէ՝ առեալ թուի զանուն Հրազդան կամ Հուրասատան․ գլխաւորք հրաբխեցն են Աղմանեան Գանլը-կէօլ լճակաւն, Աքսաղ, Գօղտաղ, Նալ-Թէփէ՝ յորոյ խանձաքարանց յատակեալ է մեծ մզկիթն Երեւանայ․ Շամիրամայ լեռանն, և հանօրէն պատառատեան լեռնահովիտն Գառնոյ․ 'ի հարաւակողմն՝ բաժակաւլիրն Արդըլոյ-Սար, Գարանլըղ․ Ալաիկօլ, Դաշ կամ Տիք-Փիլաքան, Տէվէկեօղ, Գըզըլ-Թէփէ, յորում և ջերմուկք են եռացեալք 120° Ֆար․ (1), Գըզըլարլաղ․ Գիւլիւէլի, Տէլիք-Թէփէ, և Քիւքիւրթլիւ (ծծմբաւոր) յարեւելակողմն, և այլք։ Ի կողմանս Արցախայ ևս թուին լինել հրաբուխք չև ևս քննեալք, քանզի Կայծոյ-ծոռ լերինն անուն և Գանձակայ մեծ սասանութիւն և կործանումն յամին 1140, յորում և Ալհարակ լերին փլանել և լիճ կազմել՝ զայն հաւաստեն․ ընդ հրաբուխս ճանաչի և Եղլանտապը 'ի Գողթն։ Ի բնիկ Հայկական պարուն նշանաւոր քան զամենեսին են կրկին Մասիք, երկոքին ես կոզապատառք, երկոցուն ևս նշմարին խանձաքք, այլ ոչ որպէս զԱրագածուն հզօրք և ընդ երկար եռացեալք․ բայց հին և ահեղ զօրութիւն նոցա ծանուցաւ և յաւուրս մեր յամին 1840 (որպէս ասացի 'ի ստորագրի աշխարհին)․ 'ի հիւսիսոյ նոցին Բարդող լեռան, և 'ի հարաւոյ հզօրն Դանտուրեկ? որ զսահմանս Պայեզիտոյ ծածկեալ է լաւայիւ և ընդ կողմն Տիատինոյ բլուրս բլուրս կուտակեալ է զսեւ խանձողն․ նոյն նշան երեւի և 'ի բուն սահմանս Տիատինոյ զաղբերակամբք եփրատականն Արածանւոյ, ուր ասեն և ողջոյն կամուրջ մի ծծմբոյ լինել, այսինքն 'ի քարացմանէ ծծմբախառն հանքային աղբերաց։ Արեւմտեայ բազուկ պարուս ոչ է քննեալ, դուցէ իցեն և 'ի կողմանս Գինկէօլայ հրաբուխք։ Ի ջրաժինս Եփրատայ և Տիգրիսի՝ առ ակամբք սորա՝ ճանաչին հրաբուխ լերինք և երկիր Արղնի և սահմանք Տիարպեքիրու․ և նոյն ինքն քաղաքն մեծ կառուցեալ է 'ի խառնարանի հրաբխի շիջելոյ։ Սահմանք ծովուն Վանայ միւս ևս մեծ կենդրոն են հրաբխից, յորոց մի և բարձրն Սիփան թուի շեղջակուտակ ձեւովն, և 'ի մօտից կուսէ լեռանն Նեմրովթայ (Նեմրուտ) որոյ և վերաշնչութիւն նշանակի 'ի յիշատակագրաց մերոց 400 ամօք յառաջ, և լիճք նորին ամենեցուն ծանօթք են․ զհրաբխի կերպարանս յայտ առնեն և Բաղէշոյ սահմանք, և 'ի հիւսիսոյ արեւելից՝ կողմանք Բերկրոյ։ ԶՍարպատականն՝ որ 'ի կանուխ ժամանակաց ծանուցաւ Հրոյ համբարանոց լինել՝ ծանօթագոյն է բարձրն Սաւալան 'ի հրաբուխս։ Ի լերինս Կորդուաց չեւ եւս են ծանուցեալ հրաբուխք, այլ աներկբայ թուի գոլ և 'ի նոսա, քանզի և գըտանի անդ ծծումբ։

16․ Այլքանեաց և թերեւս յոլովից ևս լերանց հրակատար վերածխութիւնք և կողապատառ հոսանք խանձից, որք երբեմն ահեղս և սոսկալի աւերածս գործեցին 'ի Հայս, վաղ ուրեմն դադարեալք են 'ի շընչելոյ, այլ ոչ իսպառ նուաղեալ է ստորերկրեայ եռանդնապատոյտ հրոյն զօրութիւն, որ և մերձ ընդ մերձ յայտնի մեծասասանն և բուռն սասանութեամբք զետնոյ, մանաւանդ 'ի կողմանս Արարատայ և Երեւանու (որպէս յամսն 341․ 862․ 894․ 1319․ 1679․ 1681․ 1819․ 1827․ 1840․) Կարնոյ, Սիւնեաց (728․ 1659) Արցախոյ (1140), Վանայ և Խլաթայ, (1276․ 1441․ 1649) և Արտաշատականի, յորս մեծամեծ կենդրոնքն են հրաբխից․ և Երզնկայ՝ որ 'ի կէսոյ ԺԱ դարու ցելս ԺԸին իբրև 20 անգամ յեչի մեծապէս շարժեալ և կործանեալ։ — Իսկ յարատեւակ և կենդանի նշանակք հրաբուխ զօրութեանցն Ջերմուկք՝ ոչ սակաւ գտանին 'ի Հայս, 'ի Խաղտիս և 'ի Կարին (Իլիճա և Սուրբ Ջերմուկ), 'ի լերինս Բաղբակայ, յԱխալցխա, 'ի Հասանղալա, 'ի Խնուս, յԱլատաղ, 'ի Շիրակ առ Ախուրեանիւ, 'ի Ծար յեզր հարաւոյ Սեւանայ, և 'ի միջավայր Գարապաղու, և այլ ուրեք ուրեք, որոց ջուրք 'ի հասարակի ծծմբայինք են և երկաթայինք․ գոն և կպրահանք 'ի կողմանս Տիատինու, ուր և ջրաղբերք, որպէս և 'ի Կարին։ — Միւս ևս հրային զօրութեանց արգասիք ճանաչին քաջ յարեւլեան ապառաժ բազական սահմանաց Հայոց, 'ի Պաքու Թերակղզւոյն՝ աղմոցայս լեռնաբլուրք և անսպառութիւն միշտեռանդն աղբերաց նաւթի (191)։ — Հրաբուխք Հայոց սահմանակիցքն ըստ հիւսիսի ընդ կովկասայնոցն, ըստ արեւմտից ընդ Փոքուն Հայոց, ըստ արեւելս հարաւոյ յԱտրպատականէ ձգին 'ի Պարս և անդ յանգին 'ի մեծ հրաբուխն Տէմավէնտայ․ իսկ ըստ հարաւոյ Հայոց չեն ծանուցեալ հրաբուխք։

17․ ԲՈՎՔ․ — Ի բերս լերանցս և գետնոյ՝ հանգերձ վերոյիշեալ քարամբքդ և աղիւ, գտանին և այլ բազում ազգք քարանց, մանաւանդ պատուական սիւնագիզակ, և խանձաքարինք թխագոյնք, կարմրանիշք, գորշք, գեղնափայլք, յորոց շատք յեկեղեցեաց Անւոյ և այլոց տեղեաց շինեալք են․ և կիրճ ապիտակ և խայտ, օձաքար և արգեւսեան քար, Վանակն կամ Բիւրեղ քար, և այլն․ Հայկաւ, Հայ-քար կապոյտ, պատկեր և բորակ ուրեք ուրեք։ Ի հրահալելեաց երկաթ և պղինձ շատ, այլ և կապար, արծաթ և հետք ոսկւոյ, զառնուկ, մագնիս-երկաթ, զենկ 'ի կողմանս Գանձակայ․ ուր ոչ սակաւ բովք են․ առատք են և 'ի լերինս Բամբակի 'ի Լէօկար, 'ի Խաղտիս, և 'ի Դ Հայս։ Յիշատակի առ հինս և ոսկի Այրարատայ, այլ ուրն անյայտ․ 'ի կողմանս Ծոփաց միայն երեւին արդ հետք ոսկւոյ․ այլ 'ի հասարակի յետնեալ է քննութիւն և վատակ բովոց 'ի Հայս, և գրեաթէ ամենայն ուրեք վերակացուք բովոցն Յոյնք են 'ի վաղուց ժամանակաց։

18․ ԼԻՃՔ․ — Ոչ փոքր սեփական և զուարճագեղ կերպարան ընծայեն Հայաստանեայց և լիճք իւր մեծամեծք բարձրակայք և յոլովք․ յորս երեք են

---

(1) Այսինքն 120 աստիճան կամ մասն ջերմութեան ըստ ջերմաչափին Ֆարենայդայ, որ է 39 մասն ջերմաչափին Ռէօմիւրայ։

գլխաւորք, Սեւան և Վան և Ուրմիա, մանաւանդ երկոքին սոքա ընդարձակք և աղիք. ծովուն Վանայ կամ Բզնունեաց ունելով աւելի քան զ'1000 մղոն քառ. տարածութիւն երեսաց և բարձր գոլով աւելի քան զ'5000'. իսկ Ուրմիոյ 4000' են բարձրութեան, և գրեաթէ հաւասար տարածութիւն. իսկ Սեւան որ և Ծով Գեղամայ՝ կայ 'ի բարձրաւանդակի 6000', և բարձրագոյն ևս լերամբք շրջապատեալ, 360 և աւելի մղոն քառ. որոյ և քաղցր են ջուրք, թէ և ոչ ամենայն ուրեք յեզերսն: Ցեռ սոցա լիճք երեւելիք են ընդ մէջ Տայոց և Գուգարաց, 5-6000' բարձունք, այսինքն Չըլտըր որ է Ծովակն Հիւսիսոյ կամ Պալակացու ըստ Նախնեաց, որոյ 34 քառակուսի մղոն է տարածութեան. մերձ նմին Փառաւան, Քոզաբէյն? կամ Քարցախ, Սաղամոս կամ Խանչալու, Թէյն, Թումամ, և Արփա-լէօլ որ հանէ զհամանուն գետն, այն է Ախուրեան. Չանկըր փոքր լիճ 'ի Կաղզուան կամ յԽրասխանձոր: — Գուլճուկ, 'ի մօտոյ հարաւոյ Մասեաց 21 մղոն շրջապատաւ 'ի 5500' բարձու, արձակելով գետ համանուն. սա թուի Ծովն Կոփոյանի և Ծովն Գոյլափորոյ. և 'ի նոյն յԱյրարատ Այղըր կամ Պէյիր-լեօլ լճակ. և Խալ-լեօլ մերձ 'ի Պայէզիտ, և Ակ-լեօլ յելից հիւսիսոյ Մակուայ: Ցելից սոցա Ալա-լեօլ 'ի Սոթս Սիւնեաց 'ի բարձու 8300', որ և բաժակ հրաբղխի թուի: Իսկ 'ի հարաւոյ 'ի սահմանս Վանայ, Խաչլու լիճ 'ի Գուլանքդ, Նազըք 'ի հարաւոյ Նորայ, որ է ըստ հիւսիսոյ արեւմտից Ծովուն Վանայ, Արճէ-լեօլ և այլ լճակք մանունք 'ի սարոտս Սիփան լերին. և հարաւ յարեւելից Վանայ բարձր 5300': — Ցարեւմտեան Հայս Ղամբէն կօլոյ, Թօրթումայ լիճն, ընդ որ անցանէ գետ նորին. և 'ի հարաւակողմն 'ի Դ Հայս՝ Գեօլճիւկ, այն է Ծովն լիճ, որ և Ծովակ Խարբերդու: — Ցիշատակին 'ի Նախնեաց մերոց և լիճք կամ ծովակք ոմանք, որպէս ծովակն Մեծամօրի որ թուի Պէյիր լեօլ, ընդ մէջ Եղմիածնայ և Սարտարապատու. Ծովակն Ցըմբէնայ 'ի կողմանս Աղբակայ, որ անծանօթ է այժմ, եթէ չիցէ լճակն փոքր որ Խաչըլ-լեօլ կոչի 'ի հիւսիսոյ Քոթուրայ. Ցըլբէկծով, որ այժմ կոչի Ղամըշ-լեօլ 'ի Ղազախ գաւառի Գանձակայ. և Մօրն Ըէրուխոյ որ թուի Աչըղ-լեօլ 'ի հիւսիսի գաւառին Ղարսայ, կամ թէ ցամաքեալ իցէ այժմ և մերձեալ քաղաքին Անւոյ, ուրանօր յիշեն ճահիճս լինել ուղեւորք ոմանք յԺԷ դարու:

19. ԳԵՏՔ. — Ըստ լճացն առատ են և ընթացիկ ջուրք 'ի Հայս, այսինքն գետք, և անուանիք ոչ միայն բնական կերպարանօքն, այլ առաւել ևս պատմական յիշատակօք. զի յերկրին Հայոց բղխեն ակունք գլխաւոր գետոց արեւմտեանն Ասիոյ և խաղան 'ի հեռագոյն թատերք քաղաքական անցից նախաւակիրթ և ախերակալ ազանց: Սակայն 'ի գետոց անտի զխելն ընդ հիւսիս, այլ շատք ընդ հարաւ և ընդ արեւելս, իսկ ոմք յարեւմուտս խաղան՝ և նոքա ապա դարձ առնեն 'ի հարաւ: Երեք են ընդունարանք ջրոցս, Պոնտոս ծով 'ի հիւսիսի արեւմտից, Կասպիականն յարեւելս, և Ծոցն Պարսից ընդ հարաւ արեւելից արտաքոյ Հայոց. և երեք ևս շաւեմարանք 'ի Հայս այսինքն երեքին ծովակքն Ուրմիոյ, Վանայ և Սեւանայ. բայց գետքն ամենեքին յերար անկեալք միով միայնով բերանովն 'ի ծովսն երեսին. Հիւսիսայինքն Ճորոխաւ, արեւլեայքն Կուր-Երասխաւ միացելով, հարաւայինքն Շատ-ըլ-Արապաւ՝ որ է գետախառնուրդ Եփրատ-Տիգրիսի: Իսկ աղբերավայրք, այսինքն տեղիք ուստի բղխեն գլխաւորք գետոց Հայաստան աշխարհի, բովանդակին իբրև յեօթն բարձրաւանդակս մեծամեծս. որոց առաջին է Բարձրն Հայք, յորմէ յոլովագոյն բղխեն գետք և ընդ երիս ևս գէմս արձակին. որոց առաջին ՃՈՐՈԽ բղխեալ 'ի լերանց Սպերու և խաղացեալ յարեւմուտս՝ ապա առեալ դառնայ անդրէն ընդ արեւելս ուղղահեռական աղբերականցն. ժողովելով յայնմ կողմանէ զջուրս Խաղտեաց զՍամսոն-սու, և զայլս. և ապա կչիռ ընդ հիւսիս իջանէ և ընդ մէջ Կիւնիէ և Պադում քաղաքաց թափի 'ի Պոնտոս, ընդունելով յաջմէ՝ 'ի բուն Հայոց կողմանէն զջուրս Սպէրոյ, զԹորթում և զՕլթի, որ 'ի Թիկանց Կարնոյ արեւելահիւսիս լերանց բղխեն, զԱրտանուշ զուգակըցաւն Շաւշէթոյ, և զԱճարա որք 'ի Վրաց-Հայոց բաժնէ. սա է առաջին եզեմարուխ գետոյն Փիսոնի:

20. Եւ երկրորդն 'ի Տուրլու լեռնէ որ 'ի հիւսիսոյ Կարնոյ՝ բղխէ, առաջնոյ մի գլխաւորի եզեմական գետոց և համօրէն արեւմտեան Ասիոյ, այսինքն է ԵՓՐԱՏ, 'ի բարձուէ՝ սուղ ինչ պակաս 9000 ոտից. սա զառաջինն Սէա ջուր կոչի, և 'ի դաշտին Կարնոյ միանայ ընդ միւսոյ ևս աղբեր որ յարեւմտակողման լերանցն իջանէ և Սուրլամայ կոչի ջուր, և միով Սեաջուր կոչմամբ խաղայ ընդ արեւմուտս և ելեալ ընդ դաշտն Կարնոյ իջանէ ընդ հարաւ 'ի Դերջան, զորոյ զգետն ընդունի յահեկէ այսինքն յելից, և ապա կոչի Եփրատ կամ Ֆրատ յարեւելեայց. և ընթացեալ նախ ընդ Հար. Մ. մինչև յԵրզնկա, և ապա ընդ Մ. Հար. ցՔէպան Մատէն՝ ձևէ զսահմանն Հայոց Մեծաց և զՓոքուն. յաջմէն ընդունելով զԳայլ Գետ, Քէօմիւրսու, Գուրուչայ, Գուրզբանար, Գուրմա և զայլս 'ի Փոքր Հայս. իսկ յահեկէ գլխաւոր օժանդակ զՊինկեօլ-սու. սուղ ինչ 'ի վերոյ Քէպան Մատէնի ընդունի զմիւս թեւ իւր զբուն հայկականն Եփրատ որ և Արածանի կամ Մուրատ, զեկեալն յարեւելից, 'ի Բագրեւանդայ, և հզօրացեալ իջանէ ընդ հարաւ, և ապա յարեւմուտս, և գործէ արմունկն մեծ պատելով զՄուշէր լերամբ (8), և ապա դառնայ ընդ Եւ. Հար. ձևելով զսահմանն Հայոց ցՄիհրապ լեռան, ուր սպառին Դ Հայք, և անդ խառնի 'ի նա Գըլըլըրդոգ գետակ յահեկէ. անտի դարձեալ խաղայ ընդ Մ. Հար. արտաքոյ Հայոց Մեծաց, ընդ մէջ Փոքուն և Եփրատացւոց, գործելով ոչ սակաւ քարավազս ընդ կոշկոռս և ընդ խոխոմս, զորս և հատանէ ընդ բովանդակ սահմանսն Հայոց. 'ի Պիր կամ Պիրեճիկ քաղաքէ և 'ի վայր դառնայ ընդ Եւ. Հար. և նովին ուղղութեամբ ընթանայ ընդ բովանդակ Միջագետս, Ասորիս և Բաբելոն (Իրագ-Արապի), և առ Խուռնա քաղաքաւ խառնեալ ընդ Տիգրիսի գործէ զՇատ-ըլ-Արապ գետ, և յետ սակաւուց թափի 'ի Պարսկային ծոց. մինչև 'ի գետախառնուրդն լինին ընթացք նորա 1500 մղոն, որոյ երկու մասն 'ի հնգից 'ի Հայոց սահմանին է, ուր փասկս մանունս ևեթ ընդունի:

21. Երրորդ գետ մեծ կարնոյ աղբերակայրից և միւս ևս յեգեմականացն Գեհոն 'ի սուրբ Գիրս կոչեցեալ, և ընդ երրորդ գիմեալ դէմ յարևելս, է ԵՐԱՍԽՆ Հայոց, բուն և սեփականն գետ աշխարհի մերոյ՝ որ ոչ արտաքսանէ զերկիր մեր. բղխէ 'ի Թիկանց հիւսիսոյ Բինկէօլ լերանց 'ի բարձու 6350'. և իջանէ ընդ հիւսիս և ընդ հուպ գառնայ յարևելս, ընդ Ըռուշար և ընդ Թէքման իջանելով 'ի դաշտն Բասենոյ, յորոյ անուն և կոչի անդ. և ընդունի յաջմէ զՋուրն Հասանղալայու (Մուրց կամ Մուրցաձոր), և աստ սակաւ ինչ հիւսիսախառն խաղայ ընդ Եղ. ընդ մէջ լերանց Վրահայոց և Հայկական պարուն ընդ խոխոմս ձորոց, յորոց սակս Երասխաձոր կոչէր երբեմն, և այժմ վիճակ է Կաղզուանոյ, վասն մանուանս ընդունելով մինչև 'ի սահմանս Արարատայ. ուր 'ի դաշտին Շիրակայ ընդունի յաջմէ զԱխուրեան գետ որ Արփաչայի կոչի այժմ. և գայ 'ի հիւսիսոյ յԱրփա լճէ 'ի Վրահայոց աղբիւրակայրից, և հասանէ զդաշտն Այրարատայ արևելադէմ ընթացիւքն, որ և յանուն իւր՝ Երասխայ դաշտ կոչի, մինչև ցԱրմաւշատ կամ 'ի գլուխ դաշտին Շարուրայ. և ընդունի յԱրարատեան դաշտին զՄեծամօր որ է Ղամբի Չուր, և զՔասախ որ է Կարբոյ Չուր, և զայլս՝ որք 'ի ստորոտից Արագածայ յերար անկեալ՝ գան 'ի նա, և զՀրազդան յեղից Նոյին (Զէնկի-չայ) և զԱզատ 'ի նորին եղից՝ որ է Գառնոյ Չուրն. իսկ յաջմէն զԿողղան, Զաղուան, զՋուրն Կողբոյ, Պասինսուփ, Չնշասուփ, Սուրմալու. Ցերասխաշատայ կամ 'ի Դաշտէն Շարուրայ մինչև 'ի հինն Ջուղայ՝ իջանէ Երասխ ընդ հարաւ արևելախառն, և ընդունի յաջմէ զՎէդի, Զանախչը, զՀայանունն Արփա, զՃաղար որ է Նախճաւանոյ գետն, և զԵրնջակոյ գետ. իսկ յաջմէ զԳարասու, Տըղմուտ, Պողբունաբ, Աք-չայ և Կոտուր Չուր (Քոտուր) որ և գետ Խոյի. Ի հին Ջուղայէ ցսահմանամէջս Սիւնեաց և Արցախոյ խաղայ ընդ արևելս սուղ ինչ աջակողմանբար ձևելով զԳարապաղ, և ընդունի յաջմէ զգետս աղբերակայրից Գարապաղու՝ զՈգուլիս, Գոնուտ և Զանգեզուր, և յաջմէ գետակս 'ի Վասպուրական լերանց. աստ 'ի հարաւայնագոյն միջոցի ընթացիցն են և երագագոյն հոսանք Երասխայ և քարավազքն և ջրվէժք գեղեցիկք, ահաւորք և մեծագանցք, ընդ մէջ Ուրտապապատայ և Մեղրեայ. յորմէ և անդր գիւղի գետոյն զառ 'ի վայր ցածնելով ընդ արևելս հիւսիսոյ, ընդ որ և դիմէ Երասխ ձևելով զմիւս կէս Գարապաղոյ կամ զԱրցախ և զՈւտի, և ընդմիջելով զՄուղանն անապատ, ուր և խառնի ընդ Կուրայ. ընկալեալ յաջմէն զգետսն Որոտան կամ զԲազրկեան, և զՀակարի, յորոյ յեղից անցանէ ընդ մեծաւ կամրջաւն Խուտաֆերինի, և աստ այլս մանունս զԳօղթ, Քէնդիլան, և այլն. և յաջմէ հզօրագոյնս յԱտրպատական աշխարհէ, զԱհար, Գըլլ, զՀզօրն Տեհրան-Բօշ, զԳարանղու և զայլս: Ցետ միանալոյ ընդ Կուրայ՝ սակաւ ինչ ընդ հիւսիս և ընդ արևելս խոտորեալ, ապա ընդ հարաւ իջանէ արևելախառն 'ի ծոցն Կասպից՝ յերկուս առաջս բաժանեալ, մի յեղից հարաւոյ Սալիանայ՝ միաբերան, և միւս 'ի մօտից հարաւոյ բազմառու արտահոսմամբ. և ըննին ամենայն ընթացք նորա երկայնեալ վասն գալարուածոցն՝ իբրև 617 մղոն ցխառնուրդս Կուրայ, և 98 անտի ցծով:

22. Երկրորդ աղբերակայրք են բարձրաւանդակին Վրահայոց՝ Ջրբաժին լերամբք Չըլտրրայ, և Ղարսայ և Սօղանլուի յեղից հիւսիսոյ Կարնոյ. 'ի յասանոց լերանցս բղխէ Մօր-Մեծ (Գետն Ղարսայ) և ընկալեալ զՄեծ գետ (Չըլտըր) և զայլ վտակս յոլովս յաջմէ որ է 'ի մօտոյ՝ խառնի յԱխուրեանն (20): Ցարեմտից Ջրբաժնիս բղխէ երրորդն մեծութեամբ 'ի գետս աղբերացեալս 'ի Հայոց ԿՈՒՐ սեփականն Վրաց, 'ի կող գաւառի մերոյ Գուգարաց, որ այժմ Կէօլէ կոչի, յուստոց լերանց Ղարսայ և Գալնուի (5) 'ի բազում աղբերաց, որք միանան յԱրտահան, 'ի հիւսիսի, և յանուն նորա նախ կոչին, և դիմեն յարևելս ցՔարցախ լիճ (18), ուր յաջմէ խառնի գետակն Սուրբաւոյ. և անդ սկսանի կոչումն Կուր գետոյ և ընթացք նորա ընդ հիւսիս. Վերք Մտկուարի (Գետ-Կուրայ) կոչեն զգետս, և արևելեայք Քուր կամ Քիւռ. որ իջանէ 'ի հիւսիս ցԱխալցխէ և ընդունի յաջմէ զգետ նորին զեկեալն յԱծղրոյ, և յաջմէն զՓոտոան ապա գառնայ յարևելս հիւսիսախառն ցՔարթլս ուստ, և անտի հարաւախառն յարևելս ցՄծխեթա, յաջմէ և յաջմէ ընդունելով գետակս արտաքոյ Հայոց. 'ի Մծխիթայ իջանէ ընդ հարաւ 'ի Տփխիս, և անցեալ ընդ այն խաղայ 'ի հարաւ արևելախառն մինչև 'ի Խունանի և 'ի կարմիրն անուանեալ կամուրջ մեծ (123), և անդ ընդունի յաջմէն զհզօր օժանդակն զԱլգէթ 'ի Գիւսիսոյ և զՔցիա որ և Խրամ 'ի հարաւոյ. աս բղխէ 'ի լերանց Թաւեղայ (6) և ընդունի և ինքն 'ի հարաւոյ օժանդակս զԼօռբերդէյա, զՄօղանէր որ և Փոքր Խրամ, հանգերձ Բօղնէայ Գետով (Բոլնասուրբ), զԸռուլանէրի, և զհզօրն և զկարկաչուն Պամբակ որ և Ձորագետ կոչի ևս և Տեղթա և Բէրդամ, որ և իջանէ 'ի Բամբակի լերանցն (6), յինքն առեալ զՋանկըլըտաղ և զՃիլւա, որք յԱպոց լերանց բղխեն: Ցետ այնորիկ խաղայ Կուր ընդ արևելս հարաւախառն ընդ մէջ Հայոց, Վրաց և Աղուանից ցԳանձակ. յաջմէն ընդունելով ըղգետս արևելեան բարձրաւանդակին Սևանայ, զԻնձէ, Աղստև, Հասան, Տաւուշ, Մեղուղ, Զէոկամ, Ճիկէր, Շըմքոր, Խուլլուռա և Կենճէ. իսկ յաջմէ զերկոսին հզօրագոյնս յօժանդակաց իւրոց զիջեալսն 'ի Կովկասայ, զԻօռ կամ Եօռ և զԱլազան. սոսա և 'ի վայր ընդ հարաւ իջանէ Կուր ընդունելով յաջմէն զԱրցախական և զՈւտիոյ գետս, զԿուրակ և զԿուրան, զԹարթառ և զԳարգար, և յաջմէ զգետս Շիրուանայ զերկս կովկասայ, զԷնձէլան, Թուրեան, Կեօք, և այլն. և ապա գառնայ ընդ արևելս հարաւախառն և խառնի ընդ Երասխ, ընթացեալ մինչև ցայս վայր մղոնս իբրև 630, առաւելեալ քան զզուգակից իւր Երասխ՝ մանգաղաձև գալարմամբն և մանուածաւոր պտուտիւք, այլ ընդ վէց ասախճան երկայնութեան միայն ձգին ընթացք նորա, իսկ Երասխայն ընդ եօթն, զի սա ուղղագոյն ընթանայ և գրեաթէ միջակաւոր առնէ զՀայաստան, սուզ ինչ անցեալ զ39° լայնութեան ասակ և անուն, իսկ Կուր ընդ մէջ երկուցն խաղայ

42° և 41°, և գետախառնուրդքն սոցա են զ'40 աստիճանաւ լայն. և 'ի 46° արևել. երկ. Բարիզու:

23. Գ. Բարձրաւանդակ աշխարհավայր է Գարաբաղ, զորոյ շատս 'ի գետոց յիշեցաք անկանել յԵրասխ և 'ի Կուր. և ըստ գրոց եկեղեց՝ յարևմտուստ արձակին Վէտի, Զանախճը, Արբա (21). ընդ հարաւ՝ ամենայն յիշեալ գետքն 'ի Ճապրուայ ցՔէնտիլան, և ընդ արևելս՝ ամենեքեան որ իջանեն 'ի Կուր յԱղստևայ ցԳարգար. իսկ ընդ հիւսիս՝ վտակք մանունք արձակին 'ի ծովն Գեղամայ. իսկ ծովս այս յարևմտից կողմանէ 'ի լերանց Գեղամայ և մանունս այլուստ՝ ընդունի գետակս ոչ սակաւ, և ինքն արձակէ յարևմտից հիւսիսոյ առաւ 'ի Հրազդան գետ:— Դ գետարձակ բարձրաւանդակ է Բագրևանդ, այսինքն անջրպետն Երասխայ և Արածանի-Եփրատայ, 'ի հարաւոյ Հայկական լեռնապարուն, ուր 'ի սահմանս Տիտոնեայ յՈւկի լերանց Ալատաղի բղխէ նախայիշեալն հայկական Եփրատ կամ ԱՐԱԾԱՆԻ որ այժմ ՄՈՒՐԱՏ կոչի, և է արևելեան Թեւ Եփրատայ, վասն որոյ և Եփրատ իսկ կոչի. բաղում են աղբերք նորա յ'8-8300' բարձու. զառաջինն Զաղմուր կոչի և 'ի հիւսիսոյ յարևմուտս գառնայ 'ի Նահիէ և յԱլաշկերտ գաւառս, յորոց և 'ի Խալիկաղեայ յարևմտից ընդունի վտակս յոգնաթիւ, զՇէռեէան և զայլս. և իջանէ ընդ հարաւ 'ի Խամուր, խաղալով ընդ խորխոմս լերանց. յարևմուտս կոյս խոտորելով մինչև 'ի Մելազկերտ, անտի ուղիղ ևս խաղայ ընդ արևմուտս ընդ լերանցամէջս, ցհիւսիսակողմն արևմտից գաւառին Մշոյ, ընդունելով յաջմէն զԴուաղչ և զԳալէսու և զՋորդաահուր, որք յարևելեան հարաւային Թիկանց Պինկէօլայ բղխեն, և յահեկէ զԲափէշանն կամ զՋուր Մելազկերտու: Ի Զարպուհօրայ և 'ի վայր դարձեալ սակաւ մի ընդ հարաւ իջանէ, և գաւառայ անդրէն յարևմուտս, ընդունելով յահեկէ զՄեղրագետն Մշոյ, և 'ի միջոյ լերանց ընդ լայն զառ 'ի վայր սահեալ իջանէ առ Կուրկուրաւ որ 'ի հարաւոյ Ս. Կարապետին Մշոյ, և փոքր մի խոնարհագոյն ընդունի զԿինճայ ջրոյն բարձրահասան քարավայրին. ապա գրեաթէ ուղիղ ընթացիւք խաղայ յարևմուտս, հատանելով զբովանդակ լեռնագաշտս Դ Հայոց, և առ Քէպան Մատէնիւ խառնի յարևմտեանն Եփրատ. ընկալեալ նախ յաջմէն զՋուրս Ճապղջուրոյ, զՆէհէ որ 'ի Պինկէօլայ իջանէ (և է Մխսօ-Գայլ գետ ըստ Նախնեաց), և զայլ բաղում վտակս քրդաբնակ լերանց Տուժիկայ և Մնձուրայ, նոյնպէս և յահեկէ զգետակս գաւառին Խարբերդու. և լինին ամենայն ընթացք նորա իբրև 380 մղոն:— Ցեղից հիւսիսոյ աղբերականցն Արածանի-Եփրատայ՝ 'ի շամբէն Կոզայօվաի ելանէ Պուլա գետն օժանդակ Երասխայ, զոր նախ յիշեցաք (20):

24. Ե Աշխարհավայր բարձրաւանդակ է Աղձնիք, և ունի զաղբերս երկրորդի հզօր գետոյն Հայոց և զԵդեմայ, այսինքն է զՏԻԳՐԻՍ որ և Դիկլաթ և Շաթ ըստ արևելեայց. որոյ ակունք ըստ արդեւացս աշխարհագրաց են 'ի հարաւոյ Ծովք լճին Խարբերդու (18) իբր 'ի 4200' բարձու. այլ ինձ 'ի գէպ թուի զայն առաջս մի կամ օժանդակ ևեթ համարել, և զբուն աղբերակնն խնդրել իբրև 80 մղոնաւ բացագոյն յարևելից հիւսիսոյ առ Սխլան Մատէնիւ, հուպ 'ի Մուրատ և 'ի Տօրքուշ լերինս. քանզի նախնիք մեր ասեն յՈւռր գեղջէ հաշտենից բղխել զՏիգրիս, և Ճապղջրոյ և Կինճայ 'ի գէպ գան վայրք գաւառին, և ոչ Տըլըքոյ՝ յորում Ծովքն լիճ: Առ Սխլաւ խառնին երկոքին վտակքն, այն որ 'ի մտից գայ և այն որ 'ի հիւսիսոյ՝ հանդերձ մանունքք օժանդակօք, և իջանէ գետն 'ի հարաւ 'ի Տիարպէքիր, և անցեալ ընդ քաղաքն գաւառայ յարևելս և գրեաթէ ուղիղ ընթանայ 80 մղոն ցԲաղէշու գետն, վտակս յոլովս ընդունելով յահեկէ 'ի լերանցն Աղձնեաց, որ է Սասնոյ և Խութայ, յորս հզօրագոյն է Պաթման-սու՝ յոր անկանին Սարում և Խուլփ, և յելից սոցա Ելէշիխանէ, և 'ի սորա ելից Բաղէշու-ջուրն՝ որ յարևմտից հարաւոյ լերանցն Վանայ (Նեմրուտայ) իջանէ. իսկ յաջմէ ընդունի զԳէօկ Մէյտանոյ. յետ ընդունելոյ զգետն Բաղէշու խոտորի Տիգրիս ընդ հարաւ արևելախառն մինչև 'ի Զա-Սախի լեռան 'ի հարաւոյ Կորդուաց, ուր և սղաւին սահմանք Հայոց, և անդ ընդունի յահեկէ զԽապուր գետ (Քոպքար ըստ ոմանց). և նովին ուղղութեամբ ընթացից իջանէ 'ի Մուսուլ (Նինուէ) ձևեալ ընդ Եփրատայ զՄիջագետս. բայց յելից ընդ ջրոյն Բաղէշու խառնի 'ի Նա և Սէրթ (Սղերտ) որ և Պօհտան գետ, եկեալ յարևելից հարաւոյ Վանայ 'ի Մոկաց կողմանց 'ի Շատախ գաւառէ, և համարի նա արևելեան թեւ Տիգրիսի: Ի Մուսուլայ և անդր զուգընթանայ Տիգրիս Եփրատայ մինչև 'ի խառնուրդս իւր 'ի Խուռնա, ընդունելով յահեկէն և զգետն Խոյիր, և զՄեծ և զՓոքր Զապ, յորոց մին յԱրտոսայ և միւսն յԱղբակայ թուին իջանել և լինին ամենայն ընթացք Տիգրիսի իբրև 1000 մղոն, 980 գոլով ցխառնուրդն:

25. Զ Բարձրաւանդակ գետարձակ է երկիրն Վանայ, և ծով իւր շտեմարան յոլովից 'ի գետոց անտի. զի որք 'ի թիկանց լերանց նորին յարևմտից և 'ի հարաւոյ իջանեն՝ խառնին կէսք յԱրածանի, որպէս Մեղրագետն՝ որոյ աղբերք են 'ի Նեմրուտ լերին և բղխէ 'ի սառոյատից նորուն, և կէսք 'ի Տիգրիս, որպէս գետն Բաղէշոյ. իսկ այլք մանունք աւելի քան զ'40 թափին 'ի ծովն յամենայն կողմանց, որպէս Աւծիկոյ ջուրն 'ի հիւսիսոյ, Թօթի (Կիւզէլտէրէ) 'ի մտից հարաւոյ, Ոռան յարևելից հարաւոյ, Խօշապ հզօրագոյն քան զառաջինսն 'ի հարաւոյ արևելից, Անգղ կամ Շամիրամայ ջուր, Մարմէտ, Գարա-չայ յարևելից, և Բէրկրոյ ջուր 'ի հիւսիսոյ արևելից:— Է. գետարձակ բարձրաւանդակ է պար Զակրոս և Վասպուրական լերանց, որք և անջրպետեն զՋուրս Վանայ և Տիգրիսի ընդ արևմուտս, և զԵրասխայ և զՈրմիոյ ընդ արևելս. 'ի Վասպուրական կողմանց բղխեն գետքն օժանդակք Երասխայ զոր նախ յիշեցաք Սարը-սու, Բէրգրի, Կոտուր, Աքսու, և այլն (20). իսկ 'ի Զակրոսէ աւելի քան զ'20 գետակք իջանեն յՈրմիան ծով յարևմտից նորա, որպէս Զօլա 'ի հիւսիսակողմն, Նազլը-չայ 'ի հիւսիսոյ Որմի քաղաքի, Շահէր կամ Շէհէր 'ի հարաւոյ նորա, Պուլտարդ խոնարհագոյն ևս:— Արտաքոյ բնիկ հայկական աշխարհավայրիցս, Ը Ատրպատական գետք, յորոց ոմանք յՈրմիանն անկանին, 'ի



Գետնափոր տուն Հայոց. — Maison souterraine en Arménie.

հարաւոյ՝ Թոխա, Ճողոտ Հզօր գետ, և յելից՝ Պէնկոտ, Սոֆի-չայ, Տէղի-Րուտ, Ճինէրչէան, Աճի-չայ, Թուրեան-Րուտ, և այլն, յորոց ոմանք 'ի Սոհունդայ իջանեն. իսկ Աճիչայ որ և Սուրխ-ապ որ առ Դավրիժաւ անցանէ՝ 'ի բացուստ 'ի ստորոտից Սաւալանայ գայ. 'ի Սոհունդայ խաղան ընդ արևելս Շահ-Րուտ և Գուրանիու, և այլովք հանդերձ օժանդակեն զԳըզըլ-Իօզէյն գետ մեծ (Գոզզան) զեկեալն 'ի Մարաց, որ և հատեալ զԿիլան աշխարհ Թափի 'ի ծով Կասպից։ Ի լերանց Գարատաղու բղխէ Ահար գետ և խառնեալ ընդ Գարասու՝ որ յելից հիւսիսոյ Սաւալանայ և 'ի կողմանց Թալիշայ գայ, գործէ զՏէրէան-Րուտ օժանդակ Երասխայ։ — Եւ այսքան վասն հողոյ և ջրոյ Հայաստանի շատ լիցի. յիշեսցուք և զօդս։

26. ՑԵՂԱՆԱԿՔ ՕԴՈՑ Թերևս աւելի քան զհողն նշանաւոր են չափով զուգախառնութեանն, և զանազանեալք 'ի շրջակայիցն աշխարհաց, նա և յիւր ուրոյն մասունս երկրին. որ ըստ աշխարհագրական դրից ունի զմիջավայրս բարեխառն գօտեաց, և համաստիճան է երջանկագոյն և անուշագոյն վայրաց աշխարհի, իմա՝ Սպանիոյ, Իտալիոյ, Յունաստանի և Փ. Ասիոյ, այլ ցրտութեամբ առաւելեալ յոյժ ոչ քան զնոսա միայն, այլ և քան զԳաղղիա և զԳերմանիա և զայլ ևս աշխարհս Եւրոպիոյ բազում աստիճանօք հիւսիսագոյնս քան զնա. մինչդեռ յոլովք 'ի նշանաւոր քաղաքաց համաստիճան վայրացն յԵւրոպա վայելեն գարուն մշտնջենաւոր կամ ամառն չափաւոր, 'ի Հայս ձմեռն ութամսեայ ունի զհարաւագոյնսն ևս քան զնոսին, և բազում ուրեք նստի ձիւն զկէս ամին։ Ի վաղուց հետէ համբաւեալ է ձմեռնն հայկական առ քերդողս Լատինաց, և առ Հարս, և առ հնագոյնսն քան զնոսա՝ զօրավարս և աշխարհագիրս Յունաց և Հռովմայեցւոց. 'ի հիւսիսակողմն աշխարհին և 'ի բարձրաւանդակս հարաւոյ՝ ձմեռն սկսանի 'ի հոկտեմբեր ամսեան և տևէ ցմայիս. շատք 'ի գետոց 'ի սպառ պաղին, և ջուրք և գիւղք և գարք առ հասարակ դաշտանեան 'ի միատարր ձուլած ձեան, որ 4-6 ոտնաչափ բարձրացեալ ծածկէ զերեսս երկրի. և 'ի տեղս տարափոյ նորին և 'ի բքոյ՝ բազում տագնապ հասանէ և վտանգ ուղևորաց, և է ուրեք զի ընդ հիւսով ձեանն ծածկին ողջոյն կարաւանք. վասն որոյ 'ի հնուց հետէ սովորեալ է նոցա կրել ձողս երկայնս, որպէս պատմէ և Ստրաբոն, և ցցել արտաքս ընդ ծածկոյթ ձեանն վերարկելոյ, որպէս զի լիցի նշան այլոց անցաւորաց կամ ռահվիրայից, և զերծանիցին Թաղեալքն։ Իսկ բնակչաց երկրին 'ի սկզբանց անտի հնարս իմացեալ է շինել տունս գետնափորս կամ կէս ստորերկրեայս 'ի կողս բլրոց և ձորոց, զորոց նախ և առաջին զրոյց առնէ Քսենոփոն պատմիչ և զօրավար, որ 400 ամօք յառաջ քան զԹուականութիւն Փրկչին՝ էանց ընդ սահմանս Հայոց. և ցայսօր ժամանակի նոյն ձև և նոյն տարազ է տանցն, մարգակօք 'ի ներքուստ բարձեալ, և գաւիթոնս արկեալ, մի միայն ունելով մուտս և ելս լուսոյ և ծխոյ, մարդկան և անասնոց, զի առ երի կայ և ախոռ նոցին և շունչ նոցա ջեռուցանէ զանկուածս։ Երկարագոյն է ձմեռն Բարձր Հայոց, ուր եօթն և ութ ամիս ձիւնէ. յետ նորա Այրարատեան կողմանց Երևանայ, ուր Թէպէտ և հինգ ամիս միայն նստի ձիւն, այլ ցուրտ ոչ ինչ պակաս 'ի Կարնոյ, և իջանէ ջերմա-

չափին Փարենայգայ ց'19° ընդ զրոյիւ (— 26° Ռէօմիւրի). ոչ ինչ պակաս Թուի և 'ի բարձրաւանդակս Գարապաղու, Վանայ և Կորդուաց. արեւմտակողմն միջին և հարաւային Հայոց բարեխառնագոյն կամ ջերմագոյն է. նոյնպէս և դաշտակողմն արևելեան աշխարհին և կողմանք Գանձակայ, ուր և ձմերոցք էին Թագաւորացն Հայոց, յՈւտի նահանգի, և անապատն Մուղան, խորաձորք ինչ Կորդուաց և կողմանք Տիարպէքիրու: — Բայց զարմանալի այս է, զի սահման մշտնջենաւոր սառամանեաց որ 'ի Կովկաս ստորև է քան զ'10000', յԵւրոպա քան զ'9000' և 'ի Պիւրենեայս քան զ'8000' անգամ, 'ի ցրտագոյն կողմանս անդ հիւսիսային Հայոց՝ բարձր է քան զ'13000'. որպէս զի ամարանի զերծանին 'ի ձեանց ամենայն լերինք Հայոց՝ բաց յաւագ Մասեաց, և յԱրագածու իսկ կատարս (128) ոչ նշմարի ձիւն, այլ 'ի խոռոչս ուրեք. զարմանալի և այս՝ զի հարաւայնագոյն լերինք Պինկէօլայ և Բրդաստանի ձիւնապատք են 'ի 10500 ոտից և 'ի վեր: Պատճառ տարակերպ խրացս՝ բնութիւն քարանցն է և սևութիւն նոցին՝ որ առաւել կրէ զջերմութիւն, այլ և կոնաձև անջատ միայնութիւն նոցին՝ որով ամենուստ ընդունին զճառագայթս. ըստ ոմանց և ներքին հրակիր զօրութիւն երկրին: — Ի ջերմագոյն կողմանս՝ մարտ ամիս նշան տայ գարնայնոյ, այլ 'ի հասարակի յապրիլի բանին դրունք նորին և երևին կանուխք բուսոց, և 'ի վերջ կոյս նորին արկանի սերմն. 'ի մայիսի ծաղկեն ծառք պտղատուք և տերևք արձակին. յայնժամ ելանեն անդէորդք 'ի կողս լերանց և յեմակս, որք ամսով յառաջ դեգերին 'ի ջերմահովիտս խորանիստ վայրաց, և յետ ամսոյ ելանեն 'ի սարաւանդակս և 'ի բարձունս, և արածեն անդ զամիսս չորս. բայց 'ի Կարին է զի և 'ի յունիսի տագնապեցուցանէ ցուրտն, և 'ի գիշերի պաղի ջուր. և մինչ այն ինչ դեռ արձակեալ են 'ի նմա տերևք և արգիւնք անդաստանաց՝ 'ի հովիտս Թորթումայ հասունանայ կեռաս, և մինչև հասկաց ուռճացեալ 'ի նմա՝ յԵրզնկայ առաքացեալ մերձին 'ի հունձս: Զհետ երկար ձմերայնոյ հասանէ փութով ամառն հզօր, համառօտելով զգարուն. և 'ի սուղ ժամանակի երից ամսոց (1) թողբոջէ, դալարանայ, ծաղկի և պտղաբերէ երկիրն սեւահող և արգաւանդ. յԵրասխեան դաշտին կանխեն հունձք քան 'ի կողմանս Կարնոյ, և խաղող 'ի սահմանս Երևանայ վաղ հասունանայ քան 'ի բարեխառնն Պոնտոս, քանզի զօրանայ յոյժ տապն, և սաստկան ջերմութեան բարձրանայ յԵրևան քան զ'100° (Ռէօմիւրի 30°) որպէս զի իբրև 120° զանազանիլ օդոց անդ 'ի խորս ձմերայնի և ամարանոյ: Բայց 'ի Կարին չեն այսքան սաստիկ հակառակքն: Զջերմագին աւուրս յաջորդէ աշուն ոչ շատ երկար քան զգարուն, և տեղի տայ ձմերան: Եղանակս այս ձիւնաշատ է 'ի Հայս և հիւսիսաշունչ. գարուն անձրեւառատ և բարեխառնեալ արևմտեան հողմով, ամառն երաշտ և հարաւախառն արևելեան հողմով շնչեալ. և զի ոչ սակաւ ուրեք նուազէ ջուր և գետք 'ի խորուղ կան, բազում աշխատութեամբ և ճարտարութեամբ առոգեն զերկիր ազգի ազգի ջրագարձիւք: Օդք 'ի հասարակի անախտք են և առողջասունք, բաց յերևանեան կողմանց. և յերկարակեցութեամբ բնակչաց բազում կողմանց վկայի այս. տենդ և հարբուխ միայն են հասարակ ախտք երկրին: Բայց ոչ գտաւ զերծ և 'ի մաղձախտէն (քոլերա), որպէս և 'ի սրածութեանց ուստեք 'ի հնումն:

27. ԲՈՒՍԱԲԵՐՈՒԹԻՒՆ Հայաստան աշխարհի կարի բարգաւաճ է, օժանդակութեամբ պատուական հողոյն և ջրոց և ամառնային ջերմոյ. այլ 'ի սակս երկարութեան ցրտոյ ոչ բաւէ բերել զբերս հարաւային աշխարհաց, և Թափուր է յանտառաց բազում ուրեք. սակայն կարևոր բոյսք և դալարիք և արդիւնք ոչ միայն առատք և հասարակածաւալք են, այլ և գտանին 'ի բարձունս՝ յոր յԵւրոպա ոչ ժամանեն. զի և ցորեան պատուական լինի 'ի Կարին 'ի 5800' բարձու, և 'ի կողմանս Պինկէօլայ և Վանայ ց'6500', ընդ նմին և գարի. ուր յԵւրոպա գարի հազիւ ժամանէ 'ի 5200' 'ի հարաւակողմն Պիւրենեայց, այլուր և ոչ 'ի 4000', իսկ ցորենոյ ցածագոյն ևս են սահմանք. և այգիք որ յԵւրոպա չբարձրանան քան զ'2500', 'ի Հայս գտանին յԱրարատեան դաշտի 'ի 4250', և 'ի Մասիս 'ի 4013', իսկ 'ի կողմանս Վանայ ց'5100': Ըստ այսմ օրինակի և ծառք վայրիք. կաղամախ 'ի բարձրաւանդակին Կարնոյ գտանի 'ի 6000' բարձու, և բարտի որ յԵւրոպա չանցանէ ըստ 5500', 'ի Փոքրն Մասիս աճէ յ'7800' և 'ի լերին Սուկաւայ ց'8200' բարձու: Բայց որպէս կանխեցաք ասել՝ սակաւափայտ է Հայաստան, և ծառք անտառի ոչ յոյժ յաղթք և բարձրաբերձք. յաճախագոյն վայրի ծառք 'ի Հայս են բարտի, ուռենի, փշատենի, կաղամախ, և կաղամախ երերուն (populus tremula) և սօսի՝ մանաւանդ յարևելակողմն. նուազագոյն են կաղնիք և պտղի, եղևինք, յակրի և գիհի, արքակաղնի և այլ ծառք. ընդ որս 'ի ցածագոյն վայրս գտանին և մուրտ և տօսախ և դափնի, և մայր փայտք, շոճի և փիճի 'ի հարաւակողմանս: Բայց գոն և անտառք 'ի կողմանս Խաղտեաց, 'ի Սօղանլու լերինս ընդ մէջ Տայոց և Արարատայ, 'ի Գուգարս ('ի Բամբակի և այլն), յԱրցախ ընդարձակ անտառք և 'ի Գարապաղ. իսկ յայլ կողմանս նուազունք և փոքունք, որպէս յԱղձնիս, 'ի կողմանս Ամդայ և Բաղիշու, այլ և 'ի Դ Հայս, յորս են կաղնիք, նոճք, հացիք, եղևինք: Ի լերինս անջրպետս Ականց Արածանւոյ և Եփրատայ են անտառք կամ մացառք Թխտեննեաց, և 'ի հարաւոյ Քէլիկէտիկ լերանց յերէզս Կէօքսուի և Թորլուի՝ մացառք մամխեաց. ոչ սակաւ Թփուտք են և 'ի կողմանս Օլթեայ և Կառխմանայ և առ ափամբք Ճորոխի՝ ուր և անտառք իսկ: — Լեռնաստորոտ կամ ստորալպեայ (subalpines) բոյսք ժամանեն 'ի Հայս ց'8800', այլ նուազունք են. իսկ բուն լեռնաբոյսք կամ ալպեայք (alpines) առատք են յոյժ և ժամանեն ց'11000', և բազմազանագոյնք են քան զկովկասայինս, և գտանին 'ի նոսա ոչ սակաւ յայտնասերմն բոյսք (phanérogame), որք յալպեայս Եւրոպայ կամ ոչ բնաւ կամ դուն ուրեք

(1) Իմա Գուրընցանն կոչեցեալ. զի լինի 'ի Հայս և Աղբեցան սերմնարկութիւն՝ որ հնձի 'ի յաջորդ ամարան կամ յաշնայնի:

երեւին. 'ի հասարակի յոլովագոյն են ծաղկունք քան զանծաղիկս, և արմատք դեղոց քան զհասարակ բոյսս, և պայծառութեամբ երանգոց գերազանցեն բարձրածաղիկքն Հայոց քան զբազում աշխարհաց: Միջնալեռնեայ բոյսք ձգին ընդ 10-12000', և բարձրալեռնայքն՝ յ'12-13.000', որ 'ի Մասիս եւեթ առնէ, որպէս բազմածաղիկն Քարհերձ-մչկունի (saxifraga muxoides), կապուտակն Աստղիկ ալպեան (aster alpinus), ծիրանեկապոյտն Աստղագեղ (aster pulchellus), Զանգակծաղիկ քարհերձ, Սագփետուր? (potentilla), և այլն: — Յազգս ազգս ծաղկանց որք զարդարեն զհովիտս Հայաստանեայց՝ նշանաւորք են որակաւ և գեղով վարդենիք, կակաչք, Մարեմայ-ծաղիկն բարձրացօղուն, շուշանն կապուտակ, և բազմաթերթն Թաւիշանման Աղբրաց-արիւն՝ զոր գեղագոյն ամենայն ծաղկանց վկայեն տեսողք եւրոպէացիք, և գտանի 'ի կողմանս Կարնոյ, Մշոյ և Լօռւոյ: Յազգս պտղոց ընտիրք են 'ի Հայս խաղող 'ի հարաւակողմանս, ծիրան 'ի բազում կողմանս՝ որ 'ի Հայոց մուծաւ յԵւրոպա, վասն այնորիկ և ցարդ յանուն աշխարհիս մերոյ առ նոսա կոչի (armeniaca), շլորք, խնձոր, տանձ, դեղձ, նուռն և թութ, յորմէ և շերամ որդն և մետաքս յարեւելեան Հայս, սեխ և ձմերուկ. անուանի են պտղատու վիճակք Թորթումայ, Արտահանայ, Կաղզուանայ, Երզնկայ, Ամդայ, Սասնոյ, Բաղեշայ, Վանայ, և այլն. գինին Սասնոյ, Մշու, Արղնու, Երզնկայ, և այլն: Ջերմասէր բոյսք լինին 'ի կողմանս Գանձակայ (Ուտի), յԱղձնիս, 'ի Մոկս ուր լինի և ձիթենի, եղջերենի և թզենի. իսկ բամբակ, կնջիթ, ծխախոտ, կտաւատ, գղթոր, 'ի բազում կողմանս. որիզ յարեւելեան աշխարհի: Ի ցորենաբեր վիճակս որք բազում են, անուանի է 'ի չորից հազարաց ամաց հետէ Շիրակայ դաշտն բարձր, և վիճակք Կարնոյ, Պինկէօլայ և Խլաթայ. ընտիր է և հաճար Հայոց, որպէս 'ի հասարակի և ամենայն ընդեղէնք և արմտիք 'ի Հայս. ընդ նոսին և խնկունի բոյսք, վասն որոյ քերդողք Լատինաց խնկաւորս և Անուշահոտս կոչեցին զՀայս. նոյնպէս և արմատք բուժից և ներկոց: Ի կարգի նշանաւորաց են Լուշպան որ և Մարգատառակ և այլ պէսպէս անուամբ կոչի. Խունդեղն Հայոց, և մեղրահամն Գազպէ կամ մանանայն՝ որ յամառային եղանակի իջանէ կամ պատի զտերեւովք մատուտակի և մանանեխազգի փշոյ և կաղնոյ՝ 'ի կողմանս Տարօնոյ, Դ Հայոց և Աղձնեաց: Ընդ սոսին և այլ բոյս սեզոյ՝ յորում լինի ցանկալի Որդն կարմիր, յԱյրարատ նահանգի, յորմէ հանեն զգեղեցկագոյնն կարմրոց: Իսկ մարմանդք յուռթիք և պարարիչք սփռեալ են յամենայն բարձունս Հայոց, յորս զկէս ամառնային թափառին բիւրաւորք Քրդաց և Թիւրքմէնից անթիւ հօտիւք խաշանց, և ոմանք ձմերանի չուեն գնան 'ի լայնատարած դաշտն Մուղանայ, որ յայնմ եղանակի ուռճացեալ դալարանայ, և սապնջական լինի մարդկան և կենդանեաց ջերմակարօտից, իսկ ամառանի երաշտանայ և օձուտ լինի՝ ըստ ոմանց:

28. Ի ԿԵՆԴԱՆԻՍ բազմատեսակ ճանաչին 'ի Հայս հօյլք հաւուց, մանաւանդ ճախնայինքն ջրասէրք և մացառասէրք, և զնկարագիրս նախնեացն մերոց որ 'ի Ե դարու՝ զկողմանց Կարնոյ և զԱյրարատայ՝ հաստատեն արդեաւցս քննութիւնք. յորոց Անգղիացիք բնակեալք 'ի Կարնոյ քաղաքի՝ առաւել քան զ'170 ազգս հաւուց նշանակեցին 'ի սահմանս նորին, և զդաշտ նորուն երամովք հաւուց ծածկիլ ասեն զեղերբք շամբին 'ի բարեխառն եղանակին. նշանաւորք են 'ի հաւսն Արօսք, որ են կարապք մեծամեծք, և փոքր կարապք, ճայք, ձկնկուլք, սագք և բադք վայրիք, լոր և աքլոր, կաքաւ, փասիան, աղաւնիք մեծամեծք, տատրակք, և արագիլն և կռունկ սիրելի հաւք Հայոց. և ճնճղուկք բազում. որոց բազմաց անուանք ոչ յիշին, և բազում անուանց անուանակիրքն անծանօթք. զի ցարդ չէ ուրուք խնամով քննեալ զկենդանական արարածս Հայաստանեայց: — Բազմաթիւ են և երէք վայրիք, և անուանի յաւուրց Հայկազանց որս նոցին, որ և զաւհմանակից աշխարհաց իշխանս ձգէր այսր. բազում ազգք թռչնոց լինել եղանց և այծեմանց, վիթից և առիւծից, յորոց և երկայնեղջիւր առն կամ վիթ մի, այլ և կինճք 'ի շամբս, և բորոզունք յեղտիւրս, և գոմէշք ընտանեցեալք, իսկ անասուն ընտանի շատ. 'ի Հայկական նահանգին Ռուսաց համարին իբրև 600,000 ընտանի անասունք, յորս 160,000 եղջերաւորք. իսկ յօսմանեան մասնէ ամի ամի ոչխարք ընտիրք աւելի քան զմիլիոն տարքին 'ի Տաճկաստան: Ի գրաստուց ազգի պատուականագոյն են երիվարք և ձիք նժոյգք Գարատաղու և Քրդաստանի, զոր փոխան գանձուց հարկէին երբեմն վարիչք աշխարհիս՝ դրանն Պարսից՝ 'ի տիրապետել նոցա. գարմանին և ուղտք յԵրեւանեան նահանգի և յարեւելեայսն: Ի գազանաց վայրենեաց գտանին վագր և ինձ և բորեան և լուսանունք, արջ, գայլ, աղուէս, շնագայլ, շունք մեծամեծք, ցիռք, և այլն, իսկ առիւծ հազիւ երբեք ուրեք տեսանի: Ի մանունց վայրենեաց՝ ոզնի և կուզ, և ջրշուն և կուղբ: — Յազգս զեռնոց նշանաւորք են նախ ձկունքն առատք 'ի գետս, յորս յաճախագոյն գտանի կարմրախէտն, և 'ի լիճս՝ յորս տառեխ միայն 'ի Վանայն, իսկ 'ի Սեւան իբրև 15 ազգք ձկանց ճանաչին, յորս 12 կոչին հայեցի անուամբք և այլ ազգեօք, որպէս Կողակ, Բաղդակ, Աղինճան, Իշխանաձուկն, Գեղաքունի, Կռակտուց, Պէօճէկ, Ամառն, Բեխլու, Կարմրախէտ, Չալաձուկն, Ձուար. 'ի հզօր գետս լինին և մեծամեծ ձկունք, որպէս յԱրածանի, ուր հինգն ընդդայս լինել ասացին, և ստուգեցաւ 'ի մտոյ լինել 'ի նմա ձուկն վիթխարի կիտահասակ. բայց առաւել յաճախութեամբ գտանին պատուականագոյնք 'ի ձկանց 'ի բերանս Կուրայ և Երասխայ, յորոց և զանուանի ազկիթն (խաւեար) գործեն, և մեծ ազբիւր է շահու: — Բազմաթիւք են և միջատաց սեռք 'ի Հայաստան, յորոց ոչ սակաւ նորայայտ տեսակս հաւաքեալ բնասիրաց ոմանց Գերմանացւոց՝ բերին յԵւրոպա: Յիշելի է ընդ սոսին և մեղու, որ 'ի կողմանս Խաղտեաց և այլ ուրեք ուրեք ընծայէ առատ և ընտիր մեղր: Ի վնասակար զեռունս նշանաւոր են կարիճք մեծամեծ 'ի կողմանս Աղձնեաց և 'ի գերբուկս աւերակ քաղաքանցոյ, և մուն և մժեղ 'ի կողմանս Երեւանայ և Քրդաց, յորոց տագնապեալ բնակչացն յամառանի խուսեն 'ի բարձունս լերանց:

# ՔԱՂԱՔԱԿԱՆ ՆԿԱՐԱԳԻՐ

29. ԲՆԱԿԻՉՔ. ՀԱՅՔ. — Հայաստան աշխարհ՝ որ բազում հաւանութեամբ՝ երկիցս խանձարուրք եղեալ է մարդկութեան, յարարչագործութեան նորին և 'ի զերծման 'ի ջրհեղեղէն, աներկբայապէս բնակեցաւ նախ յորդւոց և 'ի թոռանց Նոյի ցեղապետի. և 'ի չուել մարդկանն 'ի Բաբելոն և յայլ կողմանս՝ կային յերկրի մերում տակաւին սերունդք նոցա. զորս ընդ իւրև նուաճեալ յապետոսեանն և Թորգոմածին Հայկն հսկայ՝ դարձ առնելով 'ի Բաբելոնէ, յիւր անուն և զերկիրն կոչեաց Հայք, յոր կոչեցան և այլ գաւառք շուրջ զԱրարատաւ, Տարօնով և Վասպուրականաւ և Սիւնեօք, յորս նախ սփռեցան սերունդք նորա. և առ փոքր փոքր՝ ամենայն աշխարհն՝ զորոյ սահմանս կարգեցաք 'ի սկզբանն. և 'ի մի ազգ ձուլեալ միացան և եզերական բնակիչքն Թորգոմազնեայք և այքանազեանք և օտարք ոմանք սեմականք, որք վաղուց եւս կալեալ էին զկողմանս բնակութեան իւրեանց, և անղածինք կոչին. յորս գրելիք են Խաղտիք, Տայք, Գուգարք և Կորճայք և Ուտիք։ Յաւուրս Արամայ նահապետի որ 400 ամօք զկնի Հայկայ ընդարձակեաց զսահմանս պետութեանն, խառնեցան ընդ տոհմական Հայս Փռիւգացիք, Կապադովկացիք և այլք 'ի հնագոյն բնակչաց Փ. Ասիոյ. յետ այնորիկ 'ի ժամանակս Հայկազանց և Արշակունեաց՝ և այլ զանազան ազգք, է որ գերութեամբ, է որ կամովի գաղթելով, և է որ ապաստակաւ. 'ի սոցին սակի են նախ Սկիւթացիք կամ Խազիրքն հին՝ յարևելս հիւսիսոյ աշխարհին Հայոց, Մարք յարևելս հարաւոյ, ընդ որս և Քաղդէացիք 'ի Կորդուս, Ասորեստանեայք յԱղձնիս և յերկրին Արծրունեաց 'ի Վասպուրական, Ճենք՝ որ են Ուռպելեանք և Մամիկոնեանք 'ի Գուգարս և 'ի Տարօն. Հրեայք 'ի Սպեր, յորոց Բագրատունիք և Ամատունիք, և յայլ զանազան կողմանս. Քանանացիք յառաջ քան զնոսա, յորոց Գնթունիքն սերեցան. Պարթևք և Պահլաւք՝ յաւուրս Արշակունեաց, Հնդիկք 'ի կողմանս Տարօնոյ և Գնչուք. Բուլղարք 'ի կողմանս Վանանդայ. և Ալանք և Վիրք և Յոյնք, այլովք հանդերձ։ Սոքա ամենեքեան թէպէտ և բարուք և կրօնիւք զանազանեալք ոչ սակաւ ժամանակս, այլ տակաւ փոխեցան յօրէնս և 'ի լեզու հայկական և եղեն մի ազգ և մի լեզու. բայց տակաւին մնաց խոտր զանազանութեան 'ի բարբառս խօսից նոցին, որք Եզերական լեզուք (գաւառականք) կոչեցան 'ի Նախնեաց մերոց մատենագրաց և թուին վեց կամ եօթն. և ցարդ լսին այլաձայն բարբառք 'ի կողմանս Մոկաց, Գողթան և այլ ուրեք ուրեք, որք յարարատեան և 'ի Տարօնոյ բարբառոյ ոչ սակաւ զանազանին, այլ ոչ է ուրուք խնամով հետազօտեալ և նշանակեալ զայսպիսիս։ Յայսքան ազգերաց գետացեալ ազգ Հայոց՝ ըստ օժանդակութեան արգաւանդահող երկրին և օգոց քաջանութեան, երկրագործ և անատէր բարուց մարդկան, և անաշխարհական պարապմանց թագաւորաց երկրին՝ աճեաց յոյժ բազմամարդութեամբ. և որպէս յայտնի է գուշակել և 'ի բազմութենէ տոհմից և պայազատութեանց, գաւառաց և վիճակաց, և անթիւ անուանց և նշանաց գիւղօրէից և ագարակաց, հարկ էր իբրև զմի 'ի բազմամարդագոյն աշխարհաց Եւրոպիոյ լինել Հայաստանեայց յաւուրս հարստութեան բարեբաստիկ տեարց իւրոց։ Բայց յետ տկարանալոյ և բառնալոյ տանն Արշակունեաց, 'ի սկզբանէ անտի Ե դարու սկսաւ նուազել Հայութիւն և բնակիչք աշխարհին, որ գաղթիւ և որ պատառմամբ սրոյ և պէսպէս վտանգաց. և ազգք եկամուտք սպրդեցան 'ի ներքս մի ըստ միոջէ, Պարսք, Յոյնք, Արաբացիք, Սկիւթացիք կամ Թուրքք, Թաթարք, Վիրք, Կովկասայինք, Ասորիք, և յետոյ Քուրդք, Օսմանեան Թուրքք, և սոտ ուրեմն Ռուսք. և թէպէտ այսքան ազանց ասպնջական եղև Հայաստան կամաւ կամ ակամայ, այլ 'ի խուռն ապաստակէ և յանդուլ պատերազմաց՝ նուազեաց ընդհանուր բնակութիւն երկրին, և թերևս ոչ աւելի քան զհինգ միլիոն իցեն այժմ 'ի նմա բնակիչք, և հնգիր մասամբ միայն բնիկք, այսինքն Հայք. քանզի մեծաթիւ մասն ազգիս արտաքոյ սեփական հայրենեացն գտանի, 'ի Փ. Ասիա և յամենայն Օսմանստան և 'ի Ռուսաստան, և ցրիւ գրեաթէ ընդ ամենայն կողմանս երկրի. զորոց միահամուռ թիւ՝ արտաքինք յ'2 միլիոն գումարեն, ներայինք յամաց հետէ 'ի չորս, իսկ ինձ հաւանագոյն թուի միջինն չափ. ընդ ամենայն Ռուսաստան հաշուին Հայք ոչ աւելի քան զ'800,000, 'ի Պարսկաստան իբրև 100,000, յԱւստրիա 18,000, յԱփրիկէ 6,000իւ չափ, ոչ աւելի և 'ի Հնդիկս. իսկ յայլ ամենայն կողմանս Եւրոպիոյ և ոչ հազար մի. բայց միայն յօսմանեանն Եւրոպա 400,000իւ չափ. իսկ այլ ամենայն հայորեար տարածեալ է 'ի Մեծ և 'ի Փոքր Հայս, և յամենայն Փոքր Ասիա, 'ի Միջագետս և յԱսորիս, և սակաւք սփռեալք 'ի խորին աշխարհս Ասիոյ։ Խտագոյն բնակութիւն Հայոց 'ի բուն Հայս ծանուցեալ է յԵրևանեան նահանգի, 'ի Մուշ, 'ի Վան, 'ի Կարին, յԵզնկա, 'ի Խարբերդ, յԱլաշկերտու կողմանս. իսկ արտաքոյ 'ի կողմանս Կեսարիոյ, Արաբկերու, Տիվրիկու, Անթապու, 'ի Կոստանդնուպօլիս, 'ի Տփխիս. և այլ ուրեք ուրեք։

30. ՕՏԱՐ ԲՆԱԿԻՉՔ. — Երկրորդ ազգ յետ Հայոց և բազմաթիւ քան զնոսա և քան զայլսն են Քուրդք բազմատոհմք, իբրև միլիոն և կէս, սերունդք Կորդուաց Նախնեաց և Քաղդէացւոց և խառնուրդ անծանօթ. կէսք հնազանդք Օսմանեանց և Պարսից, և այլք ինքնագլուխ իշխանօք վարեալք, չնաբնակք և վրանաշրջիկք. կրօնիւք մահմետական, լեզուաւ՝ մերձաւորք պարսկայնոյն։ — Գ. Ժողովուրդ Թուրքք և Թուրքմանք և Թէրէքէմէ. ընդ որս Դ. Օսմանեանք,

և Ե. Թաթարք. ամենքին մահմետականք, և թիւ նոցա աւելի քան զմիլիոն մի։ — Զ. Պարսք յարևելակողմն աշխարհիս. ընդ որս Է. և Փարսիք կամ Կրակապաշտք 'ի Պարսս. — Ը. Ասորիք և Քաղդէացիք նեստորականք 'ի Հաքեարի, և 'ի գաւառս Ուրմիոյ և Սալամաստոյ, յորս գոն և հռովմէականք, յանյիշատակ ժամանակաց բնակեալք 'ի լերինս անդ և քաղաքավարեալք հին օրինօք և կրօնիւք, յորս նախանձիր մեծ գործեցին Քուրդք յամին 1843 և 1847 (94), այլ տակաւին թուին լինել բիւրք ինչ 'ի դժուարակոխ լերինս անդ Կորդուաց։ — Թ. Եէզիտիք արևապաշտք և գիւապատկառք, լեզուաւ և բարուք նմանք Քրդաց, այլ ոչ բազմաթիւք։ — Ժ. Վիրք 'ի Սօմխէթ և 'ի Սամցխէ։ — ԺԱ. Արտաքացիք 'ի Կովկասեան գաւառս արևելից. ուր ԺԲ. Լեկք և այլ Կովկասեանք. անդ ԺԳ. և Միացորդք Ալուանից կամ Ուտիացիք, մերձաւորք Հայոց։ — ԺԴ. Հրեայք սակաւք յԱխալցիխէ և 'ի Կովկաս. ոչ բազմաթիւ քան զնոսա ԺԵ. և Ցոյնք. ԺԶ. Լազիկացիք և Եգերացիք և այլք պոնտականք։ — ԺԷ. Գերմանացիք իբրև 3500 ոգիք, հատուած եկեալք յամին 1818, բնակեալք 'ի կողմանս Վրահայոց և 'ի Գանձակ։ — ԺԸ. Ռուսք յիւրեանց բաժնի, և աղանդաւորք նոցա Մալականք և Տոխապորէցք 'ի կողմանս Գանձակայ։ — ԺԹ. Խազախք սահմանապահք Ռուսաց. — Ի. Գնչուք և Բոշայք. յետինքս քրիստոնեայք են կրօնիւք, լեզուաւ և բարուք հայամերձք։ Արտաքոյ սոցա Եւրոպէացիք ոմանք յԷրզրում և 'ի Դաւրէժ, գեսպանութեամբ նստեալք և եկք սակաւք։ Միահամուռ թիւ սոցա, զատ 'ի հնդեցուն նախակարգեալ ազգացն՝ ոչ թուի ժամանել 'ի մի միլիոն։

31. ԱՐՈՒԵՍՏՔ. ՎԱՃԱՌՔ. — Գլխաւոր և հասարակ պարապումն բնիկ ժողովրդեանն Հայաստանի՝ մշակութիւն է, և եկաց՝ խաշնարածութիւն. և ըստ տարազու հողագործ մարդկան՝ խաշորակեաց և սակաւապէտ է ժողովուրդն, անհարթ և անպաճոյճ. 'ի քաղաքս և եթ գոն արուեստաւորք և վաճառականք, և արուեստք սովորականք են ոստայնանկութիւն, խաղախորդութիւն, ներկարարութիւն. ընդ սոցին են և պղնձագործք, զինագործք, ոսկերիչք սակաւ, խորտկարարք, հացեփեացք, դերձակք, և այլն։ Ի գլխաւոր քաղաքս գոն և սեղանաւորք, պաշտօնեայք և թարգմանք առ հիւպատոս օտարազգիս և առ գաւառապետս։ Ճարտար և յաջող է ազգս Հայոց յարուեստս և 'ի վաճառականութիւն և յուսմունս, այլ առաւել արտաքոյ բնիկ աշխարհին գտանին այժմ հրահանգեալքն և բարեկեցիկք։ Արդասիք Ճարտարութեան հայթհայթեալք 'ի Հայս են սեկ, մուշտակ, անօթք պղնձի և երկաթոյ, զէնք, կտաւք սպիտակք և ներկածոյք, գորգ, ասուի, մետաքս, և այլն. ընդ որս առաջին 'ի վաճառ և անկազմ արդասիք երկրի, արջառ և ոչխար և պատրուճակ, ձի ընտիր, աղած ձկան, պտուղք և արմատք ներկոց և դեղոց, կիւ կամ ձութ, մատուտակ, գղթոր, խաշնդեղ, գազպէ, որդան կարմիր, աղ, հայկաւ, հայքար, բորակ, իւղ կտաւատի, նաւթ, ծծումբ, կապար, պղինձ, արծաթ։ Գլխաւոր շահատանք 'ի Հայս են Էրզրում, Դաւրէժ, Տիարպէքիր, Վան, Պայէզիտ, յորս տակաւ երթևեկ առնեն կարաւանք ընդ Պարսս, յորմէ գայ և ազխամազխն Հնդկաց. ընդ Փոքր Ասիա՝ ուստի գան եւրոպական վաճառք. ընդ Տփխիս՝ որ մեծ շահատան է Կովկասեան աշխարհի։ Իսկ ծովեզերեայ շահատանք և դրունք վաճառականութեան են, 'ի Պոնտոս՝ Տրապիզոն և Փոթի. Պաքու և Սալեան և Լէնքորան 'ի Կասպիականն, ընդ որ նաւեն յԱժտէրխան և յափունս ուրեք Պարսից. և աստ ընդ բերան Կուրայ և Երասխայ առ խուն մի և եթ գան նաւք. իսկ 'ի Ճորոխ նաւեն յԱրդուինայ 'ի վայր 'ի Փոթի. յԵփրատ և 'ի Տիգրիս արտաքոյ Հայաստանի լինի նաւարկութիւն 'ի ծոցն Պարսից. և 'ի միջերկրայս լինի նաւարկութիւն ընդ ծովն Վանայ՝ 'ի Դատվանայ Բաղէշու մինչև 'ի Վան։

32. ԿՐՕՆՔ Հայոց որպէս ամենեցուն յայտնի է՝ քրիստոնէութիւն է ընդհանուր. և մեծագոյն մասն ազգիս յԱրևելեան եկեղեցւոյն է, ինքնուրոյն հովուապետօք առաջնորդեալ, որ կաթուղիկոսքն կոչին. և երեք ինքնագլուխ կաթուղիկոսք են արդ. Ա. Էջմիածնի, որ նախապատիւն և է մեծաթեմ, այլ յամին 1837 վարէ զիշխանութիւնն օժանդակութեամբ սինհոդոսին կարգելով յինքնակալէն Ռուսաց. Բ. Կաթողիկոսն է Սսոյ՝ յԺԳ դարու հաստատեալ անդ և ոչ ընդհատեալ 'ի զատուցման աթոռոյն և փոխադրութեան յԷջմիածին՝ 'ի կէս ԺԵ դարու. Գ. աթոռ է Աղթամարայ՝ 'ի ծովուն Վանայ, 'ի Ժ դարու սկզբնաւորեալ յաւուրս Գագկայ Արծրունւոյ, և իշխանութիւն նորա ձգի յարևելս և 'ի հարաւոյ ծովուն, անձուկ թեմիւ. որպէս և Սսայն չէ կարի ընդարձակ։ Միւս ևս կաթողիկոս էր Աղուանից անուամբ 'ի Գանձասար, որ բարձաւ 'ի Ռուսաց յամին 1828, և աթոռն մետրապօլտութիւն անուանեցաւ և հաստատեցաւ 'ի Շուշի։ Երկրորդ յետ կաթողիկոսացս են Պատրիարքութիւնքն երկոքին, Երուսաղեմայն և Կոստանդնուպօլսոյ. սորա իշխանութիւն օժանդակեալ յազգային Եկեղեցական ժողովոյ՝ ընդարձակագոյն է քան զամենայն հովուապետացն Հայոց, տարածեալ գրեաթէ յամենայն Օսմանստան, ունելով թեմս իբրև 50, որոց եպիսկոպոսունք յԷջմիածնայ կաթուղիկոսէն առնուն զձեռնադրութիւն. նոյնպէս և առաջնորդք Հայոց Պարսկաստանեայց, որք են արքեպիսկոպոսն Դաւրիժու և արքեպիսկոպոսն Նոր Ջուղայի առ Ասպահանաւ, ընդ որոյ իշխանութեամբ են և Հայք հնդկաստանեայք և որք 'ի Բաբելոն։ — Իսկ միաբանք արևմտեայ եկեղեցւոյն կամ Հռովմէական ուղղափառ Հայք, գումարին իբր 'ի 160.000. և առաջնորդին 'ի Ռուսաստան՝ յուղղափառ Սինհոդոսէն. 'ի Պարսկաստան՝ յառաքելական նուիրակաց և պաշտօնէից. յԱւստրիա՝ 'ի հայ արքեպիսկոպոսէն Լէմպերկայ, և այլուր՝ 'ի լատին եպիսկոպոսաց. յՕսմանստան յերկուց գլխոց, 'ի կաթուղիկոսէն Լիբանանու հաստատելոյ 'ի սկիզբն ԺԸ դարու, որ ունի թեմ զկողմանս Կիւլիկիոյ, Փ. Հայոց և զԱսորւոց, և 'ի նախագահ Արքեպիսկոպոսէն Կոստանդնուպօլսոյ հաստատելոյ 'ի Ս. Գահէն Հռովմայ յամին 1831, որ ունի թեմս հինգ 'ի Հայս և 'ի

Փ. Ասիա: — Ի կողմանս ինչ Պոնտոսի և Փ. Հայոց՝ որպէս յԱկն, գոն և Հայհռոմ անուանեալք յունածէսք հայալեզուք:

33. ԿՐԹՈՒԹԻՒՆ. ՈՒՍՄՈՒՆՔ. — Ի բնասիրական հրահանգս և յուսմունս՝ յետնեալ գտանի ազգս մեր 'ի սակս քաղաքական վիճակին, թէպէտ և յառաջադէմ և քաջաւոր քան զայլս յարևելեայ ազգաց: Բայց 'ի բուն Հայաստան նուազ և աղօտ է լոյս ուսմանց, որ ոչ սակաւ բարգաւաճէ արդ յօտար կողմանս, 'ի Կոստանդնուպօլիս, 'ի Զմիւռնիա, յԱրմաշ, և այլն, յորս են վարժարանք. և 'ի հեռաւորին ևս վայրս, 'ի Տփխիս, 'ի Մոսկուա, 'ի Կալկաթա, 'ի Բարիզ և 'ի Վենետիկ. ընդ որս և երկոքին մենաստանք Մխիթարեանց 'ի Վենետիկ և 'ի Վիեննա սատարիչք են Հայ դպրութեանց. ոչ սակաւ օժանդակք են և Ս. Յակոբայ վանքն յԵրուսաղէմ, Շուշւոյ և Սիւնեաց առաջնորդարանքն 'ի Հայս: Վարժարանացն գործակիցք են յայժմուս 'ի բարգաւաճանս ուսմանց՝ օրագիրք ազգայինք, տպագրարանք, թարգմանութիւնք գրոց և ուսումն օտար լեզուաց. որովք մարթ է ակն ունել տեսանել ևս օգտի և բարգաւաճանաց՝ խոհական և զգոյշ հետևողութեամբ օտարաց, և քաջալեր և խաղաղասէր խրախուսանօք եկեղեցական և աշխարհիկ աւագ որերոյ ազգիս:

34. ՔԱՂԱՔԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ ԵՒ ԲԱԺԻՆՔ. — Սկիզբն քաղաքական կենաց և վարչութեան Հայոց՝ ժամանակակից է հնագունիցն ազանց, երբ 2500 ամօք նախ քան զգալուստ Փրկչին հաստատեալ 'ի Հայկայ, և տևեալ նահապետական և թագաւորական իշխանութեամբք սուղ ինչ պակաս 3000 ամս, երկոքումբք հարստութեամբքն, Հայկազանց և Պարթևաց կամ Արշակունեաց. առ որովք 'ի 15 փոքր աշխարհս և պետութիւնս բաժանէին Մեծ Հայք, և 'ի 190 գաւառս (35), իսկ 'ի վիճակս յոլովս մանունս. որոց տեարք և վարիչք ընդ ձեռամբ նահանգապետացն կամ նախարարաց կային, և նոքա մերթ հնազանդեալք և մերթ սակաւ ինչ հարկելով թագաւորին Այրարատայ կամ նահապետին Հայոց. և նա երբեմն ազատ և ինքնիշխան միապետ, և երբեմն 'ի հարկի կալով հզօր և տիեզերակալ թագաւորացն Ասիոյ՝ Ասորեստանեայց, Մարաց և Պարսից, զամ մի և Յունաց: Յետ բառնալոյ հարստութեան Արշակունեաց (յամին 428), բարձաւ խափան միահեծան տէրութիւն Հայոց, և եկամուտ ազգք՝ Պարսք, Յոյնք, Արաբացիք, Թուրքք և Թաթարք կալան զմեծ մասն աշխարհին և ըստ իւրեանց օրինաց վարէին. բայց մինչև ցԺԱ և ԺԲ դարս տակաւին տիրէին և իշխանք Հայոց՝ գաւառաց գաւառաց. մանաւանդ 'ի Ժ և 'ի ԺԱ դարս, յորս Բագրատունիք, Արծրունիք և Սիւնիք զմեծ կէս աշխարհիս վարէին հայրենի օրինօք. յետ այնորիկ 'ի Սիւնիս և 'ի Խաչէն (որ է Արցախ) միայն մնացին պայազատք Հայկազանց՝ որք և մինչև 'ի մեր դար որդի 'ի հօրէ ժառանգութեամբ հռոմայեցին փոքունց վիճակաց և գիւղից, Մելիք կոչելով պատուոյ անուամբ, յորոց գտանին ցարդ առկայք ոմանք: Յետ արշաւանաց Սելճուկեանց և Թաթարաց 'ի ԺԱ-ԺԳ դարս, գրեթէ խափան ընդ լծով օտարաց եկաց և կայ աշխարհս. մասն մի Պարսից՝ 'ի վաղուց հետէ, և մասն մի Օսմանեանց Թուրքաց՝ որք յաջորդեցին Սելճուկեանց և Թաթարաց, և միւս մասն այժմ Ռուսաց, որք նախ զհիւսիսակողմն աշխարհիս կալան ժառանգելով զթագաւորութիւնն Վրաց, և ապա յայսմ դարու հանին 'ի Պարսից զԱրցախ և զՈւտի, զՍիւնիս, զՓայտակարան և զմասն Այրարատայ. և յՕսմանեանց զայլ մասն Այրարատայ և զՏայոց. որով Պարսից մնան այժմ Պարսկահայք և մասն Վասպուրականի և Ատրպատականն Հայոց. իսկ Օսմանեանք ունին զարևմտեան և զմեծ մասն աշխարհին, զմասն Տայոց, զԲարձր և զՓ Հայս, զԱղձնիս, զՏարօն, զԿորդուս, զՄոկս զմասն Այրարատայ և զմեծ մասն Վասպուրականի: — Եւ այսպէս զատանին սահմանք երեցուն ինքնակալ պետութեանցն 'ի Հայս. 'ի հիւսիսոյ արևմտից յԵզերաց մինչև ցԱրփա-կէօլ (18)՝ ընդ մէջ Տայոց և Այրարատայ բաժանի Հայաստան ընդ Ռուսս և ընդ Օսմանեանս. Արփաչայ ձևէ զսահմանն ցխառնուրդ իւր յԵրասխ, թողլով զաջակողմն կամ զարևմտեանն յՕսմանեանս, զարևելս 'ի Ռուսք. 'ի խառնրդոց Երասխայ իջանէ սահմանն ընդ հարաւ և գառնայ յարևելս առ Սինէկոտաղ լերամբ (8) և առ Մասեօք. որ անջրպետք որձանանան երեցուն պետութեանցն. ըստ ելից հիւսիսոյ Այրարատայ Երասխ գետ իջեալ ձևէ զամենայն սահմանն Ռուսաց և Պարսից մինչև ցխառնուրդ իւր 'ի Կուր, զհարաւակողմն թողլով սոցա յետնոցս. իսկ ըստ հարաւոյ Այրարատայ իջանէ գիծ անջրպետութեան բաժնից Օսմանեանց և Պարսից, ընդ մէջ Պայէզիտոյ և Մակուայ, և ընդ մէջ երկուց ծովուցն Վանայ և Ուրմիոյ, ցՐէվանտըզ գաւառ Քրդաց և ցՋակրոս լերինս, ուր սպառին Հայք. ամենայն արևմտակողմն՝ Օսմանեանց գոլով վիճակ, և արևելքն Պարսից: Այսոքիկ այսպէս սահմանեցան և հաստատեցան յամին 1828 և 1829 յետ պատերազմաց Ռուսաց ընդ Օսմանեանս և ընդ Պարսս, և դաշնադրութեանցն յԱդրիանուպօլիս և 'ի Թիւրքմէնչայ (110). և թէպէտ յայժմեան ժամանակիս 'ի վերստին գրգռել մարտի ընդ Ռուսս և Օսմանեանս՝ մնացին յիրերաց սահմանս, այլ զի չև է իրացն հաստատութիւն առեալ, մեք ըստ առաջնոցն եդելոց բաժանմանց՝ յերիս զատուցանեմք զՀայաստան, յՕսմանեան կամ Թուրքահայք, 'ի Պարսկաստան՝ կամ Պարսկահայք, և 'ի Ռուսական կամ Ռուսահայք:

Այլ մինչև մտեալ 'ի նկարագիր նոցուն՝ կարգեսցուք զնախնեացն բաժանմունս գաւառաց, պատշաճեցուցանելով նոցին զայժմեան վիճակն, որքան և կարեմք:

## ՅԵ. Համեմատութիւն հին եւ նոր գաւառաց Հայոց Մեծաց

| | ԱՇԽԱՐՀՔ. | ՀԻՆ ԳԱՒԱՌՔ | ՆՈՐ ՎԻՃԱԿՔ |
|---|---|---|---|
| 1 | ԲԱՐՁՐ ՀԱՅՔ | Ա. Դարանաղի | Կամախ. Ցուժիկ |
| 2 | | Բ. Արիւծ | Կէրճանիս. Շէռեան |
| 3 | | Գ. Մնձուր (Մզուր) | Գուրուչայ. Մունձուր |
| 4 | | Դ. Եկեղեաց | Երզնկա |
| 5 | | Ե. Մանանաղի | Շուշար. Թէքման |
| 6 | | Զ. Դերջան | Դերջան |
| 7 | | Է. Սպեր | Իսփիր |
| 8 | | Ը. Շաղգոմք | Թորթում |
| 9 | | Թ. Կարին | Էրզրում. Օվաճըկ |
| 10 | ՉՈՐՐՈՐԴ ՀԱՅՔ | Ա. Խորձեան | Կեղի. Առինճ |
| 11 | | Բ. Հաշտեանք | Ճապաղջուր. Խուլփ |
| 12 | | Գ. Պաղնատուն | Արղանա ........ |
| 13 | | Դ. Բալահովիտ | Բալու. Սաղման |
| 14 | | Ե. Ծոփք (Շահունեաց) | Չմշկածագ. Բերդեկ. Կապան, եւ. |
| 15 | | Զ. Հանձիթ | Խարբերդ |
| 16 | | Է. Գորէք | Թէրկէլի |
| 17 | | Ը. Դեգիք | Անլ. Հէնի |
| 18 | ԱՂՁՆԻՔ | Ա. Արզն | Խարզան |
| 19 | | Բ. Նփրկերտ | Միաֆարղին |
| 20 | | Գ. Քեղ | Խարզան. Խզու |
| 21 | | Դ. Կեթիկ | Տիարպէքիր? |
| 22 | | Ե. Տատիկ | Դատուան? |
| 23 | | Զ. Աղնուաձոր | Սուսան? |
| 24 | | Է. Խերհեթք (Սերխեթք) | Սղերտ |
| 25 | | Ը. Գզեղ | Խիզան |
| 26 | | Թ. Սալնաձոր | Բաղէշ |
| 27 | | Ժ. Սասունք | Սասուն |
| 28 | ՏՈՒՐՈՒԲԵՐԱՆ | Ա. Խոյթ | Խութ |
| 29 | | Բ. Ասպականք | Մերձ'ի Խուլփ և Կինճ |
| 30 | | Գ. Տարօն | Մուշ. Չուխուր |
| 31 | | Դ. Աշմունիք | Խուլփ. Վարգոյ |
| 32 | | Ե. Մարդաղի | Թէքման. Վարգոյ |
| 33 | | Զ. Դասնաւորք | Գարա-Եազը |
| 34 | | Է. Տուարածատափ | Կէօքսու. Գարաեազը |
| 35 | | Ը. Դալառ | Թօրլու |
| 36 | | Թ. Հարք | Խամուր. Խնուս |
| 37 | | Ժ. Վարաժնունիք | Խամուր. Լիզ. Գուլանըգ |
| 38 | | ԺԱ. Բզնունիք | Խլաթ. Արծկէ |
| 39 | | ԺԲ. Երեւարք | Կիւզէլ-տէրէ |
| 40 | | ԺԳ. Աղիովիտ | Բաղնոց. Սարըսու |
| 41 | | ԺԴ. Ապահունիք | Մէլազկերտ |
| 42 | | ԺԵ. Կորի | Լիզ? |
| 43 | | ԺԶ. Խորխոռունիք | Գուլանըգ |
| 44 | ՄՈԿՔ | Ա. Իշայր | Ջըրըգան. Սպարկերտ Կարկառ (44–46) |
| 45 | | Բ. Իշայր Միւս | |
| 46 | | Գ. Իշոց գաւառ | |
| 47 | | Դ. Առուենից Ձոր | Առուենից Ձոր |
| 48 | | Ե. Միջա | |
| 49 | | Զ. Մոկք Առանձնակք | Մոկս |
| 50 | | Է. Արքայից գաւառ | Մէջ Մոկաց և Շատախայ (50–51) |
| 51 | | Ը. Արգաստովիտ | |
| 52 | | Թ. Ջերմաձոր | Շատախ |
| 53 | ԿՈՐՃԱՅՔ | Ա. Կորդուք | |
| 54 | | Բ. Կորդիք Վերին } Կորդիք | Գօհգան (54–56) |
| 55 | | Գ. —— Միջին | |
| 56 | | Դ. —— Ներքին | |
| 57 | | Ե. Այտուանք | |
| 58 | | Զ. Այգառք | |
| 59 | | Է. Մոթողանք | |
| 60 | | Ը. Որսիրանք | |
| 61 | | Թ. Կարատպունիք | |
| 62 | | Ժ. Ճահուկ | |
| 63 | | ԺԱ. Փոքր Աղբակ | Ալ-Պաղ. Ճուլամերկ |
| 64 | ՊԱՐՍԿԱՀԱՅՔ | Ա. Այլի կամ Կուռիճան | |
| 65 | | Բ. Մարի | |
| 66 | | Գ. Թրափի | |
| 67 | | Դ. Ացուերս | |
| 68 | | Ե. Ըռնա | |
| 69 | | Զ. Տամբերս | |
| 70 | | Է. Զարեհաւան | |
| 71 | | Ը. Զարաւանդ | Սալամաստ |
| 72 | | Թ. Հեր | Խոյ |
| 73 | ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆ | Ա. Ռշտունիք | Ոստան, Գաւաշ |
| 74 | | Բ. Տոսբ | Վան |
| 75 | | Գ. Բուզունիք | Համուկ |
| 76 | | Դ. Արճիշակովիտ | Արճէշ |
| 77 | | Ե. Աղովիտ | Բաղնոց |
| 78 | | Զ. Կուղանովիտ | Հայտէրանլը Քուրդք |
| 79 | | Է. Առբերանի | Բերկրի |
| 80 | | Ը. Դառնի | Հարաւակողմն Պայէզիտու |
| 81 | | Թ. Բուժունիք | Խօշապ? |
| 82 | | Ժ. Առնոյ-Ոտն | Մտ. Սէկմանապատ |
| 83 | | ԺԱ. Անձեւացիք | Ոստան. Քարպահ |
| 84 | | ԺԲ. Ատրպատունիք | Մէջ Խօշապայ և Սէկմանապատայ |
| 85 | | ԺԳ. Երուանդունիք կամ Երիթունիք | Հայոց Ձոր |
| 86 | | ԺԴ. Մարդաստան | Սէկմանապատ |
| 87 | | ԺԵ. Արտազ | Մակու |
| 88 | | ԺԶ. Ակէ | Մակու |
| 89 | | ԺԷ. Աղբակ Մեծ | Սէր-Ալպաղ. Գարագօյունլու |
| 90 | | ԺԸ. Անձախաձոր | Քոդուր |
| 91 | | ԺԹ. Թոռնաւան | Չորս |
| 92 | | Ի. Ճուաշռոտ | Գարագօյունլու առ Աքչայիւ |
| 93 | | ԻԱ. Կրճունիք | Մէջ Չորսայ և Խոյի |
| 94 | | ԻԲ. Մեծնունիք | |
| 95 | | ԻԳ. Պալունիք | |
| 96 | | ԻԴ. Գուկան | |
| 97 | | ԻԵ. Աղուանդռոտ | |
| 98 | | ԻԶ. Պատսպարունիք | |
| 99 | | ԻԷ. Արտաշէսեան | |
| 100 | | ԻԸ. Արտաւանեան | |
| 101 | | ԻԹ. Բաքան | |

## Համեմատութիւն հին եւ նոր գաւառաց Հայոց Մեծաց

| | ԱՇԽԱՐՀՔ | ՀԻՆ ԳԱՒԱՌՔ | ՆՈՐ ՎԻՃԱԿՔ |
|---|---|---|---|
| 102 | ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆ | Լ. Գաբիթեան | |
| 103 | | ԼԱ. Գազրիկան | |
| 104 | | ԼԲ. Տանկրիայն | |
| 105 | | ԼԳ. Վարաժնունիք (Թուփ Վրնջունիք) | Մա, Նախիջեւանայ |
| 106 | | ԼԴ. Գողթն | Ագուլիս |
| 107 | | ԼԵ. Նախճաւան | Նախիջեւան |
| 108 | | ԼԶ. Մարանդ | Մարանտ |
| 109 | ՍԻՒՆԻՔ | Ա. Երնջակ | Ալընճա |
| 110 | | Բ. Ճահուկ | Նախիջեւան. Ջահուկ |
| 111 | | Գ. Վայոց Ձոր | Վէտի. Տարալաղըզ |
| 112 | | Դ. Գեղաքունի | Գաւառ. Կեօք-չայ |
| 113 | | Ե. Սոտք | Սոդք. Ծար |
| 114 | | Զ. Աղահէճք | Զանկեզուր |
| 115 | | Է. Ծղուկ | Պարկուշատ. Մեղրի |
| 116 | | Ը. Հաբանդ | Զանկեզուր |
| 117 | | Թ. Բաղք | Պարկուշատ. Տաթև |
| 118 | | Ժ. Ձորք | Ղափան |
| 119 | | ԺԱ. Արեւիք | Մեղրի |
| 120 | | ԺԲ. Կուսական (Կովսական) | Ուրտապատ. Կէնտուզ: |
| 121 | ԱՐՑԱԽ | Ա. Հաբանդ Միւս | Չլաբերդ. Շուշի |
| 122 | | Բ. Վայկունիք | Չլաբերդ |
| 123 | | Գ. Բերդաձոր (Բերձոր) | Շամշատիլ. Այրում |
| 124 | | Դ. Մեծկուանք | Չլաբերդ. Խաչէնք |
| 125 | | Ե. Մեծիրանք | Կիւլիստան. Խաչէնք |
| 126 | | Զ. Հարճլանք | Վառանդին ? |
| 127 | | Է. Մուխանք | Մուղան ? |
| 128 | | Ը. Պիանք | Վառանդին ? |
| 129 | | Թ. Պանծկանք | Վառանդին ? |
| 130 | | Ժ. Սիսական Ոստան | Խաչէն, Ջէյվա |
| 131 | | ԺԱ. Քուստի Փառնէս | Շամքոր ? Խոջխարա |
| 132 | | ԺԲ. Կողթ | Շամշատիլ. Ջակամ |
| 133 | ՓԱՅՏԱԿԱՐԱՆ | Ա. Հրաքոտ-Պերոժ | |
| 134 | | Բ. Վարդանակերտ | |
| 135 | | Գ. Եօթնփորակեան Բագինք | Պաքու |
| 136 | | Դ. Ռոտի-Բաղա | Արքեւան (Թալիշ) |
| 137 | | Ե. Բաղանռոտ | Արքեւան (Թալիշ) |
| 138 | | Զ. Առոսպիժան | Սեփիտաշ (Թալիշ) |
| 139 | | Է. Հանի | |
| 140 | | Ը. Աթշի | Պաքու |
| 141 | | Թ. Բագաւան | Պաքու |
| 142 | | Ժ. Սպանդարան-Պերոժ | |
| 143 | | ԺԱ. Որմըզդ-Պերոժ | |
| 144 | | ԺԲ. Ալեւան | |
| 145 | ՈՒՏԻ | Ա. Արանռոտ | |
| 146 | | Բ. Տռի | Քէօլէրլին |
| 147 | | Գ. Ռոտպացեան | |
| 148 | | Դ. Աղուէ | |
| 149 | | Ե. Տուչքատակ | |
| 150 | | Զ. Գարդման | Քրթմանիկ, Գարդման |
| 151 | | Է. Շիկաշէն | Գանձակ |
| 152 | | Ը. Ուտի Առանձնակ | Ճէւանշիր. Պէրաէ |
| 153 | ԳՈՒԳԱՐՔ | Ա. Ձորոփոր | Ձորոյգետ |
| 154 | | Բ. Ծոբոփոր | Պօռչալու |
| 155 | | Գ. Կողբոփոր | Խազախ. Պօռչալու. |
| 156 | | Դ. Տաշիր | Լօռի. Բամբակի |
| 157 | | Ե. Թռեղք | Թրիալէթ |
| 158 | | Զ. Կանգարք | Ապոց. Բամբակի |
| 159 | | Է. Արտահան | Արտահան |
| 160 | | Ը. Ջաւախք | Ջաւախեթի. Խերդվիս |
| 161 | | Թ. Կղարջք | Կլարճեթի. Արտանուչ |
| 162 | ՏԱՅՔ | Ա. Կող | Կեօլէ |
| 163 | | Բ. Բերդացփոր | Փէնէկ. Թաւուսկեար |
| 164 | | Գ. Պարտիզացփոր | Օլթի. Պարտէզ |
| 165 | | Դ. Ճակք | Չուխուրէթ. Իրուշէթ. Ախալցիխէ |
| 166 | | Ե. Բուխա | Շաւշէթ. Թաւուսկեար |
| 167 | | Զ. Ոքաղէ | Թորթում |
| 168 | | Է. Ազորդացփոր | Նառիման. Թորթում |
| 169 | | Ը. Առեացփոր | Բերդագրակ. Պարխար |
| 170 | ԱՅՐԱՐԱՏ | Ա. Բասեն | Բասեն. Հասանգալէ |
| 171 | | Բ. Գաբեղեանք | Վերին Բասեն |
| 172 | | Գ. Աբեղեանք | Ստորին Բասեն |
| 173 | | Դ. Հաւունիք (Վահեւունիք) | Ստորին Բասեն |
| 174 | | Ե. Արշարունիք | Չալտըրան. Կաղզուան |
| 175 | | Զ. Բագրեւանդ | Ալաշկերտ |
| 176 | | Է. Ծաղկոտն | Տիատին. Նահիէ |
| 177 | | Ը. Շիրակ | Շօրէկէլ. Կիւմրիւ |
| 178 | | Թ. Վանանդ | Ղարս |
| 179 | | Ժ. Արագածոտն | Սարտարապատ |
| 180 | | ԺԱ. Ճակատք | Տարաքէնտ. Կողբ |
| 181 | | ԺԲ. Մասեացոտն | Պայէզիտ. Սուրմառի |
| 182 | | ԺԳ. Կոգովիտ | Պայէզիտ. (Դարոյնք) |
| 183 | | ԺԴ. Աշոցք | Ապարան |
| 184 | | ԺԵ. Նիգ | Կեօք չայ. (Երեւան) |
| 185 | | ԺԶ. Կոտայք | Գըրքպուլաք. Երեւան. |
| 186 | | ԺԷ. Մազազ | Կեօք չայ. Ապարան |
| 187 | | ԺԸ. Վարաժնունիք | Տարաչիչակ |
| 188 | | ԺԹ. Ոստան Դունայ | Կարբի. Գամիպաղար |
| 189 | | Ի. Դաշտն Շարուր | Շարուր. Խոք. եւ |

# ՕՍՄԱՆԵԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ

36. Օսմանեանք զհայկականն մասն երկրի իւրեանց՝ վարեն ըստ տարազու այլոց աշխարհաց, 'ի ձեռն նահանգապետաց և գաւառապետաց, և նահանգք և գաւառք բաժանին 'ի դեհս կամ 'ի վիճակս. որոց պետքն փաշայք են նախապատիւք կամ երկրորդականք և պէկք: Ըստ այսմ յերիս կամ 'ի չորս նահանգս բաժանի Հայաստան, յԷրզրում, Խարբուրդ, Քիւրտիստան և Հէքքեարի. յորս վերագոյն է պատուով Էրզրումայ նահանգապետն, որ և քան զբազում զայլ նահանգապետս Օսմանեանց, և են ընդ վերատեսչութեամբ և սպարապետութեամբ նորա գաւառք չորք, Էրզրում, Ղարս, Մուշ և Պայէզիտ: Ի Խարբուրդ նահանգի են գաւառք երկու 'ի Մեծ Հայս, Խարբերդ և Մատէն, և այլ գաւառք 'ի Փ. Հայս. այսպէս և 'ի Քիւրտիստան նահանգի՝ համարին և գաւառք ոմանք արտաքոյ Մեծին Հայոց. իսկ 'ի սմա գրին Տիարպէքիր և Վան. և ըստ այլ տեսչութեան՝ Վան ընդ Ճէզիրէի և Մէրտինայ 'ի մի նահանգ գրի Հէքքեարի կոչելով, և Մուշ և Տիարպէքիր 'ի Քիւրտիստան: Իսկ մեք 'ի տեղագրիս լաւ համարեցաք յութ գաւառս կամ 'ի նահանգս ամփոփել զպէսպէս բաժանմունսն, յԷրզրում, Ղարս, Մուշ, Պայէզիտ, Խարբուրդ, Տիարպէքիր, Վան և Քիւրտիստան. և սկսանել յարեւելից հիւսիսոյ և գնալ յարեւմուտս, և 'ի հարաւ, և գլխաւորել յարեւելս հարաւոյ, ուր սահմանակցի ընդ Պարսկահայոց:

## Ա. ՂԱՐՍ ԳԱՒԱՌ

37. ՂԱՐՍ գաւառ նահանգին Էրզրումայ՝ 'ի հիւսիսոյ և յարեւելից սահմանի Ռուսաց Հայաստանեաւ, Սամցխեաւ և Հայկական նահանգաւն, 'ի հարաւոյ՝ Պայէզիտաւ, յարեւմտից՝ Արտահանաւ, Բասենով և այլովք վիճակօք Էրզրումայ. ունի և ինքն վիճակս վեց, զՉըլտըր, Զարիշատ կամ Ղարս, Շօրէկէլ, Զալտըրան, Կաղզուան և Կէչէվան. և է մասն Այրարատ աշխարհի հնոյ, այսինքն գաւառացն Վանանդայ, Շիրակայ, Երասխաձորոյ և Գաբեղենից:

Առաջին վիճակ է ՉԸԼՏԸՐ, յոր անուն երբեմն ճանաչիւր կուսակալութիւնն կամ գաւառն Ախալցխայ, զորոյ զկէս հատին Ռուսք, և կէս խառնեցաւ 'ի կուսակալութիւնն Էրզրումայ, և մասն մի՝ Ղարսայ, յորոց և 'ի հիւսիսակողմն կայ, սահմանակից բաժնին Ռուսաց. և 'ի սմա է մեծագոյնն լճաց հիւսիսային Հայոց՝ Չըլտըր-կէօլ որ է Գաղակացիս (18). յորմէ ելանէ գետն համանուն (որ է ըստ նախնեաց՝ Մէծ), և ընթացեալ խառնի 'ի ջուրն Ղարսայ, և առ յԱրփա-չայ (Ախուրեան): Գլխաւոր տեղիք վիճակիս են Չըլտըր աւան և Սուրամա. առաջինն երբեմն կարի շէն էր և աթոռ կուսակալի, որ ապա փոխեցաւ յԱխալցխէ, քանզի ստնակոխ եղեալ 'ի պատերազմաց անշքեցաւ Չըլտըր, և ոչ յիշատակի արդ ընդ բարգաւաճ շէնս: — Ի հարաւոյ և յարեւելից Չըլտըրայ կայ ԶԱՐԻՇԱՏ վիճակ 'ի հինն Վանանդ, 40 գիւղօրայիւք, յորս գլխաւոր է Զարիշատ առ Չըլտըր գետով. ունի բերդ հին:

38. ՂԱՐՍայ բնիկ վիճակն ձգի 'ի հարաւոյ Զարիշատայ, յարեւելից Կողայ և Փէնէքայ (48. 51) և Բասենոյ (52) և յարեւմտից Շօրէկէլի. և է ՎԱՆԱՆԴՆ հին և ՎԵՐԻՆՆ ԲԱՍԵԱՆ գաւառ Այրարատայ. որոյ գլխաւոր տեղի է հին ՔԱՂԱՔՆ ԿԱՐՈՒՑ կամ ԿԱՐՍ, որ կոչի այժմ ՂԱՐՍ կամ ԳԱՐՍ, և է 'ի հիւսիսակողմն դաշտին Շիրակայ, առ եզերբ գետոյն համանուան՝ որ է Մօրն մեծ, 'ի 5200' բարձու. պայծառացեալ առ պայազատութեամբ Բագրատունի Թագաւորաց Հայոց և Վրաց, յորոց 'ի յետնոցս Կարիս-քալաքի կոչիւր, այսինքն Դրան քաղաք. արքայանիստ եղև ինքնագլուխ Թագաւորաց Հայոց՝ յամէն 961 ցամն 1064, որք կոչէին Թագաւորք Վանանդայ կամ Կարուց. որոց յետին Գագիկ երկուցեալ յասպատակէ Թուրքաց՝ վաճառեաց Հոռոմոց զքաղաքն և չոգաւ պանդխտել 'ի Փ. Ասիա. իսկ 'ի Յունաց թափեցին մի ըստ միոջէ Վիրք, Թաթարք, Լէնկթիմուր, Օսմանեանք, Ռուսք, և դարձեալ մնաց 'ի ձեռս Օսմանեանց յետ 1828 ամին. որոց և տեղի է ամրութեան ընդդէմ Ռուսաց, Թէպէտ և ակարացուցին սոքա զբերդն, այլ զարդիս կրկին ամրանայ 'ի գրգռել նորոց պատերազմացն: Ի հարաւոյ կուսէ քաղաքին յանջատ բլրի ամրանայ հին բերդն Կարուց՝ կրկին պարսպօք պատեալ, յորս գտանին հայ և վրացի արձանագիրք և քանդակք, և բրգունք կանգնեալք 'ի Թագաւորութեան Վրաց՝ 'ի Հայ բնակչաց քաղաքին, ՈԼԳ (1184) և ՈՁԳ (1234) Թուականօք: Ունի և միջնաբերդ, և կամուրջս քարաշէնս, յորոց մին զբերդն ընդ քաղաքին կցէ: Նշանաւոր յամենայն շինուածս է փոխեալն 'ի մզկիթ՝ հոյակապ եկեղեցին շինեալ յԱբասայ արքայէ յամին 942, բոլորշի բազմանկիւն արտաքուստ և խաչաձև 'ի ներքոյ, գեղեցիկ գմբեթաւ՝ որ առանց սեան ամրանայ. զգեղ զաստակերտին իւրոյ եկեղեցւոյ ցուցեալ Աբասայ առ Բեր արքայ Եգերաց՝ որ յաւակնեալ ընդդէմ Բագրատունեացն և ձերբակալն եղև, ապա զրկէր 'ի տեսանելեացն: Բնակիչք Ղարսայ են 2000 տուն, և զօրանիստք պահապանաց. շինագոյն և բազմամարդագոյն ևս էր քաղաքն յառաջ քան զառումն 'ի Ռուսաց: — Գեօղք իբրև 80 են վիճակին Ղարսայ, այլ ամայացեալք 'ի պատերազմաց, և բազում աւերակք բագրատունեան կերտ շինուածոց, որպէս 'ի Գիւմրիի գեղջ՝ մեծ և



Ղարս. — La ville de Kars.

հոյակապ եկեղեցի, որոյ գմբէթ անկեալ է, և անտի կոչումն գեղջն, և այլք. յոլովագոյն ևս յայտնագիւտ շինութեանց գտանին 'ի ՇՈՐԷԳԷԼ վիճակի, որ է ՇԻՐԱԿՆ հին, յարևելից Վանանդայ և 'ի մօտոյ Ախուրեան գետոյ, որով զատուցանի 'ի բաժնէն Ռուսաց. անուանի արգասաւորութեամբն յաւուրց թոռանցն Հայկայ, 'ի շառաւիղէն Շարայէ առեալ զիւր անուն. զոր պահէ ցարդ գլխաւոր աւանն վիճակիս Գօլ-Շօրէկէլ աւան հուպ յԱխուրեան, որ 'ի հնումն կոչէր ՇԻՐԱԿԱՒԱՆ և ԵՐԱԶԳԱՒՈՐՍ, ուր նախ նստան Բագրատունի թագաւորք, և կիսակործան կայ 'ի նմա տաճարն ճարտարագործ զոր կանգնեաց Սմբատ Ա յամին 897: Այլ վեհագոյն ամենայն ձեռագործ յիշատակարանաց վիճակիս և յոգունց գաւառաց է

39. ԱՆԻ յետին գահ և պատուար Այրարատեան աշխարհի, գեղեցկագոյնն ծանուցեալ և սրբազնագոյն քաղաքաց նորա, սիրելին սխրալին և տխրալին շինավայր Հայոց, և թերևս կենդանայուշն և տրտմառուշ ամենայն աւերակաց. որոց 'ի հնգից դարուց հետէ համբաւեալ ընդ ամենայն Հայս, և իբր 'ի քառասուն ամաց յԵւրոպէ իսկ շարժեալ ոչ փոքր զարմանս, 'ի բազմաց հետաքննին արանց մերազնէից և օտարաց քննեալ և ստորագրեալ, թէպէտ և ոչ ըստ իւրումն արժանոյ բաւական զննեալ, և բացեալ դերբկացն 'ի գիւտ հետոց յառաջին և նշխարեալ մնացուածոց.

բայց զի յամաց հետէ և մերայոցս ընձեռեցաւ նկարագիր անընչալւոյն նոցա 'ի վաղուց (1), ոչ զամենայն մանրամասն կամիմք աստանօր ստորագրել և արձանագրել, և ոչ գործեալ հարկանցի անցանել, մանաւանդ զոչ ցարդ հրատարակեալ չափս տեղւոյն և զանասարանս նորին: Արդ կառուցեալ կայ Անի 20 մղոնաւ հեռի յարևելից Ղարսայ, յաջմէ Ախուրեան գետոյ, 'ի քարուտ բարձրաւանդակի, վերացելոյ 4380 ոտս յերևսաց ծովու, յեռանկիւնաձև իմն թերակղզւոյն զոր գործեն՝ յարևելից կուսէ քարաժայռք խորացեալք ձորաձև, զորով փարի գետն իջեալ 'ի հիւսիսոյ վիճակին, և 'ի հարաւոյ խորաձորն ընդ որ խաղայ Ախուրեանն 'ի խորս 2-300 ոտից, արևմտանկեան գործելով յարևմուտս կոյս, և յայսմ կողմանէ պատի (յարևմտից) լայնագոյն ևս ցամաք Ձոր Ծաղկոցաց որ է Ծաղկոցաձոր, և ընդ հիւսիս կոյս խոտորեալ հարթանայ խառնի ընդ դաշտագետնին, և անդ գլխաւորի անձուկ հիւսիսակողմն եռանկեան քաղաքին. և զի չէր յայնմ կողմանէ ձոր կամ գետ, կրկին հզօր

(1) Պատմութիւն Անւոյ, տպագրեալ 'ի Ս. Ղազար. — Բազմավէպ Օրագիր, հատ. Դ. 324. Ե. 5. — Հայաստան Լրագիր, թիւ 44. յորում ստորագրին և շրջավայրք Անւոյ, 'ի թիւսն 127-179, և այլն:



Անի. — Ani.

պարսպօք պատեալ և ամրացեալ է այն. և է չափ ներքին շրջապատի եռանկեանն իբր փարսախու միով (կամ 4100 չափ գաղղիական). երկայնութիւն քաղաքին որ ըստ արևմտից հարաւոյ՝ մղոնաւ չափ է կամ քառորդաւ ժամու ճանապարհի, լայնութիւնն կէսով չափ և նուազագոյն ևս. որով յայտնի լինի անձուկ գոլ տեղւոյն և անբաւական համբաւելոցն 'ի կարգի առակաց 1001 եկեղեցեաց և տասն բիւր աղարանից. բայց եթէ ներքին քաղաք զնա համարելով և 'ի հիւսիսոյ կողմանէ մասն գրելով նմին և 'ի մէջ փակելով զհամանուն քաղաքին զգետղն Անի որ մղոնաւ 'ի վերոյ կայ, և զայլ սահմանս: Ոչ է յայտ ժամանակ առաջնոյ շինութեան քաղաքիս և անուանն հոմանձայնի Կամախայ Բարձր Հայոց (61), բայց թուի բերդ լինել անդստին 'ի Դ դարէ, յորում Տրդատ արքայ պարգևեաց զՇիրակ տանն Կամսարայ. և 'ի Կամսարականաց պայազատեցին Բագրատունիք յԸ դարու. յորոց նախ Աշոտ Մսակեր իշխան յամին 783 ամրացոյց զտեղիս, և յետ երկերիւր ամի Աշոտ Գ արքայ՝ թագաւորանիստ արար խւրոյ տոհմին հարըստութեան, և ած զներքին պարիսպ քաղաքին յամին 964, և բրգամբք և եկեղեցեօք զարդարէր. բայց որդի նորա Սմբատ Տիեզերակալ յետ հնգետասան ամաց (յ'980)՝ անդրագոյն ևս պարսպով ընդարձակեաց և կրկին պարսպափակ արար զհայրենի շինածն. խմա ըստ հիւսիսոյ անկեանն՝ յարևելից կուսէ ցբերան Ծաղկոցաձորոյն, ուր և ցարդ երևին հզօրագոյն և շինագոյն պարիսպք իբր 30′ տարակացք յիրերաց, 20–30′ բարձունք. ներքինն հզօրագոյն և բարձրագոյն է, և յոլովագոյն քան զարտաքինն ունի զաշտարակսն. որք իբր 150′ հեռիք են յիրերաց, չաոք բոլորշիք և ոչ սակաւ քառակուսիք և անկիւնաւորք, ոմանք յաղքայիցն մերոց շինեալք, և յոլովք 'ի բնակչաց քաղաքին յաւուրս աշխարհակալութեան Զաքարիայի սպասալարի և թագաւորացն Վրաց. ոմանք միայարկք և ոմանք կրկին կամ եռայարկք, համակ քարաշէն և կամարակապ, 'ի թխակերպ և յայլագոյն լաւաքարանց. յորոց վերայ ոչ սակաւ արձանագիրք և բազմագոյն ևս խաչարձանք և դրուագք զարդուց գոն: Երկու դրունք երևին արտաքին պարսպացն և հինգ ներքնոյն. մի յարևելից, միւս յարևմտից՝ որ է Ծաղկոցա-դուռն, և երեք 'ի հիւսիսոյ, որոց միջինն է Ասագ-դուռնն, յորոյ վերայ 'ի կողմանէ արտաքուստ քանդակեալ կայ առիւծ կամ ինձ 'ի գնացս. ընդ որ մտեալ 'ի ներքս՝ ահա յանդիման տարածի տխրախառն տեսարան կիսակործան և կիսականգուն քաղաքին, խառնխուռն դերբուկք, հողաբլուրք ցածք, խոտաւետինք, և իբրև 20 շինածք առաւել կամ նուազ կանգունք, յորս գլխաւոր եկեղեցիքն են: — Ի հարաւային արևմտեան կողմն եռանկեանն ընդ մէջ ձորոյն Ծաղկոցաց և Ախուրեան գետոյ՝ կան աւերակք արքունի Ապարանից 'ի բարձու քարափան, դիտակ և ահաւորահայեաց դրիւք և հզօր և թանձր պարսպօք, իբր 5 վայրկենիւ շրջապատու.

Թեամբ. 'ի յատակէ ձորոյն 'ի վերայ քարաժեռից ամբառնան հիւսիսային և արեւմտեան որմունք նորա, յորոց առաջինն ևեթ կանգուն կայ, իսկ հարաւայինն խախտ անկեալ է. 'ի վերայ հիւսիսային պարսպացն կայ քանդակ պատկերք զինուորակերպ առն՝ որոյ գլուխ 'ի բաց պռեալ է, և Թուի 'ի ձեռին ունել զձև քաղաքին զպատակերակ իւրոյ. իսկ դուռն ապարանիցն յարևելից է սառակինեան ոճով՝ 'ի սևա և 'ի գեղին քարանց և պատուհան մեծ 'ի վերայ նորա, խուռն և խիտ դրուագօք զարդուց և խաչարձանօք, վայելուչ յոյժ. կայ և ներքնատուն ապարանից մեծագործ և ահեղ, և բովանդակ իսկ քաղաքին կարծի լինել ներքնափոր, իբրու կրկնայարկ, ամարայնոյ և ձմերայնոյ զատուցեալ որիշ, որպէս աւանդեն. երևի ցարդ և զարմանաշէն գետնուղին որ հանդոյն Դամիզայն Լոնտոնի՝ անցանէ ընդ Ախուրեան գետով, 'ի հարաւոյ կուսէ քաղաքին զմուտն ունելով, և զելսն իբր երկուց ժամուց ճանապարհաւ բացագոյն 'ի կողմանս Թալինոյ (129), որ արդ կիսով խցեալ է և Կէփէրհէմէզ կոչի 'ի ռամկաց: Ի հարաւոյ արքունեացն 'ի քարափան գետոյն կայ աւերակ միջնաբերդին, որոյ հիմունք պարսպացն և եկեղեցւոյ միոյ ևեթ կանգուն կան, և նշմարին հետք որ տանին 'ի մեծամեծ բրգունս յարևմտեան հարաւային ծայր քաղաքին: Իսկ 'ի հիւսիսոյ կողմանէ արքունեացն 'ի զառիվայր երեսս Ծաղկաց ձորոյն 'ի խճախառն քարին հատեալ են անթիւ սենեակք կամ կրպակք, զոր ոմանք գերեզմանս և այլք բնակարանս կարծեցին. երևին 'ի նոսա և խորշք կամ դարանք, և դրունք մտից յերար:



Կաթուղիկէն Անւոյ. — Cathédrale d'Ani.

Ի բազմաթիւ եկեղեցեաց և մատրանց քաղաքին՝ յորոց 40իւ չափ երևէին և 'ի սկզբան դարուս, արդ հազիւ 18 նշմարին, և 'ի նոցանէ կիսով չափ միայն կանգունք. որոց առաջին է մեծութեամբ և շքով կաթուղիկէն Անւոյ յարևելեան հարաւ կոյս, հիմնարկեալ 'ի Սմբատայ Բ, և աւարտեալ 'ի Կատրամիդեայ դշխոյէ յամին 1008-9, երկայն քառակուսի ձևով, 110' ընդ երկայնն արտաքուստ, և 72' ընդ լայնն, համակ 'ի սրբատաշ Թուխ և գեղին քարանց ագուցելոց յիրար միապաղաղ երևութիւ. ունելով շուրջանակի հինգ աստիճանս ոտնաչափ լայնութեամբ. զներքին ձև և զգեղեցիկ չափակցութիւն մասանցն՝ զմի 'ի գեղեցկագոյն շինուածոց հայկական ճարտարապետութեան, զգործ քաջի արուեստաւորին Տրդատայ, ցուցցէ յատակագիծն. յորում որպէս երևին՝ սիւնք չորք ստուարք և բարձունք խաչաձև խարսխօք և բազմանկիւն կողմամբք՝ զանազան հատորովք գունագոյն քարանց՝ ամբառնան զմեծամեծ կամարսն, որոց Թիկք ձգին և յայլ վեց որմասիւնս, և այլ կամարք 'ի վերայ նոցա՝ կրելով զգմբէթն հրաշակառոյց 92' բարձր 'ի գետնոյ, և 28' տրամագծաւ բոլորակին՝ յորմէ կախիւր ջահն բիւրեղեայ բերեալ 'ի Հնդկաց աշխարհէ, և 'ի վերայ գմբէթին մարգա֊



Ցատակագիծ կաթուղ. Անւոյ. — Plan de la Cathédrale.

ղուանն բաւանայ զմանեկաձև բոլորեալ գմբէթն որածայր, 12 շուրջ պատուհանօք, յորոց միջոցս երևին նկարէն պատկերք աղաւաղեալք. 40' են տրամագծի տաճարիս, և ամբիոն մի քարեայ 'ի վերայ հարաւային դրանն սանդխովք յորմամիջին ելանելի անդր, և անտի 'ի վեր ցառաստաղն: Ապլղարիպ հօրեղբայր Գրիգորի Մագիստրոսի շինող է տաճարիս յամին 1037: — Նման սմին՝ այլ փոքրկագոյն եկեղեցի ութանկիւնի կայ և յաբևմտակողմն քաղաքին մերձ 'ի միջնաբերդն իբր 28' տրամագծաւ, և 14 պատուհանօք գմբէթին, պարզ 'ի ներքուստ, ամենազարդ արտաքուստ: — Կայ և այլ եկեղեցի 12-անկիւնի արտաքուստ և վեցաբոլորակ 'ի ներքուստ 38' տրամագծաւ, յաբևմտակողմն առ պարսպօք քաղաքին որ հայի 'ի Ձորն Ծաղկոցաց: — Առ քարափամբ նորին ձորոյ 'ի հիւսիսոյ արքունեացն կայ վայելչաձև և անաղարտ մնացեալ եկեղեցին Ս. Գրիգոր 'ի բարձրադիտակ վայրի, շինեալ յամին 995 'ի Գրիգորէ որդւոյ Ապուղամրի, կամօք Գագկայ Ա: — Ցարևելից նորին ընդ մէջ անձկագոյն մասին քաղաքին և կրկին ձորոցն Ախուրեան և Ծաղկոցաց՝ կան սփռեալ նշխարք երկուց կործանեալ մատրանց. — հուպ և կից նոցին՝ Առաքելոց եկեղեցին. սաքաշէն է սա ձեղուամբ և ոչ գմբէթաւոր, և խորան նորա ոչ բոլորակ

չափ խաչ արծաթեայ՝ պահապան քաղաքին. իբրև 'ի 20 ամաց հետէ կործանեալ է գմբէթս. այլ ամենայն մասունք եկեղեցւոյն կանգուն կան, վայելչագեղ կիսաբոլոր և տասնախորշ խորանաւն, և կրկնայարկ մատրամբք կամ աւանդատամբք յաջմէ և յահեկէ, և երիւք դրամբք. 'ի վերայ հարաւայնոյն կայ արձանագիր յիշատակի գշխոյին կառուցողի և Սարգսի կաթուղիկոսի, և յերի՝ ժամացոյց արևանիշ հայկական տառիւք ժամատրոշեալ. և այլ բազում արձանագրութիւնք, զորս ծանր համարիմք աստ յիշատակել:

Ցարևելից կուսէ կաթուղիկէիս իբրև 500' հեռի կայ աւերակ եկեղեցի Տիրամօր կամ Թերևս սրբոյն Հռիփսիմեայ, զոր մերձ 'ի կաթուղիկէն ասեն լինել պատմիչք. յեղից հարաւոյ սոցա կանգուն կայ հոյակապ բոլորշի եկեղեցի Փրկչին, որ 'ի ներքուստ կողմանէ յութ կիսաբոլորս տրոհեալ է, սիւն 'ի մէջ բաժանմանցն ունելով, յորոց վերոյ ամփոփեալ ձե-

զատուցեալ 'ի բարձու, այլ 'ի յատակի, խուան և խիտ քանդակօք 'ի ներքոյ և արտաքոյ, շինեալ ոչ յետ 1033 թուականի: Վայելչագունի ևս եկեղեցւոյ սակաւ նշխարք Ճարտարապործք մերձ կան յԱռաքելոյն: — Ցելից հարաւոյ սոցա մերձագոյն 'ի քարափին գետոյն կայ Լուսաւորչի մենաստանն աւերեալ, և եկեղեցին կանգուն և նորափայլ քան զայլսն, զի և յետ յիշելոցդ շինեալ է յամին 1215, երկայնաձև խաչաձև իսկ և գմբէթաւոր, բազմապատիկ դրուագօք և միւսիոն զարդուք և պատկերօք, վասն որոյ և Նոր-Գեղեցիկն կոչի, և թուի 'ի Յունաց նկարագործեալ, քանզի և յունական արձանագիրք և վրացիք գտանին 'ի նմա. բայց յառաջ շինեալ էր անդ այլ եկեղեցի Մորուան Աստուածածին կոչեցեալ՝ ըստ արձանագրին: Ընդ եկեղեցեաւս այսուիկ է գուան միոյ գետագնաց ուղւոյն՝ զոր յիշեցաք 'ի վերոյ: Իսկ յարևելից կուսէ ձգի սալայատակ և կամարակապ Ճա-



Կողմ կաթողիկէ . Անւոյ . — Face latérale de la Cathedrale (Ani).

նապարհ առաջնամանաւոր ընդ զառ 'ի վայր երկիր ցը-
գետափինն, և 'ի սպառուած նորին կայ եկեղեցի փոքր
կրկին մատրամբք, անապատ և անշուք, և ըստ ա-
ւանդութեան՝ շինեալ վասն դշխոյի ուրումն, որոյ և
բնակարանին փլածք երևին առ եր̄ի: — Ի հիւսիսա-
կողմն քաղաքին ընդ մէջ աւագ դրանն և 12անկիւնի
եկեղեցւոյն կայ այլ եկեղեցի (Խաչի?) քառակուսի
խաչաձև արտաքուստ և բոլորշի Թևօք խաչաձև քա-
ռակուսի 'ի ներքուստ, անսիւն գմբեթաւորեալ, ու-
նելով սիւնազարդ անդաստակ յարևմտից, այլ Թէ որ-
քան լցէ չէն՝ ոչ ունիմ ասել: — Մերձ 'ի հիւսի-
սային անձկագոյն ծայր քաղաքին 'ի քարափին Ծաղ-
կոցաձորոյն կայ մատուռն փորեալ 'ի վիմի, որպէս
և հանդէպ նմին յարևելակողմն այլոյ մատրան մնա-
ցուածք երևին:

Յետ եկեղեցեաց նշանաւոր շէնք յԱնի են Մըզ-
կիթն մերձ յԱռաքելոց եկեղեցին, շինուած երկայ-
նաձև քառակուսի յերկս տրոհեալ երկկարգ սեամբք,
ունելով կամարակապ ներքնատունս և աշտարակ
ուԹանկիւնի, Թուի յայլ ինչ պէտս շինեալ տեղւոյն
յառաջագոյն. յարևմտեան որմն նորին կայ արձա-
նագիր պարսիկ լեզուաւ, հրաման Էպուսէիտ Պէհա-
տուր Խանի (որ Թուի գրեալ յամին 1319) և պա-
տուիրէ մաքսաւորաց չնեղել զԱնեցիս: — Յելից նո-
րա և 'ի հիւսիսոյ կաԹուղիկէին իբրև 'ի միջավայր
քաղաքին ամբառնայ այլ աշտարակ ուԹանկիւնի մնի-
րայաձև՝ կործանեալ գագաԹամբ, որոյ 84 քարեղէն
աստիճանք են ցպատշգամն, իբրև գիտանոց կանգ-
նեալ: — Բաղանիքն յարևելեան հարաւային անկեան
քաղաքին, 'ի հարաւոյ եկեղեցւոյ Փրկչին, զորով կու-
տեալ են դերբուկք աւերակաց. երկայնաձև քառա-
կուսի է շինուածն իբրև 58' ընդ երկայնն և 44' ընդ
լայն. և մի կողմն ընդ լայնն յերկուս անձուկ քա-
ռակուսի սրահակս բաժանեալ է, միւս ընդարձա-



Ս · Լուսաւորիչ Անւոյ · — Eglise du S.t Illuminateur (Ani).

կողոյն կողմն 'ի հինգ բոլորակս , չորք յանկիւնսն · և մին 'ի միջի մեծագոյն և գմբեթաւոր , ունելով դրունս 'ի սա գրուեն մտից · Մնան ցարդ ծորանք աւազանաց լուալեացն : — Բաց յայսցանէ չերևի այլ շինուած նշանաւոր , բայց միայն կամրջախելք 'ի հարաւային արևմտեան ծայր քաղաքին 'ի վերայ գետոյն Ախուրեան , և կամարակապ լայն անդունդք առ գետեզերբն 'ի հարաւոյ կաթուղիկէին · իսկ այլ ամենայն շէնք զարմանալի քաղաքիս՝ 'ի 800 ամաց հետէ առ սակաւ սակաւ կործանեալ և հողոյ հաւասարեալ դնին , որպէս 'ի քուն անզարթչելի · ոչ է յայտ երբ խաղաւ անբնակ և աւերակ եղև քաղաքն յետ մատնելոյն 'ի ձեռս Յունաց յամին 1045 , և անկանելոյ 'ի բուռն Ալփասլանայ յամին 1064 , Պարսից և Վրաց 'ի բազում նուագս , և յետոյ Թաթարաց յամին 1239 , յետոյ գործեալ Պարսից , առ որովք՝ աւանդի յամին 1319 'ի սաստկութենէ մեծէ անչքացեալ Անւոյ և բնակչացն խոյս տուեալ · սակայն յԱռաքելոցն եկեղեցւոյ գոն արձանք գրեալք յամսն 1320 և 1348 (ՉԿԹ · ՉՂԷ) , յորոց յայտ լինի զի ցկէս ԺԴ դարու չէր լքեալ քաղաքն , Թէպէտև շատք 'ի նախնեաց Անեցոց վաղու ևս չուեալ գնացեալք էին , ոմանք յայլ կողմանս աշխարհին Հայոց և յոլովք տարագնեալք յաշխարհս արևմտից , 'ի Լեհս , 'ի Ռուսս և 'ի Ղրիմ : և ոչ այնչափ 'ի աւերաց որչափ 'ի տիրողաց բռնութենէ թուի տագնապեալ քաղաքին · և առաւել քան յերկրաւոր սասանութեանց՝ յերկնաւորին ցասմանց · որոյ հանդոյն ամբարձեալ յաղթեալ մեծապանծ մայրաքաղաքացն Անւոյ՝ աւերակս և զաղքատացեալ , այսքին նման՝ Թէպէտ և կրսեր 'յայժ սա ժամանակօք , Թաքչիլ 'ի յետնոցս զկախարձան և զվերջին արկածս սորին , յամօթ և յափշութիւն զիտնապանծ մեծաց մարդկան , և 'ի գերեզ Հայորդւոց · և այժմ հօտից հանգրուան և խառաւլար է գետնին աղքայակոխ և տրորանձևմ քաղաքին Անւոյ , զորոյ խառաքոյսն պայազատութեանց ժառանգեն մանհմատականք ամենք՝ որպէս Թուի մնացեալք 'ի կրօնից Հայոց , խաթուն աղջիք կոչեցեալք · վասն որոյ ումն 'ի Ռուսաց բանաստեղծաց որ իբր տասն ամաւ յառաջ եւ 'ի քնին աւերակացս , 'ի դէպ պատշաճեցուցանէ մտից դրանց քաղաքիս՝



Անի. — Porte principale d'Ani.

զհռչակաւոր արտաքուստ վերնագիր դժպհի դրանն՝ զոր երգեաց Տանդէ քերդողահայրն Իտալացւոց.

PER ME SI VA NELLA CITTA' DOLENTE...

ԸՆԴ ԻՍ ԵՆ ՄՈՒՏՔ Ի ՔԱՂԱՔՆ ՑԱՒԱԳԻՆ...

Պարզագոյնն Թերեւս բացատրեցէ Անգղիացին այն սպայ (1) որ յամին 1837 եանց ընդ Անի, և ասէ. " Մելամաղձիկ յոյժ զգացմունս ազդէ 'ի սիրտ տեսարան քաղաքիս այս անապատացելոյ. եկեղեցիք նորա քեռալք յուշ իմն այսպէս առնեն, եթէ ազգ հզօր քրիստոնեայ անկեալ է ստամբոր ընդ բազմակրկին հարուածովք խժդժագոյն բարբարոսացն Ասիոյ և անագորուն Թշնամեաց հրահանգաց քրիստոնէութեան: Շինուածոցն անեղծ մնացութիւն՝ յերկրայս արկանէ զկիրս միայնութեան, և յանդգաստից իմն յածին աչք շուրջանակի խնդրել նշանակս կենդանութեան: Ոչ այսպիսիս ներգործէ 'ի սիրտ ազդմունս տեսիլ նշխարեաց աւերակաց հընութեան զառանցելոց ժամանակաց. անկերպարան հողաբլուրք Բաբելոնի՝ երեւին հանգոյնք կըմախաց մեռելոտւոյ. իսկ ամայացեալս այս և տակաւին կանգուն քաղաքս՝ նմանեալ թուի դիականն այն ինչ անշնչացելոյ, յորում դեռ ես նշմարիցին տիպք կենդանականք ": Այլ անխնայ և անաչառն ժամանակ ամ յամէ աճեցուցեալ զխրամատս և զաւեր ամայացելոյն, սպառնայ զրկել զմեզ և զյետինս մեր՝ և 'ի տեսրախառն մխիթարութենէ այտի երեւոյթի կենդանատիպ մեծութեանցն. վասն որոյ և երախտապարտս կացուցէ զմեզ և զապագայս՝ արանցն երկասիրաց մերոցս և օտարաց, որք աւանդեցին 'ի գիր և 'ի գրոշմ զմնացուածս արձանաց և զշինուածոց քաղաքին. որոց յետ ամենեցուն Քէսդնէր (1) ոմն գերմանացի յամին 1850 հաւաքեաց զամենայն՝ նկարահանութեամբ, և արար գիրս մի Տեսչութեանց հնութեանց Անւոյ, (զոր կարծեմ չէ ես հրատարակեալ 'ի լոյս): Իսկ մեր շատացեալ այսքաններովս, դարձցուք յոյժ համառօտութեամբ և 'ի շրջակայս Անւոյ:

40. Յարեւելից հիւսիսոյ Անւոյ իբրու ժամու մերձագոյն առ եզեր Ախուրեան գետոյ կայ նշանաւորն 'ի շրջակայ շէնս քաղաքին՝ Հոռոմոսի վանք, որ և Խօշաւանք կոչի՝ յանուն երկուց քառակուսի աշտարակաձև սենեկաց որ Խօշան կոչին, և չէ յայտ յինչ սակս շինեալք, մերձ 'ի վանսն. սա կարի ընդարձակ է և պարսպապատ և ամենայն մասամբքն հոյակապ արքայավայելչ շինուած. եկեղեցին բարձրագմբէթ շինեալ է յարքայէն Յովհաննէ յամին 1038, երկայնութեամբն գրեթէ հաւասար կաթուղիկէին Անւոյ, այլ անձուկ առ լայնութիւն, բաժանեալ 'ի գաւիթ վայելուչ և սենեկաւորձ, տաճարն անսիւն, երկոքեան ես գմբեթաւորք. զարմանակերպ ես շինուած է Նշ-

(1) Capt. Richard Wilbraham.

(1) Kästner.

խարատունն անուանեալ երիւք քարաշէն սեննեկօք, որոց միջին յ՚12 խորշս զատուցեալ է նոյնքան սեամբք և նուրբ և խիտ քանդակօք, այլ գմբէթ նորա անկեալ է. և է սա շինեալ յամին 1209, ունի արձանագիրս յոլովս. վայելուչ է և տապանատունն ձախութեամբ քարակերտ շինուածոց և խաչարձանաց, ունելով և մատրունս երկս ՚ի վերայ իւր. գոն և այլ մատրունք հուպ և հեռի և իշխանատեղի մեծ որմափակ, այլ կործանեալ։ Նորոգեալ է վանացս յամին 1685 և 1788 և դարձեալ լքեալ, և միւսանգամ ՚ի հերուն (1852) ձեռն արկեալ եղև ՚ի նորոգումն։ — Սակաւուք հեռի ՚ի հիւսիսոյ վանացն կայ Ս. Գէորգ եկեղեցի վայելուչ շինութեամբ և արձանագրաւ Գագկայ Ա, և մերձ նմին այլ եկեղեցի փոքր՝ նման նմին անսիւն բարձրագմբէթ, յորում գոյ և արձանագիր ՆԼԵ (986) թուականաւ. և այլ մատրունք և փլած եկեղեցիք. որք թուին ՚ի յիշատակ հանգստարանի թագաւորաց շինեալք, զի ՚ի սնարս եկեղեցւոյ Ս. Գէորգայ կայ շիրիմ մակագրեալ ԱՇՈՏ ԹԱԳԱՒՈՐ, և կից նմին այլ շիրիմ անգիր։ — Սակաւուք ևս ՚ի բացեայ ըստ արևելից հիւսիսոյ՝ կայ Տոյլուր գիւղ՝ յերից կողմանց պատեալ յԱխուրեան գետոյ և միւսովն՝ պարսպօք ամրացեալ. ունի եկեղեցի հին, յորոյ դրանն վերայ քանդակք առիւծուց նապաստակ ՚ի միջի ունելով։

41. Յարևմտից Անւոյ ժամաւ հեռի կայ Ղօզլուճա գեօղ, որ է հինն Բագնայր, կանգուն ունելով զփառահեղ և մեծավայելուչ եկեղեցին շինեալ ՚ի Սմբատայ Մագիստրոսէ յամին 1010, անսիւն գմբեթաւ և լայն սիւնազարդ գաւթաւ, լի և հոծ արձանագրութեամբք և դրուագօք. ՚ի հարաւոյ արևելից տաճարին կան զոյգ մատրունք փոքունք, մին յանուն Ս. Լուսաւորչին, և ՚ի միւսումն՝ շիրիմ անգիր։



Կիսաժամաւ ՚ի հարաւոյ Ղօզլիճայ՝ կայ Ալաճա գիւղ, որ է Արջօ-Առիճ, և ՚ի նմա մնացուածք մենաստանի և եկեղեցւոյ նման Բագնայրի և մատրանց՝ կործանելոց իբր տասն կամ 12 ամաւ յառաջ։ — Իսկ ՚ի հիւսիսոյ Ղօզլիճայ ժամաւ և աւելի հեռի կայ հինն Մրէն գիւղ՝ Գարապաղ կոչեցեալ այժմ վասն այգեացն շատութեան, որք և յարձանսն յիշին. ՚ի մնացուածս շինուածոցն կանգուն կայ հոյակապ տաճարն կառուցեալ ՚ի Դաւթայ Սահառունոյ յամին 614, որով մի ՚ի հնագունից եկեղեցեաց է, և մեծագոյն քան զյոլովս որ զվայրօքս, վեհակերպ և մեծագմբէթ, և պատկերաց քանդակօք պճնեալ արտաքուստ. արձանագիր կառուցողին չև ևս ընթերցաւ, որպէս և ոչ ապարանիցն խանգարելոց, որ զբօսանաց վայր էր Բագրատունեաց. կան և շիրիմք ոչ սակաւք անդանօր։ — Ի հարաւոյ Մրենոյ մերձ յԱխուրեանն կան աւերակք Բագարան աւանի, զոր շինեաց Երուանդ Արշակունի, տեղի դից պաշտամանց, երևին և մնացուածք եկեղեցեաց ՚ի դերբուկսն անդ, իսկ դաստակերտի նորին ԵՐՈՒԱՆԴԱՇԱՏայ աւերակք նշմարին յանկեան խառնրդոց գետոյն ընդ Երասխայ։ — Յարևմտից Մրենայ կայ Ալէմ կամ Ալամօն գիւղ պարսկաբնակ. և սա ունի եկեղեցի գմբեթաւոր շինեալ յամին

Աշտարակ և մզկիթ յԱնի. — La mosquée d'Ani.

637 առ Հերակլեաւ կայսերաւ։ — Ի մտից նորա կայ Տէկօռ կամ Տէկոր գիւղ 'ի գոգս լերանց, հնագոյն ևս եկեղեցեաւ, որոյ և ձև գոյզն ինչ զանազանի յայլոցն, զի գմբէթն ցածագոյն և լայնագոյն է, և կրկնայարկ մատրուճքն կամ աւանդատունք արտաքս քան զորմն տաճարին ելեալք, որոյ երկայնութիւն է 68' և լայնութիւն 56'. և է շինեալ 'ի Սահակայ կամսարականէ, որպէս թուի 'ի կէս Զ դարու։ — Ի հարաւոյ մտից Տեկոռայ կիսաժամաւ հեռի կայ Ագարակ կամ Իգտէլ գիւղ, կրկին հին եկեղեցեօք յորոց մին գմբեթաւոր և կանգուն կայ 1006 թուականաւ, այլ շինածն հնագոյն ևս է։ — Կշիռ յարևմտից Տիկոռայ կայ Խնծկօնք գեօղ, այժմ Պէշ-Քիլիսէ կոչեցեալ վասն հնգեցուն գեղեցիկ եկեղեցեացն կանգնելոց 'ի վհսան Սարգսէ, յեզր խորանդունդ ձորակի ուրեմն, ընդ որ անցանէ հեղեղատ. ամենեքին փոքունք գմբեթաւորք և անաղարտ մնացեալք, 'ի գեղնափայլ քարանց կերտեալք. մեծագոյն եկեղեցեացն Ս. Սարգիս բոլորշի արտաքուստ և բոլորաթև խաչաձև 'ի ներքոյ՝ շինեալ է յամին 1033, ունելով 38' ընդ երկայնն և 34' ընդ լայն. երկրորդն բազմանկիւն բոլորակ է արտաքուստ, խաչաձև բոլոր 'ի ներքոյ 28' ընդ երկայնն և ընդ լայն: իսկ այլքն սովորական քառանկիւն ձևով։ — Ի հարաւոյ սոցա են Ծողնի և Նախճաւան գեօղք կիսաւեր եկեղեցեօք։



Ս. Գէորգ. մերձ յԱնի. — Chapelle aux Tombeaux des Rois d'Ani.

42. Ի հիւսիսոյ կուսէ Անւոյ և Շիրակաւանայ ժամաւ հեռի 'ի սմանէ կայ Թիկնիզ գիւղ, յորում ամրոց հին կառուցեալ 'ի գեղադիտակ բարձրաւանդակի, բարձր պարսպօք քառակուսեօք և ուժ աշտարակօք. կրկնայարկ կամարակապ է, այլ կիսակործան։ — Ցարևմտից սորա ժամաւ հեռի կայ Արգինա գիւղ 'ի դաշտի պարսպելոյ բլրօք. 'ի սմա Խաչկայ կաթուղիկոսի կանգնեալ էր եկեղեցիս չորս և անդ զաթոռն եդեալ. միոյն միայնոյ այժմ երևին քայքայեալ որմունք, և մասն մի մեծի կաթուղիկէին, յորում նշմարի և թուական ՆԿԱ (1012). գոն և այլոց շինից դերբուկք, որք և զհայրապետանոցին տեղի թուին ունել։ — Ի հարաւոյ մտից Արգինայ կայ Մէնէէլ գիւղ, և 'ի քառաժեաս նորա փապարք և ձիթահանք. և եկեղեցիք 'ի նմա, յորոց մին անեղծ և անվթար կայ առ վտակի միում, արձանագրաւ 'ի ՈՀԷ (1228)։ Կայ միւս այլ գիւղ Մէնէէլ Նախճաւանայ յարևմտից Ղօզլիճայ, երկոքին ևս յիշեցուցանեն զանուն Մօրկայ, այն է Մաւրիկ կայսեր որ էր ազգաւ Հայ յՕշականայ (134), յելս Զ դարու, և ետ առնել շինութիւնս 'ի կողմանս յայսոսիկ։ — Մերձ է 'ի Մէվլէկ և Օղուղլու կամ Ողուղլի գիւղ, հոյակապ գմբեթաւոր եկեղեցեաւ, որ աղեղնաձև թևս ունի 'ի ներքուստ, նորոգեալ յամին 1001 (ՆԾ), շինեալ դարու յառաջ 'ի Հասանայ Գնթունւոյ "Նախօրինակ վերինն Երուսաղէմի", որպէս ասէ արձանագիր նորա գեղեցիկ։ — Ժամաւ և աւելի յարևմտից հիւսիսոյ Մէվլէկայ կայ Քիւրէկ-տէրէ գիւղ, ուր ճակատեալ էին Ռուսք 'ի սկիզբն օգոստոսի 1854 տարւոյ, և բախեալ ընդ Օսմանեանս՝ պատերազմի ահաւոր մղեցաւ ժամս վեց յ'80,000 ընդդիմամարտից, և ընկրկեցան Օսմանեանք 'ի Ղարս. իսկ Ռուսաց հրձիգ արարեալ զշրջակայ վայրսն՝ դարձան անցին ընդ Ախուրեան 'ի բաժին իւրեանց։ — Ի հարաւոյ արևմտից սորա է Հաճիլէմ գիւղ, ուր զաւաշինն բանակեալ էր Օսմանեանց, և անտի յարձակեալ 'ի



Տիկոր․ — Église de Digor.

բաժին Ռուսաց՝ գրգռեցին զնոսա։ — Ի հիւսիսի արեւմտից ամենեցուն սոցա առ գետովն Ղարսայ կան երկու գիւղք ՓԷՐԼԻՔ անուն, Մեծ և Փոքր․ յառաջինումն կայ քառակուսի ամրոցաձև տեղի վեցեքումբք բոլորշի աշտարակօք, 77՛ յերկայնութիւն և 65՛ 'ի լայնութիւն, և խաչարձան 'ի բարձու։ — Այսպէս և այլ բազում տեղիք և մնացուածք հին շինուածոց են 'ի յաւերժացիշատակ վիճակիս Շիրակայ․ այլ աւաղ զի ոչ միայն հնութեամբ ժամանակի, այլ և բռնութեամբ զինու և քինու պատերազմողաց՝ ևս քան զեւս յաւեր և յապականութիւն մատնին և 'ի գրելն մերում զայս։

43․ ՉԱԼՏԸՐԱՆ և ԿԱՂԶՈՒԱՆ վիճակք 'ի հարաւոյ կան Շօրէկէլի և Ղարսայ, և 'ի հիւսիսոյ Նահանգին Պայեզիտու, յարևմտից Ռուսաց Հայաստանի, և ունին զհին գաւառն ԱՐՇԱՐՈՒՆԻՔ կամ ԵՐԱՍԽԱՁՈՐ․ քանզի Երասխ գետ իջեալ 'ի կողմանց Բասենոյ հատանէ զերկիրս զայս ընդ խորաձոր լայն և քարակոտուր, և ելանէ 'ի միջնադաւառս Այրարատայ։ Են և 'ի սմա ոչ սակաւ նշանաւոր տեղիք ըստ հին յիշատակաց․ որոց գլխաւոր է ԿԱՂԶՈՒԱՆ կամ ԿԱՂԶՄԱՆ ըստ արգի հնչման, յաջմէ կամ 'ի հարաւոյ Երասխայ, 'ի բարձու 4670՛, 'ի հինն ԳԱԲԵՂԵԱՆ կամ ԳԱԲԵՂԻՆԻՑ գաւառի․ շէնն անշքացեալ է և սակաւամարդ, այլ յոյժ զուարճալի այգեօք և պարտիզօք, որք մատակարարեն պտուղ Շիրակայ և Վանանդայ․ գեղեցիկ են և տեսարանք վայրացն բարձանց առ Կաղզուանաւ։ — Չորիւք ժամուք 'ի հարաւոյ նորա, ուր լեռնախիտ և ապառաժ և խորաձոր վայրք են, կայ ՎՈՐԴԻՆԷՐ կամ ՎՈՐԴԻ-ՀԱՅՐ ըստ Նախնեաց, անուանի մենաստան, այժմ ուխտատեղի ևեթ սրբոց Թարգմանչացն Թաթլըյ և Վարոսի, որոց գամբանք պատուէին 'ի կիսաւեր եկեղեցւոջ․ և մենարանք ճգնութեան նոցա 'ի մերձակայ բլերն, և 'ի դժուարակոխ ձորամէջս, որ ՎԽՇՏՈՅՈՐ կոչին․ բղխէ անդ և ջուր ցուրտ․ գոն և այլ ոչ սակաւ ճգնութեանց վայրք յանվայր տեղւոջս և սրբոց քնարանք․ որք աւաւել ևս ամայացան և անմարդացան գաղթելով Հայոց 'ի Ռուսս։ — Ի հիւսիսոյ արևմտից Վարդիհերայ կայ ՂՕՐՕՂԱՆՔ, երիւք կիսափուլ մատրամբք հնովք, յորս պատարագէին սուրբքս յիշեցեալք։ — Ցարևմտից հիւսիսոյ Ղարավանից և յահեկէ Երասխայ կայ փոքրիկ լճակն ՉԱՆԿԼԻ առ համանուն գիւղիւ բարձու 'ի լերանցամէջս, յորում եկեղեցի հոյակապ և գմբեթաւոր 'ի սևագոյն քարանց, 62՛ երկայն, 44՛ լայն, վրացի արձանագրութեամբք, որք թուին 'ի սկզբան պայազատութեան Բագրատունեաց

դրօշմեալք ։ Ի լճակէն՝ որոյ կիսաժամու է շրջապատ և խոր յոյժ, ելանէ վտակն Կաղայփ, և առ նովաւ էր անշուշտ բերդն համանուն՝ ուր ամրացաւ Սմբատ Ա, և առ խնայելոյ յիւրսն՝ անձնատուր եղև 'ի Յուսուփ. յառաջնումն կոչէր Արտագերից բերդ. զոր շինեաց արքայն Արշակ Բ, և կին նորա Փառանձեմ անտի գերեցաւ և տարաւ 'ի վերջ կոյս Դ դարու ։

Ընդ մէջ Կաղզուանայ, Շօրէկէլի, Ղարսայ և Բասենոյ կայ փոքրիկ և լեռնավայր վիճակն ԿԷՉԷՎԱՆ կամ ԽՈՒՃՎԱՆ, ընդ որ անցանէ Պայամ–սու օժանդակ Երասխայ, ունելով յեզերն զամուր աւանն Կէճէվան կամ Կեչուան, և զգեօղսն Ճամուշլու, Գըզըլճիրան, և այլն։

## Բ. ԷՐԶԻՐՈՒՄ ՆԱՀԱՆԳ

44. ԷՐԶԻՐՈՒՄ նահանգն որ է ԿԱՐԻՆ ըստ մեզ, յանուն գլխաւորի գաւառացն Բարձր Հայոց, նախապատիւ ամենայն գաւառաց Օսմանեանն Հայաստանի և քան զյոգունս այլոց աշխարհաց նոցին. կարի ընդարձակ է իբրև գաւառ տասնձնակ՝ ունելով յարևելից կուսէ զՂարս, 'ի հիւսիսոյ զԸնգերացիս և զՊոնտոս, յարևմտից զՓոքր Հայս, և 'ի հարաւոյ զգաւառն Խարբերդու. ընդարձակագոյն ևս իբրև նահանգ ըստ վարչութեան, ունելով ընդ իւրև և զՂարս և զՊայէզիտ ։ Բայց մեր բանք աստ զառանձին գաւառէն են, յորում բովանդակին գաւառակք և վիճակք իբրև երեսուն, յորոց ոմանք յառաջագոյն մասն էին Չըլտըրայ կամ այլոց գաւառաց. որոց ամենեցուն առաջին է ԷՐԶԻՐՈՒՄայ վիճակն, որ և ՕՎԱ կոչի, քանզի դաշտ է ընդարձակ՝ իբրև 32 մղոն ընդ երկայնն յարևելից յարևմուտս և 14–18 լայն 'ի հիւսիսոյ ընդ հարաւ, պարապեալ գրեթէ ամենուստ լերամբք բարձամբք, բարձր գոլով և ինքնին դաշտին իբրև 6000'. յոր իջանեն 'ի լերանցն և խաղան երկոքին առաջք արևմտեանն կամ հիւսիսայնոյն Եփրատայ մեծի՝ Գարասու և Սարչամ (20) և ելանեն ընդ արևմուտս կոյս, գործեալ և զՇամբն Կարնոյ, այսինքն Ճահիճ լճաձև (18). յորոյ հարաւոյ կայ մեծ ՔԱՂԱՔՆ ԿԱՐՆՈՅ՝ որպէս կոչէր 'ի հնումն, և ապա ԹԷՈԴՈՍՈՒՊՕԼԻՍ վասն նորոգ շինութեանն 'ի Թէոդոսէ կայսերէ 'ի սկիզբն Ե դարու, լինել մայր քաղաքաց բաժնի յունականն Հայաստանի. վասն այնորիկ և յայլազգեաց արևելեայց կոչեցաւ ԱՐԶԻ–ՌՈՒՄ (Յունաց Երկիր կամ Արզն). և եղև միշտ քաղաք անուանի ըստ քաղաքական վարչութեան, ամրութեան և շահաւէտ վաճառուց. վասն այնորիկ և ընդ բազմաց անկեալ ձեռամբ մերձ ընդ մերձ Յունաց, Պարսից, Արաբացւոց, Թուրքաց, Վրաց և Թաթարաց, յորոց և տիրապետութիւն կամ հարկատու սուլտանք և մեծք ևս նստան 'ի նմա յաւուրս Բագրատունեաց և Ռուբինեանց, յետոյ ուրեմն նուաճեալ մնաց 'ի ձեռս Օսմանեանց, զամ մի միայն յետ 1400 ամի շինութեանն 'ի Թէոդոսէ՝ 'ի բուռն Ռուսաց անկեալ, յամին 1828. յորոց ոչ սակաւ անշքեցաւ, աւարեցաւ և աւերեցաւ քաղաքն և նուազեաց 'ի բնակութենէ և 'ի շահավաճառութենէ. Թէպէտ և դարձեալ բարգաւաճել սկսաւ, պահեալ միշտ զնախագահութիւն Օսմանեան իշխանութեան 'ի Հայս. որոյ վարիչն կամ քաղաքապետ փաշայ բարձրապատիւ՝ ապարապետ է ամենայն բանակի բազում գաւառաց. բարգաւաճագոյն ևս լինէր արդեօք՝ եթէ չէր բարձր յերեսաց ծովու աստ 5740', վասն որոյ երկարաձմեռն և ցրտին յոյժ, անփայտ և անպտուղ. բայց ամարանի՝ զուարթանայ շահեկան բուսաբերութեամբ և երամ երամ հաւուք և զանազան գեղով բնութեան ։ — Ի մնացուածս հին շինուածոց քաղաքին՝ որ հարկ է թէ չէին սակաւք, այժմ նշանաւորք են բերդն աստուարապարիսպ՝ Գօշա–գալէ կոչեցեալ, յոր անուն և քաղաքն Գալիգալէ կոչէր յԱրաբացւոց, և միջնաբերդն Իչգալէ, յորում ապարանք կուսակալին և զինարանն Ճէպխանէ խորափոր բանտիւք, և աշտարակաւ Թէքէ–մինարէ կոչելով։ Պարիսպ միւս ածեալ է զքերդաւն, և մէջ երկոցուն պարապացն Հիւար–ովէ կոչեցեալ՝ դատարկ է, երկոքին ևս ունին աշտարակս կամ բրգունս՝ 62 ընդ ամէն, և չորք չորք դրունք պարսպացն, և խրամ խոր զքերդաւն. երևին նշմարք և այլոյ խրամի հեռագոյն զքաղաքաւն ածեալ, որոյ է շրջապատ իբր երեք ժամուք ։ Ի քաղաքամիջին նշանաւոր շինուած է Ուլու–ճամի մզկիթն, իբր 150' ընդ երկայն և 120' լայն, տաքաշէն է արդ ձեղուամբ, չորք կարգ կամարօք 'ի վերայ 28 որմասեանց, զի գմբէթն կործանեալ է. եօթն դրունք են նորա, երեքն որմեալք. Թուի դիւանատուն լեալ 'ի հնումն ։ Նշանաւոր է և Չիֆտէ–մինարէ՝ զոյգ աշտարակք յախճապակեայք գունագոյնք, և աղօթանոցն և ուսումնարան հին առ նովաւ կանգնեալ յամին 935 հրամանաւ Մէլիք Խանի Թագաւորի Խորազմեանց, որպէս ցուցանէ պարսկերէն արձանագիր քիւֆի գրով գրեալ։

Յետ սոցա գեղեցիկք 'ի մզկիթս, որ բազմաթիւ են, Նումանիէ–ճամի, որ է համաձև և համաչափ քեապէին Մէքքէի. Գուրշունլու–ճամի, Չինիլի–մինարէ, Ճաֆէրիէ, և այլն։ Յայլ շինուածս գլխաւորք են բաղանիքն Մէրճէն–համամ, Կէօմիւշ–համամ, և այլն։ — Պէզէստէն, որ է Թանգարանոց վաճառուց, ճոխագոյն քան զբազում շահաստանաց Ասիոյ, յոր գան վաճառք 'ի Կովկասայ, 'ի Պարսից, 'ի Հնդկաց և 'ի Կոստանդնուպօլսոյ. իսկ 'ի քաղաքին ընտիր վաճառք հայթհայթին խաղախ, պղնձեղէն անօթք և կազմածք, ըղգեստք, և այլն։ Առատ են ջուրք քաղաքին աղբերց բազմութեամբ, յորս և Նահապետի–աղբիւր, որ այսպէս կոչի յանուն սրբոց վկայիցն Սահակայ և Յովսէփայ նահատակելոց անդ յամին 808, որոց տապանք են մերձ յՈւլու–ճամի ։ — Թիւ բնակչաց քաղաքին աւելի քան զ'40,000 (ըստ ոմանց 78,000), յորս 600 և ըստ ոմանց իբրև 1000 տունք են Հայոց, որոց գլխաւոր եկեղեցի է Ս. Աստուածածին մեծ և նորաշէն. 'ի Թեմի եպիսկոպոսին 'ի գաւառին Էրզրումայ են իբրև 2000 տունք Հայոց ։ Են և հռովմէական Հայք 80 երդ, և ունին եկեղեցի յանուն Տիրամօր ։

45. Ի դաշտին Կարնոյ սփռեալ են իբրև 120 գեօղք, յորս գլխաւորք են Իլիճա կամ Կլիճա 3 ժա-



Ուլու Ճամի. — Oulou-Djami, mosquée (Erzéroum).

մաւ հեռի յարեւմտից քաղաքին, մերձ 'ի շաւիղն Կարնոյ, այն է ատըլըն Ջըռաշեմ, ուր հաւք զօղեն. անուանի է գեօղն վասն ջերմադրերացն բաղանեաց, որք յիշին 'ի Ե դարէ ։ Բնակիչք գեղջն 30 տուն ։ — Մօփաուլէօ, առ որով Մօփաուլէօ Վանք Ս. Լուսաւորչի յաստ Տէվէպօյնու լերին ։ — Սօուգ ջերմուկ, յորում ցրտադրեալ հանքային ։ — Հինիս կամ Հնյուց գեօղ, յարեւելից հիւսիսոյ քաղաքին, իբր 30 ատմբք, զուարճալիր գարիւք, ուր և մատուռն փոքր կամ ուխտատեղի Յովհաննու Կողբան. մերձ է Հնյուց 'Վանքն որ և Կարմիր Վանք, հիմնարկեալ 'ի Մեծէն Ներսիսէ յանուն Տիրամօրն. և հուպ նմին Քարայրք Հռիփսիմեանց 'ի ձորամիջի ։ — Գըլըչխիլիսէ և Ծուղնի գեօղ յարեւելեան հիւսիսակողմն քաղաքին. 'ի ստորոտս բարձու Տօմլու լերին (19) ։ — Սարչամ առ համանուն լերամբն և վտակաւ, յարեւմտակողմն հիւսիսոյ գաւառին ։ — Ի ստորոտս լերանցն կայ և Խաչկայ-Վանք ուխտատեղի, և Խաչափայտ աւազան ցրտին ջրոյ, ուր Թաքուցաւ խաչափայտն 'ի դարձուցանել զայն Հերակլեայ կայսեր 'ի Կոստանդնուպօլիս ։ — Արծաթի գիւղ մեծ յորում հարիւրաւոր տունք Հայոց էին յառաջ քան զգալ Ռուսաց. են ջերմուկք մերձ նմին ։ — Քարաուր, քարայրք անուանիք ըստ միպաստանից, մենարանք սիրելեացն Ֆերհատայ և Շիրինայ ։ — Գուրգուր, Վաղաուէր, Ղուշծի առ Սեաւ ջրով (Գարասու) ատղիք մեծի շահաստան քաղաքին ԱՐԾՆ կոչեցելոյ, զոր Սելջուկեան Թուրքք յաղարտ վարեցին յամին 1049, կործանեալ անդ ոգիս առաւել քան զչորեքտասան բիւր ։ — Գաղփաուիճ Մեծ և Փոքր, որ է հինն Խաղխոյ-Առինճ, ուր արգելաւ պահ մի Գեորգ Գետադարձ կաթողիկոս հրամանաւ Վասլի կայսեր ։

46. ԹՈՐԹՈՒՄ վիճակ կայ 'ի հիւսիսոյ գաւառին Կարնոյ, և Թուի մասն ԸՍՏԳՈՄՔ կամ ՇԱՂԱԳՈՄՔ կոչեցելոյ գաւառի նորին և ՈՔԱՂեայ Տայոց. գետակ համանուն բղխեալ 'ի Գուր լերանց որ առ Գըրըչխիլիսէիւ Կարնոյ՝ և իջեալ 'ի հիւսիս օժանդակել զՃորոխ, արբուցանէ զգեղեցիկ և զջերմիկ գաւառ իբրու 10ժամեայ երկայնութեամբ և կիսով նորին լայնութեան, որ և զանազան գրիւք և տեսլարանօք բնութեան, քարածերպիւք և հովտօք, լճաւ և ջրվիժիւ՝ զուարճացեալ է, և առաւ պտղաբերութեամբ, յորմէ և Կարին ընդունի միրգս ազնիւս ։ Իբրև 70 գեօղք են վիճակին, նշանաւորքն ԹՈՐԹՈՒՄ աւան յաջմէ գետակին կամ յարեւելից, բերդ հին և ահաւորահայեաց ունելով 'ի բարձու քարալերին կարկառելոյ 'ի գետն, յոր իջուցանեն և ամդուսք քարափորք ։ Բնակիչք 20 երդ ։ — Խախու առ համանուն վտակաւ օժանդակաւ Թորթումայ, որ 'ի գեղեցիկ հովտին ունի հրաշակառույց մենաստան շինեալ 'ի Վրացւոց գարու և 'ի Դաւիթ կուրապաղատէ 'ի Ժ ։



*Բաբերդ.* — Baybourt.

Մեւս ևս հոյակապ և հրաշակերտ մենաստան է Էօչ գեղջ 'ի սարաստափ բլրի. և միւս այլ եկեղեցի զարմանաշէն յԷգրէկ գեղջ. յորս յամենեսին գոն արձանագիրք վրացերէ, զի առ հարստութեամբ նոցին շինեալք են: — Աղուրտ գեօղ նշանակէ զգլխաւոր տեղի ԱԶՈՐԴԱՓՈՐ գաւառի Տայոց. յորոյ յՈքաղ գաւառի էին վիճակեալքն այժմ Թորթումայ Գեղիկ և Վորդինշէն, առ որովք բանակեալ էր Զաւմինհր զօրավար Պարսից հետամուտ լինելով քաջին Վահանայ, յամին 483: — Նորագիւղ գիւղ մերձ 'ի Թորթում, յորում 40 երդ հռովմէական Հայոց:

47. ԻՍՓԻՐ վիճակ լեռնային յարեւմտից Կարնոյ ունի զսահմանս հնոյ գաւառին Սպերոյ, շրջապատեալ 'ի Ճորոխ գետոյ, որ և 'ի նմին բղխէ. անուանի են բովք արծաթոյ սորա, այլ այժմ խափանեալք: Գլխաւոր տեղի վիճակին է Իսփիր ասեն յաջմէ գետոյն, 60 տամբք, կիսաւեր բերդիւ 'ի գագաթան լերին, յորում և մենաստան և եկեղեցի Հայոց լքեալ: Սա թուի Սմբատաւանն անուանի յիշեալ յԱ դարու, և նախկին բնակութիւն Բագրատունեաց: — Գեօղք իբրև 60 են վիճակին Սպերոյ. յորս նշանաւոր Սոնուս? 'ի սահմանս Բերդագրակայ: — Պորխոր առ Պօսըրմաթենի պղնձահանիւք: — Օրնօթեօս 'ի ստորոտս Գոհանամ լերին 'ի հարաւոյ Իսփիրու, յորում անուանի ուխտ վանաց Ս. Յովհաննու կամ Ս. Կարապետ, և մերձ նմին արծաթահանքն Վանք—մաթենի: — Քոմբոր յարեւելից հարաւոյ Իսփիրայ, որ է անշուշտ հինն ԿԱՄԲԱԼԱ, ուր Մեծն Աղեքսանդր առաքեաց զՄեմնոն 'ի խնդիր բովուց ոսկւոյ:

48. ՊԱՅՊՈՒՐԴ որ է ԲԱԲԵՐԴ վիճակ Խաղտեաց Հայոց, որոյ քաղաք համանուն գլխաւոր քաղաք էր Հայաքաղդեաց կամ Արմենոխալիւբք կոչեցեալ ազգի, արտաքոյ հնգետասան աշխարհացն Հայոց Մեծաց. և կայ 'ի վերայ գետոյն Ճորոխի, 'ի բարձու 5040' ոտից. և սա 'ի հնումն Բագրատունեաց թուի լեալ ոստան. ունի բերդ 'ի բարձու խանգարեալ 'ի Ռուսաց յամին 1828, և սանդխաւոր ջրոյ ճանապարհք փորեալք 'ի նմա. Նշանաւոր շէնք են կամուրջքն, դէվլէթբէնն, ուլուճամի մզկիթն: Բնակիչք 6000 են քաղաքին, յորս 100 տուն Հայոց, և չորք եկեղեցիք նոցա. գլխաւոր ձեռագործ քաղաքին է գործ ազնիւ: — Գեօղք բազում սփռեալ են զԲաբերդաւ 'ի դաշտակողմն և 'ի լերինս, յորս գլխաւորք են Վարզահան ասեն առ Սամանսու ջրով 'ի հիւսիսոյ արեւմտից քաղաքին, յորում մնացուածք երից փոքունց գեղեցիկ եկեղեցեաց և քաղաքորմոց, աւերեալք 'ի Լազից իբր 60 ամօք յառաջ: — Վանքէն որ և Վոհանուզէն և Օյթէղ, յորում անուանի մենաստան Լուսաւորչի: — Մասատ 'ի կողմ Գօփ—թաղ (5) լերանց բարձանց, 'ի վերայ ճանապարհին Կարնոյ: — Բալախոր ասեն յարեւմտակողմն Վարզահանայ 'ի վերայ ճանապարհին Կիւմիւշխանէի:

49. Ի հիւսիսոյ Սպերոյ, 'ի ձախմէ Ճորոխայ և յարեւմտից նորին կան վիճակքն ՀԱՄՇԷՆ և ԿԻՒՐՃԻՍՏԱՆ որ է ԲԵՐԴԱԳՐԱԿ, ընդ նմին և ԽՈՏՐՁՈՒՐ, յետին սահմանք Հայոց ընդ արեւմտեանն հիւսիս, և սահմանակիցք Պոնտոսի, լեռնավայրք բարձունք. Համշէն, յորում բարձրաբերձ լերինք են և բովք եր-

կալթոյ, անտառք և մեղր շատ 'ի նոսա, 'ի հնումն կոչէր ՆԱԽԵԱՑ ԵՐԿԻՐ և ՏԱՄՔՈՒՐ, և ապա ՀԱՄԱՄԱՇԷՆ. բնակիչք նորա Հայք 'ի կէս անցելոյ դարուն դարձան յօրէնս Մահմետի, այլ ցարդ պահեն զանուանս և զսովորութս Հայոց: Գլխաւոր աւանն Համշէն որ և Պաշ-Համշէն կայ 'ի սարոտս Ցէմբրաւ լերին. առ որով և Խաչէվար լեառն (Ց), յորում մենաստան հին, ուր պահէին նշխարք Վարդանանց, և 'ի գագաթան նորին աւանդի պահիլ Վարշամակին Քրիստոսի, վասն որոյ և լեառնն Վարշամակ կոչեցաւ, և 'ի ռամկաց Վարշամզէք: — Կիսաւուրբ 'ի հիւսիսոյ Համշինու կան մնացորդք Համշէն գալէսի բերդի, որ թերևս իցէ հինն Տամքուր: Անուանի գետք Համշինու՝ Խէսնէ յոսա Խաչէքարայ. Մահմետ սակաւ ժամուք հեռի 'ի ծովէ. և առ եզերբ նորին Արփալն աւան հայանուն: — Պարխար լերինք անջրպետեն ընդ Համշէն յարևմուտս հիւսիսոյ և ընդ Կիւրճիստան յարևելս հարաւոյ. սա այսպէս կոչի վասն լինելոյ երբեմն ընդ ձեռամբ Վրաց. այլ յաճախագոյն ևս կոչի յանուն երկուց գլխաւոր աւանացն, որք են Բէրտագրոմ և Կէօլէմ. սա յայլմէ կայ Ճորոխի մերձ 'ի սահմանս Թորթումայ. և մերձ նմին Արտոս, որ թուի գլխաւոր տեղի ԱՐՏԵՍԱՑՓՈՐ գաւառի Տայոց. իսկ Բերդագրակ յահեկէ գետոյն 'ի հիւսիսոյ Արսեաց. որոց մերձ է Օշնոս կամ Ուշնհաղ գիւղ, ուր մեծն Վահան եհար զզօրս Պարսից. Կօփրալէն, Կարմէր Հայաբնակ գեօղք, 'ի յետնումն բնակեն հռոմէական Հայք, վասն որոյ և Ֆռէնկ գեօղ կոչի: Բազմութիւն հռոմէական Հայոցս բնակէ և յարևմտից Բերդագրակայ 'ի Խոփլջոր կամ Խոփուջոր վիճակի յեօթն կամ յութ գիւղից գումարելոյ, որք են Գէղօօփ, Կաղմօօփ, Կէսոյ, Կրման և Ճինճաղաղ, Թուլուշէնց, Խանդաձոր, Սխանէնց. յորս են 400 տունք և 2000 կամ աւելի ոգիք, իւրաքանչիւր եկեղեցեօք:

50. ԼԻՎԱՆԷ կամ ԱՐԴՈՒԻՆ վիճակ 'ի հիւսիսոյ Բերդագրակայ, ընդ մէջ Ճորոխայ և Պարխարայ, լեռնային այլ քաջաբեր երկիր և զուարճալի տեղարանօք. քաղաքն ԱՐԴՈՒԻՆ կայ առ գետեզերբն յահեկէ 'ի զառիվայրի լերին. ունի ձեռագործս գունագոյն կտաւուց ներկելոց, և վաճառս փայտի և պտղոյ, զոր ընդ Ճորոխ առաքէ նաւուք 'ի Պոնտոս. 'ի բարձու լերինն կան կիսաւեր բերդն և մնացուածք գենուացի շինուածոց: Բնակիչք 7000, յորս 500 տուն հռոմէական Հայոց: Են Արդուինայ իբրև 100 գեօղք, ընդ որս և աւանն Պարխար՝ համանուն լերանցն յորոց միջի կայ, և գետակին՝ որ խառնի 'ի Ճորոխ: — Պէծանէք 'ի հարաւակողմն վիճակին, գեօղ մեծ առ գետեզերբն: Ի լերինս Պարխարայ կայ աւերակ մեծի և հռչակաւոր վանաց և եկեղեցւոյ, այլ ոչ ուրուք ճանապարհորդի գիտնոյ քննեալ է զայն:

51. Ցայժմ Ճորոխայ 'ի հիւսիսոյ Կարնոյ գաւառի և այրարատեանն Բասենոյ կան վիճակքն ԹԱՎՈՒՍԿԵԱՐ, ՆԱՐԻՄԱՆ, ՕԼԹԻ, ՓԷՆԷՔ, 'ի հին գաւառս Տայոց, ընդ կուսակալութեամբ Էրզրումայ: Առաջինն կայ յաջակողմեան ափունս Ճորոխայ և ունի գեօղս 24, որոց գլխաւոր Թավուսկէր աւան, որ է հին իշխանանիստ ազգին Տայոց: Իշխան գիւղ ունի հոյակապ տաճար նման խախուլայն և Էօշքայ (46) 'ի գեղեցկակերտ կոփածոյ քարանց, Ն Թուականաւ Հայոց (951 Քրիստոսի): — ՆԱՐԻՄԱՆ 'ի հարաւոյ Թավուսկեարայ և յարևելից Թորթումայ ձգի. են նորա գեօղք 30. գլխաւորն Նարիման որ է Մահրաւան ունի բերդ հին: Նշանաւոր է և Իտ գիւղ մեծ 60 տամբք: — ՕԼԹԻ կայ 'ի հիւսիսոյ Նարիմանայ և յելից Թավուսկեարայ, մասն ՊԱՐՏԻԶԱՑՓՈՐ գաւառի Տայոց, որոյ և գետակ համանուն Պարտէզաւ ընթանայ ընդ այն, և Պարտէզ կամ Պարտըզ աւան մեծ 200 տամբք յեզր նորին. իսկ աւանն Օլթի է հին Քաղաքն Ուխթեաց կամ ՈՒԽՏԻՔ, որոյ հին շինուածք բերդի կան ցայսօր, և կամուրջ նոր. բնակիչք 350 տուն: Վիճակին Օլթեայ են իբրև 60 գեօղք: — ՓԷՆԷՔ 'ի հիւսիսոյ Օլթեայ և յարևմտից Թաւուսկեարայ կայ 50 գիւղորայիւք. որոց գլխաւորք են Նէֆէս-Փէնէք և Փանաք կամ Փէնէօկէրդ. անուանիք 'ի Ժ դարու, 'ի հարստութեան Վրաց. կայ մնայ զատատակերտ միոյ նոցա տաճար փոքր և բոլորշի, վայելուչ յոյժ և գեղեցիկ գըմբէթակապ, զոր արդ Տաճկաց 'ի մզկիթ փոխեալ է:

52. Ի հիւսիսոյ վիճակացն Տայոց և յայժմ Ճորոխայ և Արդուինայ կայ ԱՐՏԱՆՈՒՇ վիճակ 'ի ծայրս Գուգարաց, կամ Արտանուշ, ոռոգեալ համանուն գետով որ օժանդակէ զՃորոխ. են նորա իբրև 80 գեօղք, և պատշաճի հնոյ գաւառին ԿՂԱՐՋՔ, որ 'ի սահմանակայս Հայոց, Վրաց և Եգերաց. գլխաւոր տեղին է ԱՐՏԱՆՈՒՇ քաղաք առ գետեզերբն 'ի հարաւոյ, 'ի զառ 'ի կող լեռնակի, պարսպեալ քարաժեռիւք և որմովք. են 'ի նմա աւերակք վաղեմի շինուածոց, մեծի բերդի և եկեղեցեաց. 'ի միջնաբերդին են իբրու 120 տունք: — Ցելից հարաւոյ քաղաքին կայ Քէօրճէլի աւան, բնավայր Կղարջայ գաւառի: Մինչև յայս սահմանս աւանդեն պատմիչք Վրաց յառաջեալ Անդրէի առաքելոյ քարոզութեամբ աւետարանին: — Ի հիւսիսոյ Արտանուշայ կայ ՇԱՒՇԷԹ վիճակ, և 'ի նորա հիւսիսոյ արևմտից ԻՄԷՐԽԵՎԻ (Իմերայ-Ձոր), սահմանակիցք Աճարայ, այն ինքն և Եգերք: Ի Շաւշէթ՝ գլխաւոր աւան է Յամընէկ. և առ ջրով Շաւշէթի Թամախար հին բերդ: — Ցելից վիճակացս առ սահմանակցութեամբ Ռուսացն Հայաստանի՝ ԲՈՑՂՈՎ և ԷՐՈՒՇԷԹ վիճակք. առաջինոյն գլխաւոր աւան է Ցիղլիր, ուր նաւթ ակն. միահամուռ գեօղք աւելի քան դհարիւր են վիճակացն. սփռեալք 'ի լեռնադաշտակս հնոց գաւառացն Ջաւախաց և Արտահանայ որ յաշխարհին Գուգարաց:

53. Ի հարաւոյ սոցա կայ մեծ վիճակն ԱՐՏԱՀԱՆ զհամանուն գետովն տարածեալ, որ է ինքն սկիզբն Կուրայ. յարևմտից ունելով զՇաւշէթ և զԿղարջս որ է Արտանուշ, և յարևելից զԱխալցխէ գաւառ ռուսական մասին: ԱՐՏԱՀԱՆ քաղաք 'ի ձախմէ գետոյն կայ 'ի բարձրաւանդակի 'ի քարուտ վայրի, որոյ պարիսպք աւերեցան 'ի Ռուսաց յամին 1828. են արդ 'ի նմա տունք 100, և բնակարանքն փորեալ են 'ի լերինն. յորոյ գագաթան կայ ամրոցն: Գեօղք իբրև 100 են վիճակին Արտահանայ. յորս երևելի է Շոփան կամ Շոփէան, յորում նաւթ ակն: Գտանին աւերակ և ամայի բերդօրայք 'ի լերինսն, երբեմն կա-

լուածք Իշխանաց Վրաց և Հայոց ։ Բանջրապ գիւղ 'ի ստորոտս Գուշնա լերանց (5) 'ի բարեբեր հովտի, յորում են աւերակք եկեղեցեաց և քարանձաւք ։

54. Ի հարաւոյ Արտահանայ, յարևելից Փենեքայ և 'ի մտից գաւառին Ղարսայ կայ ԿԵՕԼԱ կամ ԳԷՕԼԷ վիճակ, որ է ԿՈՂ գաւառ Տայոց, յորում բղխեալ մեծ գետն Կուր, իջանէ ընդ հիւսիս յԱրտահան և երթայ ընդ արևելս յԱխալցխէ գաւառ և խաղայ 'ի Վիրս ։ Են 'ի վիճակին 40 գեօղք, որոց գլխաւոր՝ աւանն Ուրուփ, առ մօտ 'ի վտակաց գետոյն, 'ի բարձրութեան 6500' կամ աւելի ։ Ձմեռն կողմանցս երկարատև է, բայց են նոցին և ջերմ հովիտք՝ ուր ամառն զուարճալի յոյժ, վասն որոյ և Վաղարշակ հայր Արշակունեաց՝ յարգարեաց 'ի սմա իւր ամարանոցս և պարտէզս և որսարանս ։ — Ընդ մէջ Կողայ և Արտահանայ յարևմտից, և գաւառին Ղարսայ յարևելից կայ փոքր վիճակն ՉՈՒԽՈՒՐԷԹ ըստ Վրաց լեզուի հաւեալ, որք և Ֆոսոյ կոչեն 'ի հայկականէս աւեալ՝ փոս, յորմէ և Թուրքք, և այս սակս գոգաձև լինելոյ երկրին. ընդ որ խաղայ վտակ համանուն 'ի հարաւոյ Չըլտըր լերանց իջեալ և անկանի 'ի Կուր, 'ի նոյն և առուակ մի ելեալ 'ի Թէն-կէօլ (18) լճակէն յարևելս հիւսիսոյ վիճակին ։

55. ԲԱՍԵՆ վիճակ կայ յարևելից Էրզրումայ, և ընդ մէջ Նարիմանայ և Փենեքայ 'ի հիւսիսոյ, անջրպետեալ Քիրէճլու և Ալմեղէ լերամբք, և յելից Սօղանլու լերամբք բաժանեալ 'ի Ղարսայ գաւառէն, 'ի հարաւոյ՝ Քէօսէ տաղ և Շահ-եօլ լերամբք 'ի Պայէզիտայ գաւառէ, յորոց վտակս օժանդակս յոլովս ընդունի Երասխ գետ եկեալ յարևմտից և 'ի հարաւոյ 'ի Թէքմանայ, Բասէնոյ-չայ կոչեցեալ 'ի վիճակիս, և երթայ 'ի Կաղզուան. պարապեալ 'ի լերանց բարձրահովիտ դաշտ է վիճակս 5000' բարձր, և կարի ընդարձակ, իբր 16 ժամուց ընդ երկայնն և 10 ընդ լայն. 'ի հնումն կոչէր սա ՍՏՈՐԻՆ ԲԱՍԵՆ, մնացեալ Վերինոյն որ և ԱՆՓԱՑՑ ԲԱՍԵՆ, որ կոչեցաւն յետոյ ԱԲԱՆԱԴ և այժմ վիճակ Ղարսայ. բայց և այժմեանս Բասէն բաժանի 'ի Վերին և 'ի Ստորին, յետինս սահմանակից է Ղարսայ, միւսն՝ Էրզրումայ. և են նոցա գեօղք իբրև 150 ։ Գլխաւոր տեղի համօրէն վիճակին է ՀԱՍԱՆՂԱԼԱ կամ Հասանգալէ քաղաք, յահեկէ համանուն ջրոյն՝ որ է առաջին մի Երասխայ և 'ի հնումն կոչէր Մուրց կամ Մուրցաւոր. վեց ժամու յարևելից Էրզրումայ, 'ի ստորոտս լերին, բարձր 5150', ունի բերդ ամուր և կրկնապարիսպ ։ Սակաւ ինչ հեռի են երեք ջերմուկք և բաղանիք հին, և կամուրջ մի ։ Բնակիչք 5000. իսկ Հայք գաղթեցան 'ի Ռուսս ։ — Յարևելից լերինն կայ մենաստան Տիրամօր շինեալ 'ի Գրիգոր Մագիստրոսէ, յորում և գերեզմանն նորա ։

56. Ժամուք հեռի յարևելից Հասանղալէի կայ Քէօփրիւ-քէօյ առ տեղւոյ ՎԱՂԱՐՇԱՒԱՆայ, զոր կառոյց Վաղարշ հաւ մեծին Տրդատայ, զի անդ ծնաւ. նշանաւոր այժմ 'ի նմա է մեծ կարաւանատուն քարաշէն, զոր Գենուացւոց ասեն շինեալ, բայց և 'ի նախնի շինուածոյն մարթ է մնացորդ կարծել ։ Հուպ 'ի գեօղս՝ գետն Մուրց խառնի յԵրասխ, և 'ի վերայ խառնըրդոյն արկեալ է անուանի եօթնակամար կամուրջն հովուի, Չօպան-քէօփրիւսիւ, աւելի քան զ'700' յերկայնութիւն և 30' 'ի լայնութիւն, զորմէ բազում ինչ աւանդեն, այլ Թուի Հայոց ձեռակերտ ։ — Ի հիւսիսոյ Հասանղալէի կայ Հըճուր լեառն, և ընդ նովաւ գեօղք Ախտ, Գափըճըլան, և այլն. յարևմտից Ախայ Դու գեօղք երկու, որք են Դու և Որդորու հին գեօղք անուանիք և աթոռ եպիսկոպոսացն Բասենոյ և Որդունեաց նահապետի ։ — Ի հարաւոյ Մուրցոյ և Երասխայ կան Օխծ գիւղ անուանի, որ աւերեցաւ 'ի ԺԱ դարու. յելից նորա Եղան 60 հայաբնակ տամբք, առ որով աւերակք հին շինուածոյ ։ — Ի հարաւոյ սորա յաջմէ Բասենն ջրոյ 'ի քարաբլրի կայ Անկոյ բերդն կամ Օնիկ, զարմանալի շինուած յանկոխ վայրի, աւերեալ 'ի Լէնկթիմուրայ, կան ջրամբարք ցամաքք և սենեակք ինչ 'ի նմա, որ Ճիւանգալէ կոչին, և յուխտ գնան անդր նանրահաւատք. բնակիչք գեղջն 60 տուն Հայք մահմեդականացեալք ։ — Յարևմտից հարաւոյ Անկեայ կան Պէյվէրան, Չիլլի, Չիհիրլան գեօղք Հայոց քրդակրօնից, և հուպ 'ի նոսա 'ի լերինս ուրեք անձաւք ձեռագործք Քըլըճ-ֆէնէրէ կոչեցեալ, այժմ գոմք անասնոց ։ Յելից սոցա սահմանս գաւառին Ալաշկերտու՝ զոր անջրպետէ Քէօսէն լեառն, կայ խոպան երկիր Գուրանօղլու կոչեցեալ ։

Ի Ստորինն Բասեն գլխաւոր տեղիք են՝ Խորասան աւան 'ի ձախմէ Երասխայ, և Ջարս հուպ նմին. Քէրմալ առ Գուրաստ վտակաւ, յորոյ 'ի ծայրս՝ 'ի հարաւոյ Աքմէզզէ լերին կայ անուանի բերդն Քէօր-օղլու-գիւցալին, զոր երգեն վիպասանք կողմանցն ։ — ՄԺՆԿԵՐՏ կամ Մանուչէրդ երբեմն քաղաք եպիսկոպոսանիստ, յարևելից հիւսիսոյ Խորասանայ ։ — Ի հարաւոյ Երասխայ ընդ մէջ սահմանաց Ալաշկերտու՝ գեօղք Ամրագոմ, Գոմոյու, Եփրիզէրէն, Տէվէդաղ, Սոպրան, և այլն ։

57. Ի հարաւոյ Կարնոյ և Դերջանայ, յելից Կեղւոյ և 'ի հիւսիսոյ Կէյմիէկ վիճակի Մշոյ կամ Պինկէօլ լերանց՝ կան երկու փոքր լեռնային վիճակքն ԽՈՒՆՉ և ԼԻՋԿԻ, միասունք Մանանաղւոյ ։ — Իսկ 'ի մտից նոցա և 'ի հարաւոյ Դերջանայ, յելից Տուժիկ լերանց և 'ի հիւսիսոյ Ճապաղջուր վիճակի և Մշոյ, կայ ԿԵՂԻ վիճակ որ և ՔԵՕՐԻ, բաժանեալ 'ի Վերին և 'ի Ստորին, և ունի զխորձեան գաւառ Դ Հայոց և զԿՈՐԻ Տուրուբերանոյ, համակ լեռնային տեղիք Պինկէօլ լերանց, որպիսիք են Սըլֆուր, Քէօղէր, և այլն ։ Ստորին Կեղւոյ որ 'ի հիւսիսոյ կայ՝ գլխաւոր տեղի է Մէլիքան. Վերինոյն որ 'ի հարաւոյ՝ Թէմրան կամ Կեղի առ Լէյլի ջրով (Գայլ Դու 'ի հնումն) ։ — Յարևմտից Կեղւոյ, 'ի հիւսիսոյ կուսակալութեան Խարբերդու, և 'ի հարաւոյ Եփրատ գետոյ (Գարասու) կամ գաւառացն Դերջանայ և Եկեղեաց՝ կան լեռնավայր վիճակքն ՏՈՒԺԻԿ և ՄՆՁՈՒՐ, 'ի հնումն ՄՆՁՈՒՐ գաւառի Բարձր Հայոց, բնակեալք յազատաբարոյ Քրդաց, վասն որոյ և անմատոյցք յուղևորաց և անծանօթք. Թէպէտ և փոքր մի նուաճեցան Քուրդք ընդ Օսմանեան պետութեամբ, այլ տակաւին բովանդակ երկիրն որ 'ի միջի կրկին բազկաց Եփրատայ ցկցուած(?) նոցին և Միւս-Գայլ գետոյ (23)

և Պինկէօլ լերանց, երկիր անծանօթ է և արժանի քննութեան։

58. Ի հիւսիսոյ Սասոյին կեղւոյ, յարևմտից Կարնոյ, 'ի հարաւոյ Գօմ-տաղ լերանց խաղտեաց և յարևմտից Երզնկայ՝ կայ ԴԵՐՋԱՆ վիճակ 'ի հնում գաւառի Համանուան, ընդ որ իջանէ Եփրատ 'ի Կարնոյ յԵկեղեաց, և ընդունի զգետն Մամանադաշոյ՝ որ արդ կոչի Մամախաթուն կամ Դերջանայ ջուր. գլխաւոր տեղիք վիճակին, որ ունի գեօղս իբրև 50. են Մամախաթուն աւան 'ի վերայ ճանապարհի կարաւանին Կարնոյ. են 'ի նմա աւերակք և շիրիմք սուաւկինեան ոճով. — Աշխուր ընդ մէջ Կարնոյ և Դերջանայ մերձ 'ի խառնուրդս Սարչամոյ ընդ Գարասուի. — Բէգէօրիճ յահեկէ Եւ ջրոյ 'ի հիւսիսոյ Մամախաթունի. աս է Բագայառիճ գիւղ, յորում կանգնեալ էր պատկեր Հեփեստեայ գեղ բերեալ 'ի Յունաց. — Գորգոգուլու աւան 'ի վերայ ճանապարհին որ 'ի Կարնոյ տանի 'ի Փ. Հայս։ — Ի ներքոյ խառնրդոց գետոյն Դերջանայ յԵփրատ կամուրջ արկեալ է՝ որ կոչի Քոտուրբուրլուճէլու (բառ Եւրոպէացւոց), յանուն երկրին ԿՈՏԵՐոյ, որ միջասահման էր ընդ Դերջան և ընդ Եկեղեաց. յորում էին Սուրբնոյն աւան և Գորթէնիյ գեղակ, ժառանգութիւն հօրն Ս. Թէոդորոսի նահատակելոյ յաւուրս ազնուութեան Լուսաւորչին 'ի վերայ լին. 'ի ձախմէ գետոյն կայ անուանի մենաստան և ուխտատեղի նորին՝ որ կոչի Սուրբ Թորոս։

59. ԵՐԶՆԿԱՅ վիճակն որ է ԵԿԵՂԵԱՑ գաւառ յարևմտից Դերջանայ կայ, 'ի հարաւոյ խաղտեաց և Գէլգիտ վիճակի, յարևելից Կամախոյ և 'ի հիւսիսոյ Ցաժիկ լերին և Վերին կեղւոյ։ Ծանօթ 'ի Հայս վասն հին մեհենացն Անահտայ, և նահատակութեան մեծոյն Լուսաւորչի, որոյ արգելեալ զանգին և մնացմբ ժառանգեալ տառապանս նեղելով Տրդատայ՝ պատճառս եւ նմին կոչման ԼՈՒՍԱՒՈՐՉԻ ԳԱՀԱՌ. և ցարդ երևելի է այրացեալ ուխտատեղեաց վանորայիցն 'ի Սեպուհ կամ 'ի Գոհանամ լերին, որ անջրպետէ ընդ նա և ընդ Դարանաղեաց գաւառն։ Եփրատ գետ եկեալ 'ի Կարնոյ և 'ի Դերջանայ անցանէ 'ի հարաւոյ գեղեցիկ և արգաւանդ և ջերմիկ հովտին Երզնկայ, ընդունելով յաջմէ զԳօյն գետ զեկեալն 'ի Գէլգիտոյ. մերձ 'ի խառնուրդս գետակին 'ի ձախմէն կայ քաղաքն ԵՐԶՆԿԱ որ է հին աւանն ԵՐԷԶ և մեհեան Անահտայ պաշտամանց, Էրզինճան կոչեցեալ 'ի Թուրքաց. որ յամին 1045 ցամն 1784 հնգետասան անգամ և աւելի 'ի սասանութենէ երկրի մերթ կիսով և մերթ հիմնովին կործանեալ, կանգուն և չէն կայ ցայսօր. ունելով բերդ 'ի բարձու, մզկիթս և վաճառանոցս, և 4 եկեղեցիս Հայոց, յորս պաշտի և խաչ մի հին Թուղ Տրդատայ կոչեցեալ։ Բնակիչք Երզնկայ են 3000 տունք, յորս իբրև 750 Հայոց. և իբր 500 ևս տունք են յերեսնիւ չափ գեօղս և յինն չէն մենաստանս Թեմին։

60. Իսկ 'ի բոլոր վիճակին Երզնկայ են գեօղք իբրև 120 ընդ վարչութեամբ պէկի միոյ, և աւերակք եկեղեցեաց և վանորէից յոյժ 'ի նոսին։ Որոց գլխաւորք են Թիլ աւան յարևմտից հիւսիսոյ քաղաքին, ուր կանգնեալ էր պատկերն Աթենասայ՝ Նանէական դից կոչեցեալ. աստ Թաղեցան Ս. Արիստակէս և Մեծն Ներսէս, որոց նշխարք յայտնեցան յամին 1278, և շինեցաւ անդ եկեղեցի որ արդ հանգեալ է և կոչի Ջօխփօլ Հայրապետ։ — Ըղըխոթ վանք 'ի ստորոտս Սեպհոյ, շինեալ նախ 'ի Թադէէ առաքելոյ ըստ աւանդութեան և ապա 'ի Մեծէն Ներսիսէ։ Ի վերոյ նորին 'ի զառ 'ի վեր լերինն կայ Կոյնէօր վանք Ս. Ցակոբայ Մծբնայ. և ոչ հեռի անտի Ս. Մինաս վանք, ուր Յովհաննէս Երզնկացի պարապէր յաւմունս յԺԴ դարու, և միւս ևս վանք Ս. Կարապետ Մէլամբէս։ Ի հարաւային արևելեան կողմն Երզնկայ կան Ցագօլի վանք կամ Ձորշորանոց Ս. Լուսաւորիչ։— Եղնաբեր Ս. Արջառաձորին վանք և Ս. Գէորգ վանք առ Երկնոյն գեօղիւ. և անուանի քան զսոսա Մեծն Ներսէս կամ Տիրաշէն վանք. զի նախ 'ի Տիրանայ արքայէ շինեցաւ, և աստ հանգուցաւ բազում մեծին Ներսիսի 'ի գիւտի նշխարացն։ — Նշանաւոր է և Ս. Կիրակոս մենաստան կամ անապատ առ Քորք գեօղիւ։ Ի լեռնակողմանն երևին ցարդ մնացուածք խոխ և Ձմեռ արքայաշէն աւանաց, և կոչին արդ Ոսմանչէրէյի. յառաջնումն հանգեաւ Մեծն Ներսէս գեղամահ զաւեալ 'ի Պապայ արքայէ։

61. Ցարևմտից Երզնկայ կայ ԿԱՄԱԽ կամ ՔԷՄԱԽ վիճակ, որ է գաւառն ԴԱՐԱՆԱՂԵԱՑ, 'ի հարաւոյ Գէլգիտոյ, յելից Փ. Հայոց և 'ի հիւսիսոյ Ցուժիկ կայ. վասն պաշտանիցն 'ի լերին և աղային ջրոցն այդպէս անուանեալ. լերինքն արդ Տուրոֆ կոչին, և գետակք որ խառնին աստ յԵփրատ՝ Թանուջր կամ Դանաճր և Գօմէր կամ Քէօմիւր-սու որ գայ 'ի Սեպհոյ։ Գլխաւոր տեղի վիճակիս՝ (յորում են իբրև 100 գեօղք) է ԿԱՄԱԽ որ և ԱՆԻ ամրոց անուանի, գամբանարան Թագաւորացն Արշակունեաց և գանձարան նոցին և մեհենեաց տեղի և մեհենական դրուածոց. յահեկէ և 'ի հարաւոյ Եփրատայ և յարևմտից Թանաճոր վտակի. ունի բերդ կիսաւեր 'ի բարձու քարաժայռ զառիվայր և անդնդախոր յերեսս խորաձորոյ, և աշտարակ մի՝ տեղի պաշտպանութեան խորադիտեայ քեռ Տրդատայ. զի և ցարդ կոչի Գոււ Գըզը Գուլէսի. յանկոյս Եփրատայ ամբառնայ քարաբլուր բարձր, յոր ընդ գետովն գետնուղի անցք լինէին 'ի հնումն. կոչեալ է արդ ամրոցս և աւանն վասն նուաղութեան ջրոյ կամ զժուարութեան հանելոյ 'ի վեր. և կան 'ի նմա աւեր և անաւեր եկեղեցիք Հայոց, որպէս հոյակապն Ս. Հրեշտակապետաց։ Առ կամրջաւ միով ցուցանի տեղի վաղեմի Վարագդատայ զԵփրատաւ յանձուկս լեռնավայրի. և շիրիմք մնայից ոմանց մահմետականաց. ընդ որս և հին քնարանք կիսաւերք Արշակունի արանց 'ի կոչեցեալն Եղնաբեր Արջառաձորին՝ ապիւռակներ չինած։ — Հինգ վանորայք են Հայոց չէնք 'ի վիճակիս, իսկ լքեալք բազում, ևս աւուել եկեղեցիք. տունք 220 հայաբնակք։

62. Ընդ մէջ Տարախ և Սեպուհ լերանց կայ Առաք լեռան, յորում են պաշտամք և աղբիւր՝ զոր յաւադանս ժողովեալ և ցամաքեցուցեալ՝ ժողովեն զաղն. կան և այլ քարայրք աղի առ Մուրէք և Ծիրէնէ գիւղովք. զորս յիշէ Յովհաննէս Երզնկացի 'ի ներբողենի Լուսաւորչին։ Ի ստորոտս լերինն Աղցից են հին գա-

ներ կամ Գըլէ-Դէլիւզ աւերակք եկեղեցեաց և տանց: Ի Սեպուհ լերին են վանորայք անուանիք, Աւագ վանք զի 'ի Թադէէ առաքելոյ նախ շինեալ, կոչեցեալ և Գոհանայ կամ Կոհանոյ վանք, և այժմ Տէրէէվանք, յորում պահին պատուական նշխարք, և վանապահն ազգաւ ժառանգութեամբ ունի զանեղին: Ի հիւսիսոյ նորա կայ Լուսաւորչի վանք 'ի գժուարագնաց կոհակս լերինն, ուր ճգնութեան Լուսաւորչին մերոյ և հանգստեան. և 'ի վեր քան զայն գժուարելանելի և գըժուարամուտ Այրն Մանեայ, ճգնարան կուսին ընկերակցի Հռիփսիմեանց. կան առ վայրօքն և աւերակք ինչ զոր Տէրտաղօյ-քէլէ անուանեն, զի և մեծն այն թագաւոր ճգնեալ երբեմն աստանօր: Յարևմտակողմն Սեպհոյ կան Սէրօվքէնց վանք մերձ 'ի Թուանէնէր գիւղ, 'ի տեղւոջ տեսլեան Լուսաւորչին: — Յարևելից լերինն կայ Թորդան գիւղ, ուր և գերեզման Լուսաւորչին 'ի տեղւոջ մեհենին Բարշամինայ կառոյց՝ զոր կործանեցն, և անդ Թաղեցաւ մարմին նորա գըտեալ 'ի Սեպուհ. անդ կան մինչև ցայսօր գերեզմանք Որդւոց նորա և Թոռանց և տանն Տրդատայ, և կոչի տեղին Ճնն Գէրէզման: Իսկ Ջըրէհանգիւղն վանք՝ առ Էրզնկէ գիւղիւ՝ լքեալ է, նոյնպէս և Խանէէրու որ է Խնդրակատար Աստուածածին առ Մուրէհ գիւղիւ: Նշանաւոր գետք են Բոփառեճ կրկին, հայարենակք, Ո-խ-փէլ կրկին, Գոմէր, Ո-ռ-էլ, և այլն:

63. Յարևմտից Դարանաղեաց կան երկու վիճակք փոքունք ԿԵՐՃԱՆԻՍ և ՇԷՅՐՈՒՆ, սահմանակիցք Փ. Հայոց, և են ԱՌԻԻՃ հին գաւառ Բարձր Հայոց: Գլխաւոր տեղի 'ի սակաւածանօթ և լեռնավայր երկրիս է Մէլիտլէրիճ աւան, 'ի տեղւոջ հնոյն ԱՐՕՐԱԿայ կամ Արտօրակոյ քաղաքի, ուստի էր Ս. Եւստաթէոս, և անդ կան գերեզմանք նորա և ընկերացն: — Յարևելից հիւսիսոյ վիճակացս և յարևմտից Բաբերդու կայ ԳԻԼԳԻԻՑ վիճակ, Չիմէն լերամբ անջրպետեալ յԵրզնկոյ, միջասահման Հայոց Մեծաց և Փոքուն. առ են ակունք Գայլ գետոյն Եկեղեաց, և աստի անուն վիճակին Գայլ-գէտ առուգաբանի. կոչի և ՁԻԹՑԼԻԿ, և են նորա գեօղք իբրև 60: Գլխաւոր տեղի նորա է համանուն աւանն. բայց նշանաւոր 'ի հնումն էր ՍԱՏԱՂ կամ Սատաղացոց քաղաք, սահմանածայր Հայոց. որոյ աւերակք միայն կան ցայսօր. աստ գտանեան Եւստաթէոսեանք, զի հաւաքմունքեցին ունէին զգաղաքս որպէս սահման 'ի Հայոց կողմանէն:

## Գ. ԽԱՐԲԵՐԴ ՆԱՀԱՆԳ

64. Ի ԽԱՐԲՈՒՐԴ կուսակալութեան Մեծին Հայոց պարագրի աշխարհն ԾՈՓԱՑ որ է Դ ՀԱՑՔ, և ունի սահմանս 'ի հիւսիսոյ զՄնձուր, զՏուժիկ և զԿեղի (54), յարևելից զգաւառն Մշոյ և զՏիարպէքիր, 'ի հարաւոյ զնոյն Տիարպէքիր և զՈւռհա, յարևմտից զԵփրատ գետ որ ձևէ զսահմանս Մեծաց և Փոքուն Հայոց: Երկիրն լեռնային է և բնակեալ յաղատաբարոյ Քրդաց: Ընդ բովանդակ երկայնութիւն գաւառիս յելից 'ի մուտս անցանէ Մուրատ գետ այն է արևելեանն Եփրատ, եկեալ 'ի Տարօնոյ և 'ի Պալէ-

զենայ, և խառնի 'ի միւսն յարևմտեանն՝ 'ի Ֆրադ: Յաջմէ Մուրատայ որ է հիւսիսակողմն՝ կան վիճակքն Ճապաղջուր, Բալու, Չէհար-Սանճագ, Չմշկածագ, և այլ ևս վիճակք:

ՃԱՊԱՂՋՈՒՐ յարևելից կայ ընդ մէջ Կեղւոյ և վիճակաց Մշոյ և Տիարպէքրոյ, և զայդ անուն Թուի բերել վասն ջուրց իջելոց 'ի Պինկէօլ լերանց ճապաղելոց 'ի նմա մինչև խառնեալ 'ի Մուրատ-Սու. և մասն է ՀԱՇՏԵՆԻՑ գաւառի հնոյ: Գլխաւոր տեղի 'ի նմա է Չէ-ւն? գիւղ անթառ բէկի. և երկոքին գեօղքն Եօֆ-րը և Աշաղա Բոգէնկոյ? 'ի բարձունս 4800-5000:

65. ԲԱԼՈՒ վիճակ 'ի ԲԱԼԱՀՈՎԻՑ գաւառի հընում՝ կայ յարևմտից Ճապաղջրոյ և 'ի հարաւոյ Կեղւոյ, յելից Չար-սանճագայ, յարևելից հիւսիսոյ Արգանայ և Խարբերդոյ, զՄուրատ ընդ մէջ ունելով. հովիտ է բարեբեր իբր 80 գիւղորայիւք, որոց գըլխաւոր աւանն Բալու յաջմէ Մուրատայ և յելից Լէչէկ ջրոյ, 'ի բարձու 3100'. ունի բերդ ամուր, յորում պատուի անձաւանման տեղի, ուր աւանդի Ս. Մեսրովպայ ընկալեալ յաղօթս զօրինակ հայերէն տառից և ստեղծեալ զնոսին: Չորք եկեղեցիք են Հայոց 'ի Բալու և 650 տունք, աւելի ևս Քրդաց և Տաճկաց: Ի հիւսիսոյ Բալուայ կայ Հաւաւ գիւղ, և 'ի նմա Քաղցրահայեաց Աստուածածին վանք՝ առաջնորդարան Բալուայ. կայ և այլ վանք լքեալ Ս. Խաչ անուն 'ի Թիլ գեղջ: Ի հարաւոյ Բալուայ և գետոյն Թըլը կամ Թըլըխ կամ Թիլիխէ գիւղ, որ Թուի յանուն ԹԼԽՈՒՄ գաւառի, յոր աապատակեցին զորս Տուղրիլայ և Ալփարսլանայ 'ի կէս ԺԱ դարու: Ի հիւսիսոյ Բալուայ մերձ 'ի Հաւաւ՝ Խոշմաթ գեօղ մեծ, և 'ի հիւսիսոյ նորա Մէղիրէ աւան բարձր:

66. Ի մտից Բալուայ յաջմէ Մուրատայ ցխառնուրդն յԵփրատ կան չորք վիճակք մանունք Չէհար-սանճագ կոչեցեալք կամ Գարաճօր, և են ՍԱՂՄՍԱՆ որ է ՑԱՂՄՆԱՑ երկիրն 'ի միջին դարս, ՔԵՐԴԻԿ, ՄԵՆԾԿԵՐՑ և ՔԵՐԻ, ուր ԽՈՋՆԱՑ երկիր կոչէին 'ի հնումն. և 'ի մտից ամենեցուն նոցա առ Եփրատաւ ՁՄՇԿԱԾԱԳՈՒՑ երկիրն, որ այժմ կոչի ՉԻՄԻՇԿԷԶԷԿ. քաղաքն համանուն առ վտակաւ օժանդակաւ Մուրատայ յառաջն կոչէր ԾՈՐԱԳՕԼԻՍ, և զնոր անունն էառ վասն ծննդեանն 'ի նմա Յովհաննու Չմշկիկ կայսեր: Արտաքոյ քաղաքին կայ Կարմիր Սարգսի տեղի, ուր Յով. հաննէս քահանայ նահատակեալ 'ի Բալուցւոցն 1403 շինեալ էր եկեղեցի զոր առ նախանձու քակեցին Թըրքամիք իւր: Արևելեան մասն վիճակացս է հին գաւառն ԳԱՂԻՆ կամ ԳԱՂՆԱՏՈՒՆ: — Ի հարաւոյ Չմըշկածագու և Մուրատայ յարմնաձև միջոցի Եփրատայ յելից Մալաթիոյ գաւառի Փ. Հայոց կայ ՔԵԳԱՄԱՏԷՆ վիճակ, այսպէս կոչեցեալ վասն բովուցն երկաթոյ և արծաթոյ, որք 'ի լերինս յայս կայս և յայն գետոյն մերձ. որում ընթեր կայ քաղաքաւանն համանուն. և 'ի հիւսիսոյ նորա նաւակամուրջ անցից գետոյն 'ի Փ. Հայս, ուր 'ի հնումն ամբառնայր Դոմնոփոս քաղաք, իսկ յայսմ կողման նշանաւոր էր Տոմիսա բերդ, յորում պահէին զանձք Տիգրանայ Միջնոյ: Կողմանքս այսոքիկ առ նախնիս ԾՈՓՔ ՇԱՀՈՒՆԵԱՑ կոչէին:

67. Յելից Կապանայ, այն է Քէպան, կայ գըլխա-

տոյ ջերմին է և քարեբեր, անուանի ախտենեացն, որոց 40,000 անձունք ասին լինել:

72. Յարևմտից հարաւոյ Նփրկերտոյ և Խազզոյ, և 'ի հարաւային մասին նահանգիս Տիարպէքիրոյ՝ կայ գլխաւոր վիճակաց նորին և համանունն ՏԻԱՐԳԷՔԻՐ տարածեալ յերկոսին ափունս Տիգրիսի, որ ընդունի երկոտասնեակ վտակս յոլովս, յորս հզօրագոյն է Պատման-սու յահեկէ կամ 'ի հիւսիսոյ. ընդարձակ է յոյժ վիճակն և գեօղք հարիւրաւոր սփռեալք 'ի դաշտավայրս նորա և 'ի լեռնակողմանս հարաւոյ, յորս և յիսնիւ չափ բնակեալ են 'ի Հայոց, թէպէտ և չեն բազմամարդք. այլ և ոչ քաջ ծանուցեալ են մեզ հանգամանք կողմանցս: Յարևմտակողմն 'ի վերայ գետոյն Տիգրիսի կայ քաղաքն մեծ ՏԻԱՐԳԷՔԻՐ որ և ԱՄԻԴ կամ Գարա-Համիտ, և ըստ նախնեաց մերոց ՏԻԳՐԱՆԱԿԵՐՏ, բայց ըստ ոմանց ոչ գաւառակերտ Տիգրանայ Արշակունւոյ, այլ Հայկազնին: Ի քարաբլուր հրաբխի բարձրաւանդակի կայ յ'1850'. հզօր պարսպօք պատեալ 28' բարձանմբ և 72 աշտարակօք, յորս դառնեն յոյն և արաբացի արձանագիրք: Նշանաւոր շինուածք են միջնաբերդն և աւերակք հնոյ բերդին, ապարանք նահանգապետին կամ փաշային, աղաւաղայք ջրոյ, վաճառափողոցք, կարավանատունք, մզկիթք, ներկարանք. ստորերկրեայ ուղի որ հանէ արտաքոյ քաղաքին 'ի Կոանէրու Գըլու տեղի. և քան զամենայն նշանաւոր մզկիթն ընդարձակ և հոյակապ Ուլու-ճամի, որ կարծի յոմանց Տիրամօր եկեղեցին լինել 'ի Հերակլեայ, թէպէտ և չբերէ արդ զկերպարան եկեղեցւոյ. է նորա սքանչելակերտ գաւիթ սիւնազարդ: Վաճառք քաղաքին են սեկ, խաղախ, սար, մետաքս, անօթք բրտի և պղնձեայք: Բնակիչքն են 45-50,000, յորս Հայք 5 կամ 6,000. գոն և Յակոբիկք, Քաղկեդոնիք ուղղափառք, Ասորիք, Յոյնք, Հրեայք, Քուրդք և Թուրքք բազմագոյն քան զայլս: — Գլխաւորք գիւղօրայից Ամդայ են Խոզերդէ կամ Ս. Թովմաս, Քէօսի, և Սարու կամ Թալ-Մաթալ-Խաւ յարևելից քաղաքին, 40 հայաբնակ տամբք. Հայէգէ, Ալէքանոր, և այլն:

73. Յարևմտակողմն Ամդայ է վիճակն ՈԸՆՑԼԱՆ կամ ՈԷՏՈՒՐԱՆ, համանուն քաղաքաւանաւ առ Պատման գետով, 800 տամբք, յորս 100 Հայոց, այլք Եզիտեաց, որք բազմաթիւք են յայսմ վիճակի և 'ի մերձակայսն մինչև յՈւռհայ և 'ի Մուսուլ. իսկ Հայոց վիճակիս առաջնորդ թեմական նստի 'ի Կոտնուր վանս. կայ և այլ մենաստան անուանի 'ի հարաւոյ Ամդայ 'ի մէջ լերանց, Ս. Յովհաննու անուն, և ունի թեմ գեօղս սակաւ: Լերինք կողմանս Գարաճա կոչին, և 'ի Տաւրոսականն պարու համարին: — Ի հիւսիսոյ սոցա ընդ մէջ Պատման և Գիթլիզ գետոց կայ ԽԶՈՒ կամ ՀԱԶՈՒ վիճակ որ և ԽԱՐԶԱՆ, այն է ԱՐԶՆ Աղձնեաց, զոր յիշեն գիրք մեր. աւանն համանուն և գիւղօրայք վիճակիս բնակեալ են 'ի Քրդաց և 'ի Հայոց և յԱսորւոց սակաւուց: — Ի հիւսիսոյ Հազոյ և յելից Դիրէքի գաւառի կայ ՍԱՍՈՒՆՔ կամ ՍԱՍՆՈՅ ԵՐԿԻՐ լեռնային, միջասահման Մշոյ և Տիարպէքիրու, բնակիչքն Հայք և Քուրդք պղատաքարդք, որք ըստ նախնեացն տարապէս զոր Թովմաս Արծրունի նկարագրէ 'ի Ժ դարու, ցարդ զգենուն, և խարուկս ոտից ագանին, որ են ռոչերք չուանահիւս, վասն ապառաժայ և ձիւնապատ լերանց երկրին: Բերդաւանն Սասուն կայ յեզր ջրոյն Խուլփայ որ խառնի 'ի Պատման. 'ի հիւսիսոյ նորա կայ ԲՈՇԱՃԷՆ աւան համանուն վիճակի փոքու, 100 հայաբնակ տամբք. առ որով կայ վանքն և ուխտ Ս. Աղբերիկ շինեալ 'ի Թադէէ առաքելոյ, և աղբիւր բղխեալ 'ի ներքոյ սեղանոյն. 'ի թիկանց նորին ամբառնայ բարձր լեառնն ԽԱՐԶԱՆ: — Յելից հարաւոյ վիճակիս կայ Խոյթ 'ի Մուշ գաւառի: Իսկ յելից հարաւոյ Խզուայ՝ ընդ մէջ Պատման և Սէրդ ջրոց կայ վիճակն ՍԵՕՐԴ կամ ՍՂԵՐԴ, 'ի ծայրս սահմանաց նահանգացն Տիարպէքիրու, Մշոյ և Պօհտանայ Քրդաց, և թուի ԽԵՐՀԵԹՔ կամ ՍԵՐԽԵԹՔ գաւառ Աղձնեաց. որոյ աւանն Սղերդ կամ Սէրդ կայ 'ի բարձու դաշտի, քարակերտ տամբք. վասն որոյ ոմանք զսա կարծեցին Տիգրանակերտ զշինեալն 'ի Միջնոյն Տիգրանայ: Բնակիչք 5,000, յորս և 100 երդ Հայոց: Քուրդք ունին զկողմանքս:

## Ե. ԳԱՒԱՌ ՄՈՒՇ ԵՒ ԲԱՂԷՇ

74. Կողմնակալութիւն ՄՇՈՅ, որ ունի գրեթէ զսահմանս հնոյ աշխարհին ՏՈՒՐՈՒԲԵՐԱՆԻ, և յանուն գլխաւոր գաւառի նորին՝ ՏԱՐՕՆ կոչի և ցայսօր, ոռոգեալ 'ի Մուրատայ, սահմանի յարևմտից Տիարպէքիր նահանգաւ 'ի Սղերդայ ցՃապաղջուր, 'ի հիւսիսոյ՝ Էրզրումաւ՝ 'ի կեղւոյ ցՇէռեան լեառն և մասամբ Պայէզիտոյ, յարևելից՝ Վանաւ, և 'ի հարաւոյ Պօհտան երկրաւ Քրդաց, ընդ մէջ Վանայ և Տիարպէքիրու: — Յարևմտակողմն գաւառիս Մշոյ՝ վիճակք են 'ի հարաւոյ Կարնոյ և 'ի մերից Բասենոյ՝ ՇՈՒՇԱՐ և ԹԷՔՄԱՆ 'ի լեռնավայրս հնոյ ՄԱՆԱՆԱՂԻ գաւառի Բարձր Հայոց. յորս բղխեն արևմտեայ վտակք Երասխայ և խառնին 'ի Բասեան. Թէքման ունի աւան համանուն, և զՄանանողի գեօղ և զԹարխուն աւան, և զՔէուլի, որոյ բնակիչք Հայք գաղթեցին 'ի Ռուսս:

75. Ի լեռնավայրս Պինկէօլայ կայ ԿԷՕՏՆԻՒԿ վիճակ, և յարևելից նորին ՎԱՐԴՈՅ կամ ՎԱՐԴՈՀ, ուր Հօրմօլու տոհմ Քրդաց սփռեալ է. են ընդ նոսին և Հայք աղաւակեացք ցրուեալք 'ի 40 գեօղս, որոց գլխաւոր է Պուլան աւան առ Չարպահուր վտակաւ: Ի լերինս վիճակիս աւեն լեալ զգրախտն Ադամայ: —

Ի հարաւոյ սորա կայ ԳՕԿԼԱՆ վիճակ սահմանակից Ճապաղջրոյ, և 'ի նորին հարաւոյ ԿՈՒԾ և ԽՈՒԼՓ 'ի լեռնակոհակ երկրի յափունս Արածանւոյ. Քուրդք ունին զսոսա. գլխաւոր գեօղք են Շէն, Նէրմէկ կամ Նէրմիկ? են և Հայոց տունք, որոց առանձին թեմ է Խուլփ: — Ի հարաւոյ Խուլփայ ընդ մէջ Սասնոյ, Խզուայ և Մշոյ կայ ԽՈՅԹ վիճակ լեռնային, և 'ի նորին հարաւոյ՝ ՍՈՒՍԱՆ, որոց հանգամանք և բնակչացն՝ նման են Սասնոյ, մասն գոլով նորին հնոյ գաւառի: Առաջնորդ Հայոց կողմանցս նստի 'ի Մարին Առաքելոց (Գետառաջ) վանս, մերձ 'ի Մարաթ լեառն. ուր պահի մասն առաքելապետին բերեալ յառաջ քան զԺ դար 'ի Հայս՝ յաւանէ միոջէ որ գնաց 'ի

Հռովմ արձակել 'ի բանադրանաց քահանայի գեղջ Խարայ, որպէս պատմի 'ի Ցայսմաւուրս և 'ի հին Տօնականս. և գիւղն այն կոչի Գում Բծրայրէ, և վիճակն ԿՈԳՈՎԻՏ և ԾԱՂԿՈՏՈՒՆԻՔ: — Ի հարաւոյ սորա և բովանդակ Մշոյ գաւառին կան ՋԸՐԸԳՈՏՆՈՒ վիճակն և ԽՈՒԶՈՑ 'ի հարաւոյ Բաղիշու, համանուն աւանաւ. և ՀՈՒՐՈՒԱՑ 'ի մտից հարաւոյ նորա, յորում նշանաւոր է Շէրլան գօլէօ բերդ:

76. Ցարևելից հիւսիսոյ վիճակացս և յարևմտից Ծովուն Վանայ՝ կայ անուանի գաւառն ԲԱՂԻՇՈՒ ; յանուն քաղաքին որ և ԲԻԹԼԻՍ կոչի առ համանուն գետով, 'ի բարձու 4837', 'ի կէս երից ձորոց՝ որոց վտակք օժանդակեն զՏիգրիս, և 'ի հնումն կոչէին ՍԱՂՆՈՑ-ՋՈՐ, որ է գաւառ Աղձնեաց. քարաշէն են տունք և այլ շինածք քաղաքին և կամուրջք, և զուարճանան գրիւք և պարտիզօք, առողջասուն օդով և ջրով. ունի բերդ ամուր 'ի բարձու, այլ խանգարեալ և ամայի, մզկիթ հոյակապ առ նմին և կարաւանատունս, ապարանք վիճակալեանին՝ որ է պէկ, կան 'ի կոհակ մի լերին 'ի միջավայրի արևելեան ձորոյն, իբրև 280' բարձր քան զքաղաքն, դիտակ անսարանաւ: Վաճառք քաղաքին են կտաւք և խաղախ, ցքի, ծխախոտ, խէժ և պտուղք: Բնակիչք 3 կամ 4,000 տուն, յորս 800 Հայոց, որոց են չորք եկեղեցիք 'ի քաղաքին, և չորք արտաքոյ 'ի մենաստանս, որ են Ամրթլու վանք, Խնդրակատար Աստուածածին, Աղէխոս Աստուածածին և Գոմաց կամ Տօփրօբէնալ Աստուածածին. առաջինն՝ որ առուգաբանի Ամլորդւոյ վանք, այսինքն Յովհաննու կարապետի, պայծառացաւ վարժարանաւն յեւս ԺԶ և 'ի ԺԷ դարու, և յեկեղեցւոջ նորա մեծի հանգչին Վարդան և Բարսեղ գիտնական վարդապետք: — Ի գիւղորայս Բաղիշոյ՝ որ համարին 80իւ չափ, նշանաւորք են Ծապաքոր ցրտաբուխ աղբերք 'ի վիմէ: — Ըղէ, յորում ուխտատեղի Ս. Յակովբայ Եղբօր տեառն: — Գօռ, առ որով վանք Ս. Յովհաննու կամ Նարէկոցոյ: — Խուլթիկ աւան մեծ 400 հայ տամբք: — Ծաղֆար ապառաժ յարևմտից Ամպայ, ընդ որ բացեալ կայ հուն անցի կարաւանին իբր 20' ընդ երկայն: — Ի հիւսիսոյ քաղաքին ձգի Ռահվայ ձորահովիտ ընդ արևմուտս 'ի Մուշ, ընդ որ անցանէ կարաւանն, և լինի 'ի նմա բուք ձեան անհնարին, վասն որոյ խչեանս քարաշէնս շինեալ է անդ, յորս նշանաւոր է կոչեցեալն Ալամէտ յարևելակողմն:

Ցելից Բաղիշու ընդ մէջ ծովուն և Խիզնայ կան ՏԱՏԻԿ և ԿԻՒԶԻԼՏԷՐԷ փոքր վիճակք, առաջինն կրէ զանուն միոյ 'ի գաւառացն Աղձնեաց, որոյ գլխաւոր տեղի լեալ Թուխ Դոփոանն աւան յարևմտեան ծովեզեր Վանայ ենթահանգիստ վաճառաբարձ նաւուց:

77. Ի հիւսիսոյ Բաղիշու և 'ի Ռահվայ ընդ արևմուտս մինչև 'ի Վարդոյ ձգեալ տարածանի դաշտն և վիճակ ՄՇՈՅ, որ է ՏԱՐՕՆ գաւառ հին, 'ի հարաւոյ ունելով զՍԻՄ լերինս Սասնոյ, Խուլփայ և Խութայ, 'ի հիւսիսոյ զՊուլանուխ և զԽնուս վիճակս. Մուրատ յարևելից իջեալ անցանէ ընդ դաշտն ընդունելով յաջմէն զՔարաղահուր որ 'ի Պինկէօլէ գայ, և զԿԽԾ՝ որ 'ի բարձանց քարաժեռից անկանի 'ի նա, և յահեկէ զՄեղրագէտ որ և Գօրասու՝ որ 'ի Նեմրութ լերին բղխէ: Հարթածաւալ բարձրաւանդակ է դաշտն Մշոյ 3,500–4,000' բարձր, և ՁՈՐԽՈՒՐ կոչի արևելակողմն. քաջ մշակեալ և յոյժ բարեբեր է, անուշօդ և քաղցրաջուր ըստ հին նկարագրին Զենոբայ. նշանաւոր ևս է ամենայն յիշատակօքն կրօնական, ուսումնական և արիական հանգիսից նախնեաց մերոց, և մանաւանդ Թարգմանչացս և սոյն Մամիկոնէնից: — Գլխաւոր տեղի գաւառին է ՄՈՒՇ քաղաք յարևմտակողմն, 'ի ստորոտս Սիմ անուանեալ լերանց 'ի նախնեաց, որ և Ցաւրոսական լերինք ըստ նոցա. առ ձորաբերանով, բլուր 'ի միջի ունելով և բերդ աւերակ, և առ վտակաւ օժանդակաւ Մեղրոյ. չէք նմա շինուած նշանաւոր և ոչ ճարտարութիւն արուեստից քաղաքին, որոյ վաճառք են արգասիք երկրին, մեղր, գազպէ, ծխախոտ, չամիչ, գինի, և այլն: Բնակիչք իբրև 8,000. յորս 700 տունք են Հայոց արևելեայց և հռոմէականաց, և հինգ եկեղեցիք: Եւ 'ի 100իւ չափ գիւղորայս Մշոյ են իբրև 22,000 ոգիք Հայք. այլ բնակիչքն Քուրդք են չինակեացք:

78. Նշանաւոր տեղիք Մշոյ են 'ի հարաւոյ Մեղրագետոյ. յելից քաղաքին Մօկօնք գիւղ, և մերձ նմին 'ի լերինն Աղէէրդ (Աստղկանաբերդ) և Կոփոտափոր բերդ: — Երկժամու յելից հարաւոյ քաղաքին կայ Առաքելոց վանք անուանի որ և Ղլըրու վանք, առ ստորոտս ԾԻՐՆԿԱՏԱՐ լերին. տաճար եկեղեցւոյն շինեալ է 'ի Լուսաւորչէն և ամփոփեալ ընդ բեմաւն զնշխարս Առաքելոց. յարևելից պարապոց վանացն կան խաչաթոռք արձանք գերեզմանաց Թարգմանչացն Դաւթի Անյաղթի, և այլոց ոմանց: Առաջնորդի վանացս Թեմ են գիւղորայք հարաւոյ Մեղրագետոյ. յորոց մի է և Խասքէօյ աւանագեղ, և Նորշէն կամ Թօբէնի-Նօրշէն վասն բնակչացն հռոմէականս գոլոյ. 'ի հիւսիսոյ վանացն. կայ և Քուրդ-Նորշէն հեռագոյն ընդ մէջ Գրգռոյ և Նեմրութայ: Ցարևմտից քաղաքին 'ի նմին կողմն գետոյն կան Խուրծնք և Խուրնի գեօղք, յառաջնոյն ծագեցաւ մեծն Մովսէս քերթողահայր և պատմահայր մեր. երկրորդն Թուի Հոռէանս աւան լինել 'ի հնգկրազարմ քրմաց Դեմետրի և Գիսանեայ: Մերձ սոցա 'ի լերին կայ Ս. Յովհաննէս Եղրդուտ վանք շինեալ 'ի Լուսաւորչէն, յորում պահէր չէմ իւղոյն որով Տէրն մեր օծաւ, և աղ Արևմաթացւոյն: — Իսկ 'ի հիւսիսակողմն կամ յաջմէ Մեղրագետոյ կայ Խառին կամ Հաոէն գիւղ, հայրենիք մեծին Մեսրովպայ հեղինակի տառից և հօր հայերէն դպրութեանց. — Ալինչ, Քրդագոմ, Վարդենիս, և այլն:

79. Այս ամենայն յահեկէ և 'ի հարաւոյ Արածանւոյ կայ. իսկ յաջմէն որ է արևմտեան հիւսիսային և լեռնային մասն վիճակին՝ նշանաւոր տեղիք են Ս. Կարապետ 'ի ծայրս սահմանաց Մշոյ վեց ժամու հեռի, 'ի սահմանակցութեան Վարդոյ, 'ի Քարքէ լերին իբր 6000' բարձր. անուանի ուխտատեղի Հայոց. որ 'ի Թուրքաց Չանկլը-քիլիսէ կոչի վասն զանգակատանն, կառուցեալ յԻննակնեան տեղիս պաշտամանց դիցն Հնդկահայոց, զորս քնջեալ Լուսաւորչին՝ նուիրեաց զտեղիս առ Ս. Կարապետն, առաջնորդ վանացն կարգեալ զասորին Զենոբ Գլակ, վասն որոյ

և Գըլըճօյ Հան կոչեցաւ, որ բազում անգամ աւերեալ 'ի Պարսից և աւարեալ 'ի Քրդաց, շէն և կանգուն կայ պարսպօք ամրացեալ: Յատանձին մատրունս եկեղեցւոյն պահին նշխարք Ս. Կարապետին և Աթանագինեայ, Ս. Սոփիանոսի և այլոց սրբոց. Լուսաւորչի գաստուակերտ հանգստի մատուռն Ս. Յարութեան: Արտաքոյ պարսպացն կան մատրունք հանգստարանաց Ս. Անտոնի և Կրօնիդեայ և Եօթանց խոստովանողացն, և հեռագոյն Ճգնարանք նոցա և գերեզմանք ուխտին: Առաջնորդ վանացս ունի թեմ զհիւսիսակողմն Մեղրայ, և միաբանքն են իբրև 30 ոգիք. յառաջ քան զսակաւ ամս ուղղեցաւ անդ և վարժարան մանկանց: — Յարևելից վանացս ժամուք հեռի կայ Աշիւլուք որ է Յուշից աւերակք բազմամարդ պաշտամանց գեղջ, ուր զառաջին եկեղեցին կանգնեաց Լուսաւորիչն, որ կործանեալ և նորոգեալ, արդ 'ի մատուռն մի եկեղ փոխեալ է. յորում ամփոփեալ կան նշխարք մեծին Սահակայ Պարթևի և դստեր նորին Ռուշանայ: Ի հարաւոյ նորա և մերձ յԵփրատ կան Մոփրաղխանէ կամ Մանրաղխանէ, յորում ամփոփեաց Լուսաւորիչ զմանր նշխարս Ս. Կարապետին: Մերձագոյն յԵփրատ 'ի հիւսիսոյ՝ կայ Ոզնէլուր բերդ 'ի սրակատար բլրի, ուր ամրանայր Ալայէտտին բռնաւոր, վասն որոյ Օսմանեանք քանդեցին զբերդն: — Ի հարաւոյ նորա կայ Սուլուխ գեօղ և կամուրջ երկայն 14 կամարօք 'ի վերայ Մուրատայ, շինեալ յաւերակաց Աշտիշատայ 'ի Լենկթիմուրէ: — Ի հարաւոյ Ս. Կարապետին կայ Կօրչիան գեօղ, առ որով Մուրատ (որ և Եփրատ) ահեղ գնդաձայնութեամբ իջանէ ընդ զառիվայր ձորս յորդահոսան և քարավէժ ալիւք և անցանէ 'ի վիճակն Կինճայ:

80. Յարևելից Մշոյ և յարևմտակողմն ծովուն Վանայ, 'ի հիւսիսոյ Բաղիշու և 'ի հարաւոյ Պուլանըղայ՝ կայ վիճակն ԽԼԱԹ, 'ի ԲԶՆՈՒՆԵԱՑ գաւառի Վասպուրական աշխարհի, յորմէ և ծովն անուանեցաւ Բզնունեաց Ծով: Ի սմա ամբարձեալ Նեմրովթայ լեառն՝ Նէմրութ կամ Մանրութ կոչեցեալ, իբրև 9–10000՛ բարձրութեամբ, և է հրաբուխ շիջեալ, ջրակէր բաժակաւ, զոր և շատամօրան աղբեր Մեղրայ գետոյն ասեն լինել: Ի հիւսիսակողմն նորին կայ Նազըք լիճ (18) կամ Նազիկ, և 'ի հարաւակողմն Ըղըբա—թարէ անուանեալ անհեթեթ քարինք 50 կամ 60 եղեալք 'ի դաշտին, զոր ուղտաբանակս ասեն լեալ Նեմրովթայ և 'ի քար փոխեալ՝ ցասմամբ Աստուծոյ, որ և զգաստակերտ նորա 'ի գլուխ լերինն՝ ջրատոյլ արար: — Քաղաքն ԽԼԱԹ մայրաքաղաք Բզնունեաց 'ի հնումն, և ԱԽԼԱԹ ըստ Արաբացւոց՝ կառուցեալ է 'ի հիւսիսային արևմտեան ծայր ծովուն 'ի սարահարթի խոնարհելոյ 'ի ծովն կոյս հրաշագեղ իմն և աննման դրիւք, լերամբք 'ի թիկանց, կապուտակաւ ծովուն զառաջեաւ և շուրջանակի պարտիզօք զուարճացեալ. պայծառանայր 'ի միջին դարս հարստութեամբ Թուրք Թագաւորաց Շահի Արմէն կոչեցելոց, որոց մնացուածք գաստակերտից և շիրիմք հոյակապք և վայելչազարդք, քարանձաւք ձեռագործք, խուռն գերեզմանք և մահարձանք մահմետականաց, և բերդ աւերակ առ ծովեզերբն, յիշեցուցանեն զնախնիքն փառսն. իսկ այժմ աւեր և ամայի՝ բնակեալ է 'ի Քրդաց իբրև 100 տանց: — Ժամու հեռի 'ի Խլաթայ կայ Մաղնէջանք 'ի կողս լերին, շինեալ 'ի Թօգէէ աւազակէ, ըստ աւանդելոյ տեղացեաց. որք և ցուցանեն անդ զշիրիմն Դիոնեսոս որմապատ մատրանաձև, զի 'ի նմա ասեն չքացեալ զխուզ. առ ստորոտով նորին բղխեն աղբերք սառնորակ և ականակիտ ջրոց, և 'ի վիմաց քանդակեալ են խաչք:

81. Յարևմտից հիւսիսոյ Խլաթայ կայ ՊՈՒԼԱՆԸՂ վիճակ, բաժանեալ 'ի Վերին և 'ի Ստորին, առ կողն ԳՈԲ, որպէս և լճակն Խաչլու որ 'ի սահմանս նորա, յորմէ ելանէ և առու Կօփ—սու կոչեցեալ. և առ նմին գիւղն Կօփ 150 տամբք. և յերբ Վանուն Կօփայ յանուն Ս. Դանիելի ծերոյ: Վերնոյն Պուլանըղայ գլխաւոր գիւղ է Եօնճալու 100 տամբք. բնակիչք վիճակիս են Քուրդք և Հայք կորովիք: — Յարևմտից վիճակիս ձգի Պիլէճան կամ Պիլէճան լեառն՝ ընդ հիւսիս 'ի Մուրատ գետ և ընդ հարաւ 'ի Նազըկ լիճ, յորոյ գագաթան զբօսնուն բնակեալ երբեմն Պարոշայ (Պաոշ) ուխտին Թագաւորի, և որդւոց նորա գահավիժեալ 'ի լճակն Կոպայ 'ի յափշտակել զկայծակնաթափ Թուր հօրն իւրեանց, և հեղձեալք 'ի նմին տակաւին հագիք նոցա ասեն պայքարին 'ի ջուրսն ուրբաթու ուրբաթու: Յայն կողմն լերինն՝ այսինքն է յարևմուտս՝ կայ փոքրիկ վիճակն ԼԻՋ, համանուն գիւղիւ մերձ 'ի Մուրատ, 60 հայաբնակ քարաշէն տամբք: — Ի հիւսիսոյ Պուլանըղայ, յելից Վարդոյի և 'ի հարաւոյ Թէքմանայ (71) կայ ԽՆՈՒՍ վիճակ, յորում խաղան Դուզլու—չայ և Գօլէ—սու և իջանեն 'ի Մուրատ 'ի Պուլանըղ. հովիտ է ընդարձակ, 'ի հարաւոյ ունելով զլերինս Խամուրէերէ, Ջէպնադ և Խամուր, և աղաջուր աղբերս շատ, յորոց շահ մեծ է. առ Դուզլա ջրով կայ 'ի բարձու բերդաքաղաքն փոքր ԽՆՈՒՍ որ է Խնունեան հին, հզօր պարսպօք և քարաշէն կամրջօք 'ի վերայ գետոյն, զորով կան և աւերակք եկեղեցեաց: — Յելից Խնուսայ և 'ի հիւսիսոյ Դուզլայ գետոյ կայ փոքրիկ վիճակն ԿԷՕԴՍՈՒ 'ի հարաւոյ Բասենոյ. յորում Ծոհրաղէն գեօղ և Կէօթօն բնակեալ 'ի Քրդաց:

82. Յելից վիճակացս կայ ՄԱՆԱԶԿԵՐՏ կամ Մէլազկերտ վիճակ, 'ի հարաւոյ Քէլիթ—Կէօլ լերանց Պայէզիտոյ և յարևմտից կուսակալութեան Վանայ, 'ի հիւսիսոյ Խլաթայ, և ունի զհին գաւառն ԱՊԱՀՈՒՆԻՍ մասամբ ՀԱՐՔայ: Քաղաքն ՄԱԼԱԶԿԵՐՏ որ է ՄԱՆԱՒԱԶԱԿԵՐՏ շինեալ 'ի Մանաւազայ յորդւոյ Հայկայ՝ կայ յահեկէ Մուրատայ, առ փոքու վտակաւ. երբեմն աթոռ իշխանաց Որդունեաց և եպիսկոպոսի. 'ի ԺԱ դարու պաշարեալ 'ի Տուղրիլայ վայրապար, առաւ ապա յԱլփարսլանայ և աւերեցաւ. կիսաւեր կան ցորդ պարիսպք նորա հզօրք և բերդն, յորում նստի կողմնակալն. բայց բնակութիւն քաղաքին նուազեալ է, 'ի Քրդաց սակաւուց և 'ի Հայոց տանց իբր 50: Կամուրջք հաստակառոյցք արկեալ կան 'ի վերայ գետոյն և 'ի վերայ օժանդակի նորուն Սարը—սու կամ Բաթիշանք կոչեցելոյ: Յարևմտից քաղաքին կայ Օծին գիւղ աւերակօք հին շինուածոց. աստ թուի գումարեալ ժողովոյ Յովհաննու Մանազկերտցւոյ: — Գառըլին գեօղ յելից հիւսիսոյ քաղա-



Պայէզիտ. — Bayezid.

քին առ համանուն լերամբ, ուր և Մնձուր գետ և աւերակք: — Հիւսիսակողմն Մալազկերտոյ ԹՕՓԼՈՒ կոչի և բազում շինից աւերակք են անդ, և եկեղեցին երեւելի է, և Թուբ ԴԱԼԱՌ գաւառ Տուրուբերանի:

## Զ. ՊԱՅԷԶԻՏ ԳԱՒԱՌ

83. ՊԱՅԷԶԻՏ կուսակալութիւն անձուկ է սահմանաւ, և ձգի յարևելից 'ի սահմանակցութենէ բաժնի Ռուսաց և Պարսից՝ յարևմուտս ցԲասեն. 'ի հիւսիսոյ սահման ունելով զմասն Բասենոյ և զԿաղզուան Ղարսայ, 'ի հարաւոյ զՄալազկերտ և զՎահանգն Վանայ: լերամբք բարձամբք պարապեալ ամենուստ, յորոց և Բարձրն Այրարատ 'ի հիւսիսոյ արևելակողմանն անջրպետ ընդ բաժինն Պարսից. և Ալա-դաղ 'ի միջավայրս հարաւակողման, յորմէ բղխեն արևելեան ակունք Եփրատայ, որոյ ընկալեալ և յարևմտից կողմանէն վտակս յոլովս՝ առատանայ և խաղայ ընդ հարաւ 'ի Մալազկերտ: — Յարևմտակողման նահանգիս առաջին միճակ է փոքր՝ ԽԱԼԻ-ԵԱԶԸ ընդ մէջ Բասենոյ և Թօրլուի, ջրաւէտ և խոտաւէտ երկիր դաշտաձև լեռնապատ. յորում առ Տօղար կամ Տօհէր գիւղիւ յերեսս քարալերին միմափորեալ կայ սեպագիր տախտակ մեծ, և կոչի Եազըլը-դաշ ինքն և լեառնն, և գետակն մի Քրդաց առ նովաւ: 'Ի հիւսիսոյ միճակիս միջասահման նորա և Բասենոյ և Ալաշկերտու ամբառնայ արտևաստր Քէօսէ լեառն, որ է Մօսի կամ Մօսիսեան, եւ և Ջրոփաղն վասն բազմութեան աղբերականցն, իբրև 9000' բարձր. անուանի ուխտատեղի վասն նահատակութեանն 'ի նմա սրբոց Ոսկեանանց Քոչկց, որոց և նահատակութեան տեղին և աղբիւրն բղխեալ 'ի նոցին աղօթից՝ ցուցանի առ ստորոտովն. 'ի հնումն միճակէր Բագրևանդ գաւառի:

84. ԱԼԱՇԿԵՐՏ միճակ ընդարձակ, յելից Խալիճազեայ, 'ի հիւսիսոյ Խամուրայ, յարևմտից Նահիէի և 'ի հարաւոյ Ըահեող լերանց, որք անջրպետեն զԿաղզուան: Միջավայր գաւառիս յոր ձապաղքն բաղուկք Եփրատայ՝ դաշտավայր է ընդարձակ, 5000' և աւելի բարձր, պարարտ և գեղեցիկ. գլխաւոր տեղի գաւառին է ԹՕՓՐԱՔԳԱԼԷ քաղաքաւան, 'ի հնումն ՎԱՂԱՐՇԱԿԵՐՏ, 'ի ստորոտս Ըահեօղի 'ի բարձու 5948', առ վտակաւ փոքու, պարսպօք և բերդաւ 'ի սրածայր բլրի, զոր փոքր մի խանգարեցին Ռուսք, և զՀայ բնակիչս երկրին 'ի գաղթել տարան. և միան այժմ յաւանին 80 տուն Հայոց և իբր 200 Տաճկաց: Իբրև 40 գեօղք են Ալաշկերտոյ: — Յելից Ալաշկերտոյ կան ՆԱՃԻԷ և ԽԱՄՈՒՐ միճակք. առաջնոյն գլխաւոր գեօղն է Օնճուլ. Գուրգիւլիւէ՝ յաջմէ Եփրատայ-երկրորդին բերդաւանքն Խամուր և Ըան-Գոլէ յանհեկէ կամ 'ի հարաւոյ գետոյն:

85. Յելից սոցա կայ միճակն ՏԻԱՏԻՆ, յարևմտից Պայէզիտու. 'ի սմա են ակունք Եփրատայ յարևմտեան հարաւային ծայրի, ուր ամբառնայ Ալա-դաղ. այն է լեառն Ծաղկէոյ 10,000' բարձր. և յելից նորա Ոսկի, տեղիք ծննդեան և նահատակութեան Ս. Ոսկեանց, 'ի գաւառի ԾԱՂԿՈՏՆ. որոյ գլխաւոր տեղի ԶԱՐԵՀԱՒԱՆ Թուի մերձ կամ նոյն ինքն ՏԻԱՏԻՆ, յաջ-



Դղեակ Պայէզիտայ. — Le Chateau de Bayezid.

մէ Եփրատայ. բերդաւոր, այլ անշքացեալ վասն գաղթելոյ Հայոց։ Ցարեւմտից հիւսիսոյ նորա որպէս և Ալատաղ լերին՝ ամբառնայ երկայնանիստ գագաթամբ լեառն Նպատ, յորում յաղօթս կացեալ Մեծին Ներսիսի գիտէր զպատերազմն Հայոց և զյաղթութիւն ընդդէմ Պարսից 'ի Ձիրաւ դաշտի՝ որ ձգի ընդ մէջ Նահճէի և Տխտախնայ. և յանուն նորին կայ ցարդ գետղ մի յաջմէ Եփրատայ. և 'ի գագաթան լերինն մատրունք աղօթատեղիք Ներսիսի. 'ի հիւսիսային արեւելեան ստորոտս լերինն առ Եփրատ գետով կայր Բագաւան տեղի պաշտաման դից և հանդիսից, մերձ գոլով և 'ի Ըռհաղիճան լեառն, զոր նուիրեաց Լուսաւորիչ՝ որբոյ Կարապետին, անդ մկրտեալ զՏրդատ արքայ բիւրուք աշխարհագումար բանակի նորին. և կանգնեաց եկեղեցի, որ այժմ կոչի Իւչ-քիլիսէ, և է մի յանուանի ուխտատեղեաց Հայոց և 'ի հրաշակերտոյց ընդարձակ տաճարաց, որ կանգնեցաւ օժանդակութեամբ Հերակլեայ կայսեր 'ի վերայ փոքու գրիգորաշէն եկեղեցւոյն յամին 634-9, և ցարդ կանգուն և չէն կայ և հիացուցանէ զանսողս. քառորդաւ հեռի յեկից վանացն կայ տեղի մկրտութեանն Հայոց, և խաչագրոշմք յոլովք փորեալք 'ի քարաժեռի առընթեր։ — Ի հիւսիսակողման միճակիս կայ լիճն Պալըգըլ փոքու կղզեկաւ, յորմէ ելանէ գետ համանուն և օժանդակէ զԵրասխ 'ի Նախջուան գաւառի։

86. Ցեղից Տխտախնայ ընդ մէջ գաւառաց Ռուսաց և Պարսից և Բերկրոյ միճակի Վանայ, կայ միճակն կամ բնիկ գաւառ ՊԱՅԷԶԻՏ, տարածեալ 'ի ԿՈԳԱՅՈՎԻՏ և 'ի ՄԱՍԻԱՑՈՑՆ հին գաւառս Այրարատայ։ Գլխաւոր տեղի գաւառին է քաղաքն ՊԱՅԷԶԻՏ 'ի զառիվայրի քարալերին հայելով 'ի խոր անդունդս, ունի բերդ և գեղեցիկ ապարանս կուսակալի՝ 'ի բարձու իբրու 6000'. բարգաւաճեալ է վաճառականութեամբ ընդ Պարսս, այլ անշքացեալ և նուազեալ 'ի սակս պատերազմաց Ռուսաց յամին 1828, և յայսմ եւս ամի (1854), յորում Ռուսք դարձեալ տիրացան նմին հարեալ զՕսմաննեանս բանակեալս առ քաղաքաւն, և առ վայր մի թողեալ՝ դարձեալ առին և սկսան ամրացուցանել զայն։ — Ի հիւսիսոյ Պայէզիտայ կայ Ջանիքէաղըր աւան. և 'ի նորին հիւսիսոյ յահեկէ Պալըգըլ գետոյ Արծափ, որոյ անուանի էր բերդ 'ի հնումն. 'ի նմին կողման էր և Դարաւնից վանքն կամ Դարոյնք ուր Աշոտ իշխան յԺ դարու շինեաց զմեծ տաճարն Ամենափրկիչ, և եդ 'ի նմա զփրկչական պատկերն զբերեալն 'ի Կոստանդնուպօլսոյ, որ արդ պահի յէջմիածին. բայց ոչ գիտեմ թէ մնայ ինչ 'ի տաճարէն։

## Ի. ՎԱՆ ՆԱՀԱՆԳ

87. ՎԱՆԱՅ կուսակալութիւն որ յերկրին Քրդաց բովանդակի, սահմանս ունի 'ի հիւսիսոյ զՊայէզիտ նահանգ, յարեւմտից զՄուշ, 'ի հարաւոյ զՔրդստան ընդ մէջ Ճէզիրէ և Մուսուլ գաւառաց, յարեւելից

զՊարսից Հայաստան կամ զԱտրպատական: Մեծ մասն ընդարձակ նահանգիս սակաւածանօթ է արդ. սակս Քրդաց բանակալութեան, բաց 'ի մերձաւոր սահմանաց Ծովուն Վանայ, որ և Բզնունեաց ծով, և է սա մեծագոյն ամենայն լճաց Հայոց և համօրէն արևմտեան Ասիոյ, իբրև 80 մղոն ընդ երկայնն 'ի Դատուանայ ցմուտս Պանտումահի գետոյ 'ի Բերկրի, և աւելի քան զքառասուն ընդ լայնն յՈստանայ ցարևմտակողմանս Արճիշոյ, տարածութիւն երեսացն իբրև հազար երկերիւր մղոն քառ: Ջուրն աղի և բորակուտ է, և բերէ առատապէս Տառեխ ձուկն միայն, ընդունի գետս և վտակս իբրև 40 'ի շրջակայ բարձրաւանդակացն, բարձր գոլով և ինքնին 5130'. և տակաւ ընդարձակի յորդութեամբ ջուրցն ընդունելոց. արևելեան հիւսիսային կողմն, պարանոցաձև երկայնեալ է ընդ մէջ Բերկրոյ դաշտին և Արճիշոյ, և պարագրի նոքիմբք. և Արծկէով 'ի հիւսիսոյ, Խլաթաւ և Բաղէշով յարևմտից, Գաւաշաւ և Ոստանաւ 'ի հարաւոյ, և Վանայ վիճակաւն յարևելից. և յամենայն կողմանց ունի բարձրակատար լերինս: Ի հնումն ընդ մէջ կայր աշխարհաց Տուրուբերանի, Աղձնեաց և Վասպուրականի, և համարեալ էր ընդ գաւառս յետնոյս, այսինքն է 'ի Բզնունիս և 'ի Ռշտունիս և 'ի Տոսպ և այլն:

88. Յարևմտակողմն հիւսիսոյ ծովուն և Նահանգին և յելից Խլաթոյ կայ վիճակն ԱՐԾԿԷՈՑ որ այժմ կոչի ԱԼՃԱՎԱԶ կամ Ադիլճէվազ, մասն հնոյն Բզնունեաց, որոյ գլխաւոր տեղի է ԱՐԾԿԷ քաղաքաւան յեզր ծովուն, յոր տապատակեալ ջուրցն գրաւեալ են զմասն ինչ նորա և զբերդն գլխովին. բայց է նորա և վերնաբերդ 'ի բարձու և պարիսպք 'ի զառիվայրի, այլ սակաւաբնակ. անուանի է առումն քաղաքին 'ի Տուղրիլայ 'ի ԺԱ դարու, յորում չէն էր յոյժ. 'ի հիւսիսոյ արևելից նորին 'ի գեղագիտակ լերին կայ ուխտն Սքանչելագործ, յանուն խաչին որ ունի զմասն տաշտի յոր լուացաւ Քրիստոս: — Ի հիւսիսակողման վիճակին ամբառնայ Սիփան լեառն բարձրակատար իբրև 11,000'–13,000'. լճակք մանունք գտանին առ ստորոտովքն: — Ի հիւսիսոյ Արծկէոյ ընդ մէջ Մելազկերտոյ և Խամուրայ և Արճիշոյ կան ԲԱԳՆՈՑ և ՍԱՐԸՍՈՒ վիճակք յԱՂԻՈՎՏԻ հնոյ, դաշտավայր խոտաւէտ, արօտք արածականաց Քրդաց, յորոց Հայտէրանլը տոհմ գրաւեալ ունի զհիւսիսակողմն ծովուն: Գլխաւոր տեղի է ամուրն Բագնոյ:

89. Յելից հարաւոյ սոցին կայ ԱՐՃԷՇ, 'ի մօտից Բերկրոյ և 'ի հարաւոյ Պայէզիտու և է հին երկիր ՔԱՋԲԵՐՈՒՆԵԱՑ և ԱՐՃԻՇԱԿՈՎԻՏ գաւառ, զոր արդ Քուրդք ունին: ԱՐՃԷՇ քաղաքաւանն անուանի 'ի բերան գետակի համանուան յեզր պարանոցաձև ծովուն, գրաւեալ է 'ի ջուրցն մեծաւ մասամբ, վասն որոյ և լքեալ 'ի բնակչաց: Ի հիւսիսոյ Արճիշոյ 'ի ձորամէջս լերանց կայ անուանի ուխտն Մեծոփայ վանք յանուն Տիրամօր, յորմէ էր Թովմաս վարդապետ 'ի ԺԵ դարու, որ գրեաց զանցս ժամանակին 'ի Լէնկթիմուրայ, և գերեզման նորա և այլոց վարդապետաց գիտնոց կան հանդէպ վանացն, ընդ որս և Յովհաննու Ռամնակեր կոչեցելոյ 'ի Ցոռուբիան գեղջ, յորում գոյ և եկեղեցի համանուն շինեալ 'ի ՉԽ, 1291: Գոյ և յԱլիւոյ գեղջ 'ի դաշտամիջին ուխտատեղի Ս. Գէորգ անուն. և Մոգրաջանու աւերակ մերձ 'ի ծովն յարևմտից Արճիշոյ փոքր և վայելուչ եկեղեցեաւ, այլ կծեալ և վտանգեալ յալեաց ծովուն:

Յելից և 'ի հարաւոյ Արճիշու կայ ԲԵՐԿՐԻ վիճակ յԱՌԲԵՐԱՆԻ գաւառէ հնում, դաշտածաւալ երկիր, վասն որոյ և Բերկրոյ դաշտ կոչի, յանուն Բերկրի աւանի, որ արդ անչքացեալ է և բերդ նորա ամայի կայ առ գետով իւրով, որ կոչի և Պանդումահի: Յայնկոյս ջրոյն կայ անուանի ուխտատեղի մենաստանն Տէր Յոհան Որոտ Ս. Ստեփաննոսի, 'ի փապարս ահեղ և 'բարձր բարձր քարաժեռից. և 'ի գլուխ քարալերին Արգէլան Աստուածածին վանք, ուր զառաջին պատարագն մատոյց սուրբն, և յետ այնորիկ արգել զանձն 'ի պատարագելոյ և յելանելոյ արտաքոյ վանացս, ուր և հանգեաւ 'ի կէս ԺԴ դարու: — Ի հարաւակողմն դաշտին Բերկրոյ առ Գարաչայ գետով 'ի ստորոտս լերանց կայ Գոյծոռ գիւղ մեծ և բերդ ամայի հանդէպ նորա 'ի բարձու:

90. Ի հարաւոյ Բերկրոյ յարևելակողմն ծովուն Բզնունեաց տարածի բուն վիճակն ՎԱՆ, երկուց ժամուց լայնութեամբ ցլեռան Վարագ, և բազում ժամուց երկայնութեամբ 'ի հարաւոյ ընդ հիւսիս, 'ի ձորաձև դաշտի խոնարհելոյ 'ի ծովն կոյս. 'ի հնումն կոչէր ՏՈՍՊ գաւառ, յորմէ և ծովն Տոսպայ, որ և յարտաքնոցն կոչեցաւ Թոսպիտ լիճ. լերինքն շրջապարիսպք քարուտք և ապառաժք են բայց ստորոտք նոցա և համօրէն դաշտն բլրովք իւրովք՝ բարգաւաճեալ և զարդարեալ այգեօք, պարտիզօք և անդաստանօք. և այսպիսի վկայի լինել և յառաջ քան զամս չորեք հազար, և բնակեալ բազում շինութեամբք. զորս նկատեալ Շամիրամայ դշխոյի՝ ցանկացաւ շինել անդ իւր քաղաք ամառանոց և շինեաց զանուանին յաւերժ հնութեամբն և ամրութեամբ քաղաք՝ որ և ցարդ յիւր անուն կոչի ՇԱՄԻՐԱՄԱԿԵՐՏ կամ ՔԱՂԱՔ ՇԱՄԻՐԱՄԱՑ, և յաճախագոյն ևս ՎԱՆ, յանուն երկրորդ շինողին կամ նորոգողի՝ որ կարծի լինել Վան՝ նախորդ Վահէի յետնոյ Թագաւորի Հայկազնոյ: Դիրք քաղաքին են 'ի բարձու 5137', իբր կիսով փարսախաւ հեռի 'ի ծովեզերէն, կրկին պարսպօք և խոր խրամով այլ ցամաք՝ պատեալ, և աշտարակօք ամրացեալ. բայց հզօրագոյն ամրութիւն և պարիսպ 'ի հիւսիսոյ կողմանէ ունի զկրային կարծր քարաբլուրն որ Ղալայ կոչի 'ի Քրդաց, և է երկայնանիստ ուղտաձև իմն բարձրացեալ 'ի միջոյն, յարևելից ընդ մուտս ձգեալ իբրև 1700' ընդ երկայնն և իբր մղոնաւ և կիսով շրջապատաւ, գրեաթէ անմատոյց և անշեղ բարձրացեալ 'ի հովտէն, 'ի հիւսիսոյ կողմանէ միայն սակաւ ինչ առկողեալ գոլով. վասն որոյ և կարգ կարգ պարսպօք և մարտկոցօք պատսպարեալ է յայնմ կողմանէ. 'ի գագաթան նորա է գերահռչակ Վանայ Բերդն, զոր և այլազգիքն Վան Գալէսի կոչեն, զմուտսն կամ զելսն ունելով յարևմտից 'ի ծովակողմանէն, յ'Իսկելէ Գափուսի գրանէ քաղաքին. և է ճանապարհն սեպ և ուղղորդ, և մարտկոցօք և որմովք զգուշացեալ. երևին անդ և մնացուածք քարակտուր աշտի-



Վանայ Բերդն. — Le Château de Van.

Ճանաց հնոյ Ճանապարհի, որ խաթարեալ է, և լայնագոյն ևս և ամփիթատրաձև տախտից կամ նստարանաց 'ի ծովն հայելով. որք եթէ ոչ 'ի Շամիրամայ՝ հատեալք են 'ի Գագկայ Արծրունւոյ, զի և սա և հայր սորա Դերենիկ 'ի վերջկոյս Թ. դարու՝ արարին բազում և նշանաւոր շինութիւնս 'ի քաղաքին և 'ի բերդին. և թերևս նոցա դաստակերտ իցէ աւերակ եկեղեցին Ս. Յովհաննէս հուպ 'ի ծայր ելից Ճանապարհին, որոյ հիմունք մեծամեծ տաշածոյ և անշաղախ քարամբք կառուցեալ՝ ցուցանեն զգործ հզօրաց և նախնեաց. և մի 'ի վիմացն ունի արձան սեպագիր, և ընդ նովաւ հոսէ աղբիւր որ բղխեալ գայ 'ի ներքուստ տաճարին: Բայց չկայ ինչ կանգուն ոչ յապարանից և 'ի պէսպէս շինածոց Շամիրամայ, և ոչ յԱրծրունեայն ոսկեզօծ արքունեաց, բայց միայն արձանքն սեպագիրք և քարափոր անձաւքն, զի ոչ միայն բնութիւն մաշեաց, այլ ևս առաւել բանութիւն, մանաւանդ աշխարհաւեր ձեռամբ Լէնկթիմուրայ յամին 1392 ընջեաց զարտաքին շինուածսն, ոչինչ կարացեալ սանանել ներքնոցն, այսինքն անձաւացն հատելոց 'ի սիրտ քարաբլրին, յորոց տանիւ չափ երևին, դժուարամուտք և 'ի սենեակս մանունս տրոհեալք. 'ի հասարակի քառակուսիք և տափակք, սակաւք կամարաձևք, ոչ ունելով բնաւ գրուագս կամ քանդակս զարդուց, սակայն և այնպէս հիանալիք վասն միապաղաղ յղկման և պաղպաջանացն. երկուք յանձաւացդ յարևմտակողման առ բլրին կան, որոց առաջինն կոչի Խուրխուր հնգեքումք սենեկօք, մին մեծ և չորք փոքունք՝ դրամբք կամ անձուկ փողոցօք հաղորդեալք ընդ մեծին, որոյ 32՛ է երկայնութեան, 19՛ լայն. և 10½ բարձրութեան, և շուրջ յորմն առն խորշք փորեալք են քառակուսիք բարձր 'ի գետնոյ 3½. զոր ռամիկն բաղանիս Շամիրամայ կոչէ, այլ ոչ թուին այնք աւազանք լուանալեաց. 'ի վերայ դրանն և 'ի կողս արտաքուստ քանդակեալք են բևեռագիր արձանք. 'ի միում 'ի սենեկացն փորեալ է գուբ և 'ի ներքոյ նորա ջրամբար մեծ է ծածկեալ: Հարաւային երեսս քարաբլրին որ 'ի կիսոյն և 'ի վեր գրեաթէ ուղղակերպ տաշեալ ուղղաբերձ հայի 'ի քաղաքն և հարկանէ 'ի նա զճառագայթս արեգական, ունի սանդլխաձև ախոռիճանս անգարեալս, որք թուին Գագկայ ձեռագործք, զի ասէ պատմիչն ժամանակակից գործեալ յայնմ կողմանէ "Ճանապարհ" ատիճանեալ ներքուստ 'ի վեր", այլ ոչ արդ մինչ 'ի կատար անձաւին ժամանէ և ոչ հեշտալի ելքն և էջք, որպէս նայն՝ ասէ, այլ և անկոխ անգամ. անդ ումն 'ի կուսակալաց Վանայ բանտ յարդարեալ էր, և կոչի Զընտան գափուսու, այլ լքեալ է և այն. Նշանաւոր են յայսմ կողման բևեռագիր արձանքն աւիշեան 60՛ բարձր յերկրէ 'ի սեպ ուղիղ դիմի քարաբլրին, որ Քսերքսեայ Պարսից արքայի կարծի յիշատակ. և այլ արձանագիր ութիշեան և 300տողեայ, կարծեցեալ յիշատակ Արգիշտեայ ուրուճն արքայի, (Արտաշիսի?): Յարևելեան կողման կայ անձաւ մի հնգասենեակ, և այլ անձաւ միակ (23՛ երկայն, 14՛ լայն, 12՛ բարձր) նստարանաձև տախտիւք, յորոց վերոյ երկ-



Վան. — Van.

կարգ ծակք բոլորակք փորեալք են 'ի վիմին: Իսկ 'ի հիւսիսային դիմի անձաւին մերձ 'ի Դավրիժու կոչեցեալ դուռն քաղաքին՝ զոյգ անձաւք են հատեալք իբր 8' քուէտաձև, 20' հեռի յիրերաց, որք Խորխորն կոչին և Ղնուրէտ 'ի Տաճկաց, և պատուելին ցարդ. 'ի միումն կայ արձան բևեռագիր, և 'ի վերայ խաչ փորեալ է 'ի Հայոց խոշորաձև, և Խաչնէ Գաֆուռու կոչէն, կարծելով լինել ընդ նովաւ գրամոից գանձատան. են և այլ երեք արձանագրութիւնք նմանատառք յայսմ կողման, և միւս ևս առ դրամբ մեծի անձաւի որոյ 70' են երկայնութեան և 18' լայնութեան. 'ի վէմս պարսպացն գոն և հայկական խաչարձանք՝ յայտ է թէ յեկեղեցեաց և 'ի մահարձանաց քրիստոնէից հանեալք այլ և կճեայ քարինք խողովակաձևք, թերևս " Ի քարանց տաշելոց " փողոցս գնացից ջրոյն կազմեալ", 'ի Գագկայ յայսմ կողման քարաբլրին, որպէս պատմիչն ասէ. և հակառակադէպ այսմ՝ արձանք սեպագիրք փոխագրեալք 'ի հեթանոսական վաղնջուց շինուածոց գըտանին ագուցեալք յորմս եկեղեցեաց Վանայ և մերձակայ գիւղօրայից: — Զայս ամենայն զարմանալի արձանս՝ զորս յիշէ պատմահայր մեր Խորենացի 'ի Ե դարու, յետ չորեքտասան դարուց և նախ առաջին առ մեօք յամին 1827 գաղափարեաց Ճարտարութեամբ Շուլց գերմանացի, և յետ նորա այլք, և 'ի մերոցս Հ. Ներսէս վարդապետ Սարգսեան. և քըննեալք 'ի հնախուզից ոմանց բանասիրաց, ոչ 'ի Շամիրամայ՝ այլ 'ի յետնոց Ասորեստանեայց կամ յառանձնակ թագաւորաց երկրին Վանայ կարծին արձանագրեալք. այլ ցարդ ոչ ստուգեցաւ լեզու նոցին, թէպէտ և բազմաց հաւանեալ է լինել 'ի նոսա և հայկականաց: — Ի միջավայր քարաբլրին և 'ի բարձրաւանդակի ամբառնայ միջնաբերդն Իչ-գալէ, յորում միայն զօրանիստք են և մթերանոցք զինուց և ռմբաց. փորեալ են անդ և անձաւք երեք. 'ի միումն կայ սենեակ մի Նէֆթ գույուսու կոչեցեալ, զի բուրէ հոտ նաւթի ծանր, և կարծի լինել ընդ նովաւ գուբ նաւթին. կայր 'ի նմա և աղխամամած շինուած կարծրակուռ, զոր քակեցին բազում աշխատանօք, այլ ոչ յայտնեցաւ գտեալ ինչ 'ի նմա. և ոչ ինչ ոչ գտաւ յանձաւսն, բայց սափոր մի ոսկերոտեայ 'ի գերեզմանաձև գիրս. և սենեակքն թափուրք ջղջիկանաց և բուէճակաց զազրք են: — Չկան շինուածք հինք և նշանաւորք և 'ի քաղաքին, զոր յետ Շամիրամայ և Վանայ՝ նորոգեաց Վաղարշակ, և 'ի Դ դարու Պարսք աղարտեցին, և ապա Արծրունիք նորոգեցին. և 'ի միջին դարս և 'ի յետինս բազում անգամ 'ի Պարսից և 'ի Քրդաց ապականեցաւ, յորոց յետ ամենեցուն խան Մահմուտ բռնաւոր՝ առ մեօք. այլ յետ նուաճման նորին՝ հանդարտեալ բարգաւաճել առնու Վան: Ունի ոչ սակաւ մզկիթս և բաղանիս և աղբերս վատաջուրս այլ ոչ ախտահաւաքս. և ութ եկեղեցիս Հայոց, յորոց Ս. Պօղոս և Ս. Պետրոս հնագոյնք թուին, և են 'ի նոսա վէմք բևեռագիր արձանօք. և գլխաւորն Ս. Էջմիածին կամ Ս. Նշան, զի 'ի նմա պահին խաչքն Ս. Հռիփսիմեայ կամ Վարագայ և Գետարգել նշանն. են Հայոց և վարժատունք մանկանց նորոգ հաստատեալք: Բնակիչքն նուազեալք՝ համարին այժմ 6–7000 տունք, յորս 2000 Հայոց, յորոց ձեռս յաջողին արուեստք և վաճառականութիւն, զի գան կարաւանք 'ի քաղաքս. որ և աթոռ է փաշայի, որոյ ապարանք են առ հարաւային դըրամբ քաղաքին. իսկ առաջնորդարանն Հայոց առ

Ս. Նշան եկեղեցեաւ։ — Յարեւելից քաղաքին ձգին պարտէզք և այգիք զուարճալիք և բարեջուրք երկժամեայ տարածութեամբ, Էնկէօզանէ կոչեցեալ, և 'ի Տաճկաց Պաղլար, յորս ցրուեալ կան և գեօղք փոքունք կամ հանգրուանք Հայոց. յորոց մի է և Ախօշէն 'ի Զէմզէմ լերին. յորում 'ի վիմի մեծի որ կոչի Ալաքիլիսէ' տաշեալ կայ տախտակ մեծ և արձան բեւեռագիր 14'1/2 'ի բարձրութիւն և 6' 'ի լայնութիւն, 98 տող բան, երկարագոյն քան զյոլովս յարձանագրութեանց կողմանցս. այլազգիք Մէհէր-գափուսի կոչեն զայն, և կարծեն տըլըսմ և մուտս ստորերկրեայ ապարանից. և են իսկ 'ի Թիկանց լերինն մուտք անձաւաց, այլ անգնալիք, ևս և կիսաքանդ աշտիճանք և նստարանաձև տախտք քարակտուրք։

91. Ի հիւսիսակողմն Վանայ' կիսաժամաւ հեռի 'ի քաղաքէն կայ Աւանց գիւղ, որ և նաւահանգիստ համարի քաղաքին, վասն այնորիկ և Իսկէլէ-գէօյի կոչի 'ի Տաճկաց, և արեւմտեան հիւսիսային դուռն քաղաքին' Իսկէլէ գափուսի. սատի 'ի Դաստուան լինին երթեւեկք նաւաց, և կէս հանդէպ իրերաց կան երկաքին նաւահանգիստքն։ Սակաւուք հեռի յելից հիւսիսոյ կայ Լէզք կամ Լէզոյ գիւղ փոքրիկ, ուր ասեն Շամիրամայ տուեալ լիզուլ զալիս Գեղեցիկն Արայի, և վասն այսորիկ գեղջն անուն։ Յորմէ ժամաւ և կիսով վերագոյն կայ Մարմէթ գիւղ, առ համանուն գետով որ և Գուռալու. և է ձկնատեան, այսինքն որսարան տառեխ ձկանց։ — Իբրև հինգ ժամաւ ևս վերագոյն կայ անուանին Ամիկ, 'ի ներքոյ պարանոցաձև երկարեալ մասին ծովուն. բերդ նորա հզօր Թուի գրաւեալ 'ի ջուրցն բարձրացելոց, և ապառաժն մերկ կարկառի 'ի նոյն, ոչ ինչ կարի հեռի 'ի Լիմն կղզւոյ։ Ութմանիկ անուն տոհմ այլազգի տիրէր գաւառին Ամկոյ կամ ԵՐԿՐԻՆ ՀԱՄԿՈՑ, որպէս և կոչին, յԺ դարու, այլ Գագիկ Թափեաց 'ի նոցանէ. և կրկին ամրացուցեալ եղև պատսպարան 'ի Թշնամեաց դարս յոլովս։ — Ի սպառուած հիւսիսակողման միճակին Վանայ և 'ի հարաւոյ Բերկրոյ կայ Տէրամուր կամ Տէրամէր ուխտ, յորոյ եկեղեցւոջն պահի գլխապատ Տիրամօր մերոյ, բերեալ որպէս ասեն 'ի Թադէէ, և ուխտաւորք' մանաւանդ վիրաւորք և խեղանդամք դիմեն անդր 'ի բժշկութիւն։ — Ի հարաւակողման Վանայ նշանաւոր տեղիք են Կոռնկոյ վանք Աստուածածնի, ժամաւ և կիսով հեռի 'ի քաղաքէն, և մերձագոյն ևս գետն Հորգոմու յանուն Հուրգոմ կամ Խուրգոմ գեղջ, որ 'ի Հայոց Զօրոյ եկեալ' Թափի 'ի ծովն։ — Ի հարաւոյ սոցա իբր վեց մղոնաւ հեռի 'ի Վանայ է Արփամէք կամ Արփիմէք աւան, գեղեցիկ դաստակերտ Արտաշիսի Բ և զբօսարան պարտիզաց նորա, Զուրտ կոչեցեալ 'ի նմանէ, որ կրկին վայելչացեալ շինութեամբք 'ի հարստութեան Արծրունեաց, այժմ անշքացեալ է, բաց 'ի զուարթարար գեղոյ և վայելից դրախտիցն. ապառաժք 'ի Թիկանց կան նորա, յորոց բղխեն և աղբերք, և 'ի քարինսն երևին հետք արտաշիսեան մեծագործ ագուգայից ջրոց, և ստորև արձանագիր մի բեւեռաձև. ցուցանեն անդ և զաղբիւրն' առ որով անէծ Ս. Յակոբ Մծբնեցի զկոյս լուացարար աղջկունսն։ Ընդ անդաստանս Արտամետայ անցանէ և Շամիրամայ ջուրն վտակիկ պայծառ, ագուգայիւք ընդ քարաժեռս բերեալ 'ի հարաւոյ կուսէ, և անցեալ խաղայ 'ի սահմանս քաղաքին և Թափի 'ի ծով. յեզր նորին 'ի հարաւոյ կուսէ Արտամետայ 'ի վերայ ճանապարհին Ոստանայ 'ի վիմի կայ արձան բեւեռագիր' Գըշըլգալ կոչեցեալ, ընդ որով ասեն լինել զգանձս Շամիրամայ։ — Ի հարաւային ծայր միճակին առ խոշապ գետով կայ Անգղ գիւղ և վանք. յեկեղեցւոջն' 'ի վիմէ միոյ օծելոյ 'ի Ս. Թադէէ, որպէս աւանդեն, քամի իւղ ինչ որպէս քիրտն կայլակեալ։ — Յայնկոյս գետոյն 'ի ստորոտս Արտոս լերին կայ Սըլփալ կամ գաղկաշէն։

92. Յարեւելակողմն Վանայ նշանաւոր է անուանին Վարագ լեառն երկայնանիստ, մերկ և ապառաժ, կրկին կատարօք, որոյ առաջակողմն Ներքին Վարագ կոչի և ցածագոյն է, յետակողմն Վերին Վարագ իբրև 11000' բարձր. 'ի Ներքինն կայ ուխտն Ս. Նշան, վասն 'ի նմա պահելոյ դարս բազումս խաչին Ս. Հռիփսիմեայ, որ և Պատրոնիկեայ խաչ. գեղադիտակ տեսլարանաւ և եօթն քարաշէն յարակից եկեղեցեօք, վասն որոյ և Եէտի-քիլիսէ կոչի յայլազգեաց. երկուքն զատուցեալք են 'ի հնգիցն և հնաշէնք են ՆԼ (981) Թուականաւ, այլ ոչ անապարտք. 'ի միումն են գերեզմանք Սենեքերիմայ արքայի Արծրունեաց և Պետրոսի Դեսպոտարձի, որոյ խաչն պահէր աստ, և այժմ 'ի Վան փոխադրեալ է. արտաքոյ վանացն են Ուրբաթավայր Ճգնարանք Հռիփսիմեանց։ Ի Վերինն Վարագ' որ դժուարակոխ է և դագաթնն գրեաթէ համակ ձիւնապատ, կայ աւերակ վանացն, յոր Թաուցեալ 'ի բարձուէ եմուտ Ս. Նշանն Հռիփսիմեայ, որ Թաղեալ կայր ամս աւելի քան զ'350 և յայտնեցաւ Թոդկայ ճգնաւորի յամին 653, որոյ և ճգնութեան տեղին Գուլիկ կոչի 'ի վերոյ եկեղեցւոյն, և վերագոյն ևս յափափայս դժուարինս են վայրք ապաւինի Հռիփսիմեանց. իսկ 'ի ձորավայր զառեջս լերինն' Ս. Գրիգոր մենաստան, ուր ասի եդեալ Սրբոյն զհողաթափ և զփողպատ կուսին օրիորդի. և խոնարհագոյն առ Շուշանց գիւղիւ' կայ Կարմրաւոր Աստուածածին վանք. երկոքին սոքա և եօթանեքին եկեղեցիք Ներքնոյն Վարագայ և երեք Վերնոյն' տեղիք են 12 սեանցն լուսեղինաց կամարկապելոց' զոր ետես Թոդիկ 'ի տեսլեանն ընդ խաչին, և շինեցան եկեղեցիք 'ի նիշս նոցին. և տօն կարգեցաւ յեկեղեցիս Հայոց յիշատակաւ խաչին։ Վանացս Վարագայ հայր էր Տաճատ յԸ դարու իմաստուն վարդապետ, որ գրեաց վկայաբանութիւնս սրբոց, և յիշէ զնախորդս իւր հարս տասն։ Յեկեղեցիս Վարագայ և Շուշանց գեղջ, որպէս և 'ի մերձակայսն Կոխպանից և Սիգզէի դաշտին քարինք բեւեռաձև արձանագրութեամբք։ Մերձ Կոխպանից և Ս. Գրիգոր Վանաց է Ահէօակն գիւղ, յորում մեհեան էր Վահէվահեան դից 'ի հնումն։

93. Ի ծովուն Վանայ չորք կղզիք են այժմ, այլ 'ի հնումն Թուին աւելի լեալ. գլխաւոր կղզեացս է Աղթամար 'ի հարաւակողմն արեւելից ծովուն, իբրև ժամաւ հեռի 'ի ցամաքէն. շինեալ նախ 'ի Բագրատունեաց Ռշտունեաց նահապետէ առ Տիգրանաւ

միջնով և ուանացեալ գերութեամբ Հրէից զոր ած նա 'ի Պաղեստինեայ, և այցելութեամբ Թադէի առաքելոյ պատուեալ և սրբեալ, կրկին և մեծապէս պայծառացաւ յելս Թ դարու և 'ի սկիզբն Ժ՞, բազմապատիկ և մեծավայելուչ շինութեամբք Գագկայ արքայի, որ և ապարանս հովանաւորս և ամրոցս շինեաց 'ի նմա ամենազան դրուագեալ զարդուք, զորս Ջուրցն ծածկեալ հետախաղաղ արարեալ է. բայց կանգուն կայ Ս. Խաչ եկեղեցին շինեալ հրամանաւ նորա և ձեռնտուութեամբ յամին 915–921, որ բոլորշի խաչաձևութեամբն և բարձրակառոյց գմբեթաւն վայելչացեալ՝ զարմանալի ևս է և միակ ընդ ամենայն Հայս՝ պատկերօքն սրբոց և անասնոց և բուսոց՝ որովք համակ քանդակեալ ծածկեալ են արտաքին երեսք քարանց եկեղեցւոյն, ճարտարեալք 'ի Մանուէլէ կրօնաւորէ արուեստագիտէ. յորս թէպէտ և ոչ երևի նրբութիւն, այլ ազդուութիւն և ճոխութիւն և վաստակ բազում. ճոխագոյն ևս էր ասպասուք և արծաթի զարդուք և գեղանկար պատկերօք ներքին եկեղեցւոյն, որ արդ մերկացեալ է. իսկ 64' են երկայնութեան նորա և 80' լայնութեան. և քարինքն բերան 'ի հեռաստանէ 'ի հարաւոյ գաւառին Բաղիշու 'ի Կոփոյ անուանեալ գեղջէ, ուր ազգ կռապաշտ Ջուրարիկ անուն ապաստանէր 'ի բերդ հզօր, զոր առեալ և քանդեալ Գագկայ՝ նաւով խաղացոյց այսր զքարինսն. 'ի վերայ հարաւային դրան եկեղեցւոյն կայ աղօթատեղի Թագաւորին, որոյ հին մուտք կամ սանդուխք ծածկեալ են. կիսաեղծ է և հին արձանագիրն. զանգակատունն և ժամատունն նորաշէնք են: Նորաշէն է և մենաստանն, յորում նստի Կաթուղիկոս ինքնագլուխ յաւուրց անտի Գագկայ արքայի, անընդհատ յաջորդութեամբ 113 Տերանց կացեալ յաթոռն մինչև ցայժմ. որոց թեմ ամփոփեալ արդ՝ ունի զհորաւակողմն ծովուն և զարևելս մինչև յելս սահմանաց Հայոց: Չիք արդ այլ շինուած նշանաւոր 'ի կղզւոջն, բայց մատրուռնք անշուքք և ամայիք, և գերեզմանք հարանց անդւոյն, և ամրոց մի փոքր մատրամբ հանդերձ 'ի հարաւոյ կուսէ կղզւոյն՝ արդ անջատեալ 'ի նմանէ ալեօք ծովուն. և վէմ մի բևեռագիր բերեալ այլուստ և եդեալ առ դրամբ եկեղեցւոյն. նա և 'ի բուսաբերութենէ զուրկ է կղզին ապառաժ գոլով: — Ժամաւ և կիսով յարևմտից Աղթամարայ կայ Առտէր կղզեակ անբնակ խոտավայր. և առի այսպէս կոչեցեալ վասն երևելոյ անդ Տիրամօրն առ Ս. Գրիգոր Նարեկացի և ընծայելոյ առ նա զՏէրն կուսածին: — Ի փող կամ 'ի ստորև պարանոցաձև մասին ծովուն կայ Կտուց կղզի քարաժայռ, և բնակարան անապատակեաց միանձանց, Ս. Կարապետ եկեղեցեաւ. և վերագոյն 'ի ծայր պարանոցին կայ Լիմ մեծագոյն կղզեացն, կիսաժամաւ հեռի 'ի ցամաքէ, Ս. Գէորգ եկեղեցեաւ, և անապատաւ միաբանից՝ զոր հաստատեաց Ներսէս վարդապետ Մոկացի յամին 1622, և միաբանքն են իբրև 50 թուով, արք խստակրօնք, աղօթականք անձանձիրք, նոյնպէս և Կտուցայն. առ սոսա անթերի պահին նախնեացն կարգեալ սահմանք ժամակարգութեանց և օր ըստ օրէայ սաղմոսաց: Երկոցուն ևս անապատացն են 'ի մերձակայ եզեր ցամաքին Դրսի տունք իբրև հիւրանոցք կամ օթի տունք, ուր գեռահաստակ նորընծայք մարզին և ապա անցանեն 'ի կղզիսն: Ի Լիմ՝ քանզի ընդարձակ է և դիւր՝ յաջողի և մշակութիւն. յամին 1847 ապստամբք Պէտէրխանայ յարձակեցան 'ի Դրսի տուն և 'ի կղզին Լմայ, 'ի վտանգի կացուցանելով զմիաբանսն, որոց հայր էր Տէր Գաբրիէլ այժմեան առաջնորդն Վանայ:

94. Արևելակողմն վիճակին Վանայ յայնկոյս լերանց Վարագայ մինչև 'ի սահմանն Պարսից՝ երկիր սակաւածանօթ է. յորում նշանաւորք և յայտնիք են Հառուշ լիճ առ համանուն գիւղիւ 100 տամբք Հայոց, գառնահամ ջրով և մանր ձկամբք, յերից կողմանց պատեալ 'ի լերանց և արձակ յարևելեան գիմէն. այս թուի Ծովակն աղի և մանրաձուկն՝ առ որով գազարեաց Հայկն նահապետ ազգիս մերոյ 'ի խաղալն 'ի վերայ Բելայ. քանզի և հուպ առ կառն կայ անդ շահատակութեան հսկայիցն այնոցիկ արանց և հաշակագոյնն և առաջին դաշտ Ճակատամարտի, 'ի ՀԱՅՈՑ ՁՈՐ վիճակի. որ ձգի յելից կուսէ և 'ի հարաւոյ լճին և լերանց Վարագայ, ձորադաշտ ընդարձակ և երկայն 'ի միջավայր երկայնաձիգ լերանց՝ որք բոլորին ընդ հարաւ արևմտից 'ի Խօշապ կոյս, և ընդ մէջ անցանէ Հօրգօմ գետ որ այժմ Խօշապ կոչի. սփռեալ են 'ի դաշտին գիւղորայք Հայոց, յորոց մի է և Աստուածաշէնն կոչեցեալ վեհագոյն անուամբ-քան զամենայն շէնս աշխարհիս, գաստակերտ գիւղախառն հօրս Հայոց, որում ազգեալ ասեն անդ Աստուծոյ և ցուցեալ զաղեղն և զնետ. և շինեալ քաջին բերդ յերկայնանիստ քարակտուր բլրին որ կայ յեզրի գեղջն 'ի մտից կուսէ անջատ և մեկնակ. և ցարդ կան մնացուածք բերդին՝ որ յիւր անուն Հայկաբերդ կոչի խարխալեալ 'ի գագաթան քարաբլրին հսկայակերտ տաշածոյ վիմօք մեծամեծօք, և փոս փորեալ 'ի միջի 'ի քարաժեռին: — Են 'ի ձորադաշտին և մենաստանք անշքացեալք, որպէս Խէթոց վանք, և 'ի հիւսիսոյ նորա և վիճակին Աբրահամ Խոփոզանող, այն է աշակերտն Ղևոնդեանց, զորմէ ճառէ Եղիշէ, և գերեզմանն նորա 'ի նմին: — Ի հարաւոյ Հայոց Ձորոյն կայ ԽՕՇԱՊ վիճակ, քաղաքաւանաւ յաջմէ համանուն գետոյն, աւերակ մզկիթօք, բաղանեօք և կամրջօք, կալեալ 'ի Քրդաց, որոց բէկ ինքնագլուխ նստէր 'ի Մահմուտիէ բերդի յապառաժի բարձու, շինեալ 'ի ԺԵ դարու, և նեղէր զսահմանս Վանայ, մինչև նուաճեցաւ յՕսմանեանց յամին 1847: — Ի հարաւոյ կուսէ Խօշապայ կայ ՔԱՐԳԱՀ վիճակ, որ է երկիր ԱՆՁԵՒԱՑԵԱՑ գաւառի, յորում անուանի և հին ուխտատեղին Հոգւոց վանք շինեալ 'ի Բարթուղիմեայ առաքելոյ 'ի պատիւ Վերափոխման Տիրամօրն, զորոյ և զպատկեր փայտեայ զձեռագործ Յովհաննու Աւետարանչի՝ եդ 'ի նմա, և ցարդ թուի լինել անդ, այլ անշքացեալ և անծանօթացեալ է տեղին:

95. Հարաւակողմն ծովուն Վանայ ՌՇՏՈՒՆԵԱՑ երկիրն է, որ այժմ ՌՍՏԱՆ և ԳԱՒԱՇ կոչի, երկայնաձիգ պարու լերանց զատուցեալ յաշխարհէն Մոկաց: Ի հարաւոյ գետոյն Խօշապայ և յարևելից հարաւոյ ծովուն Վանայ ձգի բարձր և ծաղկաւէտ լեռան

Արփու՝ որ գործէ զձորն Ոստանայ, ունելով 'ի ստորոտան զՉաղար Աստուածածին վանս, ուր փոխադրեալ հանգուցեալ կան նշխարք սքանչելւոյն և գեղեցկաբան սուրբ վարդապետին Եղիշեայ Թարգմանչի: Ի մտից նորա 'ի հարաւագոյն ծայր արևելից ծովուն կայ ՈՍՏԱՆ աւան, մայրաքաղաք Ռշտունեաց, յորում Գագիկ արքայ շինեաց ապարանս և տաճարս ամարանոցս սքանչելիս, որք առ հասարակ քակեալք և աւերեալք են, բերդն միայն կանգուն կայ նորոգեալ 'ի յետնոց, և տունք սակաւք 'ի ստորև: — Ցարևմտից Ոստանայ կայ Քորտուտուշ կամ Մանաքէրտ առ ծովեզերբն 'ի սարաւանդի կարկառելոյ 'ի ծով, յոր գահավիժեաց Մանաճիհրն Ռշտունի 'ի բարձանց զսարկաւագունս Ս. Յակոբայ: — Ի սորա արևմտից նշանաւոր տեղիք զծովեզերբն են Իշխան գեօղ, յորում աւերակ Քառասուն խորան մենաստանի մեծի շինելոյ 'ի Գագկայ. որ և 'ի Թիկանց Նորին շինեաց այլ մենաստան Ս. Սիոն անուն, յամարանոց բազմաժողով միաբանիցն: — Փշաւան, Տեղ և Նորէկ, կիսաժամաւ հեռի է 'ի սմանէ առ ծովեզերբն ճգնարան Գրիգորի Նարեկացւոյ երկնակրօն սրբոյ, քարայրք երկու և մատուռն մի. իսկ 'ի գեղջն կայ անուանի մենաստանն ուր կրօնաւորեցաւ և գրեաց զհրաշահիւս մատեան Աղօթիցն. անդ Թաղեալ են արենակիցք սրբոյն, և նշխարք սրբոյ օրիորդին Սանդխտոյ: — Մոխրաբէրդ գիւղ, այսպէս կոչեցեալ վասն աստի հոսելոյ 'ի ծով Ս. Սահակայ Ռշտունեաց եպիսկոպոսի զհուր և զմոխիր աւրուշանին Պարսից: — Կարմրաւ Աստուածածին, փառաւոր եկեղեցեաւ, 'ի Գագկայ շինեալ, որոյ և ազօթատեղի վանդակապատ կայ 'ի վերոյ գրանն, և կոչի այսպէս վասն Կարմիր ականն եդելոյ 'ի վերայ նշանագործ խաչափայտին՝ որ աստ պահի: Մերձ է նմին Լուսաղբիւր Ս. Սահակ վանք, և յերի նորա Ս. Թովմաս առաքէլ, որոյ և մասն նշխարաց ծածկի յուխտս: — Առ սոքօք 'ի միջակայր հարաւային կողման ծովուն ամբարձեալ և ընդկողեալ է 'ի նոյն Ընջաքիսար կամ Կողոփնող լեառն բարձր, յորոյ գագաթանէ գիտելով Ս. Յակոբայ անէծ զերկիրն Ռշտունեաց. և 'ի կողս լերինն կայ վանք խրթնի յուր անուն Ս. Յովէփ: — Բէլու գեօղ 'ի հարաւոյ սորա, զոր ասեն կոչեալ վասն Թաղմանն 'ի սմա Բելայ նետահարելոյ 'ի Հայկայ: — Ցարևմտակողմանս հարաւոյ ծովուն՝ Սոտ գիւղ և Ս. Կարապետ վանք 'ի լերին. Խարզիթ, ուր պատուի վէմ մի վասն սքանչելեաց ինչ Ս. Նարեկացւոյն: — Թոմխ 'ի ծայր արևմտից հարաւոյ ծովուն՝ առ համանուն գետով որ Կէոզէլտերէ կոչի այժմ, ունի կամուրջ քարաշէն. և 'ի մերձակայ լերինն զվանս Ս. Յիղտէբողս՝ վայելուչ եկեղեցեաւ և գեղահայեաց: Այս Թուխ կամ Թուղ որ և Հոզդ կամ Խոզդ կոչի՝ Աղձնեաց նահանգին էր վիճակ 'ի հնումն, ուրանօր գագարեցին առ վայր մի Հռիփսիմեանք. և աստ առ ջրովն Սմբատ արքայ Ա. հարաւ ընդ զօրս Ահմատայ բդենաւորի յամին 896:

96. Ի հարաւոյ Գաւաշայ և Ոստանայ կայ հին աշխարհն Մոկաց, որ սակաւածանօթ է, սակս անվարուն լերանցն ափափայից և Քրդաց բռնակալուԹեան. 'ի բազում վիճակս տրոհեալ է, որոց գըլխաւոր և առաջին և Վանայ կուսակալուԹեանն դրաւեալ՝ ՄՈԿՍ զոր Մէքս կամ Մուքուս կոչեն այժմ, 'ի 'ի հարաւոյ Քարադաշտի և 'ի մտից Աննոս լերին, իբր 60 գիւղորայիւք, յորոց շատք հայաբնակք են, և գլխաւոր է քաղաքաւանն ՄՈԿՍ 'ի գծուարակոխ քարալերին իբր 2000 բնակչօք. տունք ցրուեալ են 'ի կոհակս քարալերինն, և առ գետովն՝ որ անկանի 'ի Պօհտան իջեալ 'ի լերանց 'ի հիւսիսոյ արևելից. բնակիչք Մոկսայ ստայնանկք են և ներկարարք, և այն են արդասիք ճարտարուԹեան նոցա և վաճառք, ընդ որս և մեղր և մոմ: — Մերձ 'ի Մոկս յարևելից կուսէ կայ Ըղարանից գիւղ և վանք հռչակեալ յանուն Ս. Խաչի, զոր 'ի Ժ դարու շինեաց Ստեփանոս եպիսկոպոս Մոկաց, հանգուցեալ 'ի նմին մասն 'ի կենարար փայտէն զոր եբեր 'ի Կոստանդնուպօլսոյ, հանդերձ բազում նշխարօք սրբոց, և Գրիգոր Նարեկացի գրեաց գովասանս վիպասանուԹեամբ ընպատմուԹիւն շինուԹեան տեղւոյն և ներբող 'ի նոյն և 'ի խաչն սուրբ: ՅՕպարանից էր և Սիմէոն վարդապետ բանաստեղծ 'ի ԺԶ դարու, որ տաղաչափեաց զվիպասանուԹիւն Պոհլաւունեաց և Մամիկոնենից:

Ցելից Մոկաց կայ ՇԱՏԱԽ վիճակ համանուն քաղաքաւանաւ բնակեալ 'ի ճարտարաց Հայոց ոստայնանկաց, և 'ի Քրդաց սակաւուց որք Ըռխ կամ Տոռ կոչեն զտեղին, նշանաւ ՋԵՐՄԱՋՈՐ գաւառի Մոկաց, ուր և Լէսուր (Կլէսուր) ասէ լինել Թովմաս Արծրունի, այսինքն է կապան կամ անձուկ անցք լերանց. կայ առ գետակի օժանդակի Տիգրիսի, յորոյ աջմէ բերդն է ապաստանարան բռնաւորացն Պէակէրխանայ և Նուրուլլահայ: Ի լերանց Շատախայ բղխեն արևելեան ակունք մեծի գետոյն Տիգրիսի: Ցերկրէ աստի ընծայեցան կաԹողիկոսք ոմանք Աղթամարայ, որպէս և Յովհաննէս նախորդ տեառն Խաչատրոյ վախճանելոյ 'ի 1881, էր 'ի գեղջէ Ծղաւ: — Ցարևելից հարաւոյ Շատախայ կայ ՆՈՐՏԸԶ կամ ՆՕՏԸԶ վիճակ բնակեալ 'ի Հայոց և 'ի Քրդաց: — Իսկ յարևմտից հարաւոյ Մոկաց ցամահմանս Բաղիշու և Քրդաստանի վիճակք են ԿԵՐԿԱՌ, ՊՕՀՏԱՆ, ԿԵՑԱՆ և ԻՍՊԵՐԴ կամ ՍՊԱՐԿԵՐՏ, յորոյ Լուոր գեղջէ էր Նիկողայոս կաԹողիկոս Աղթամարայ, ուսումնասէր այր, 'ի կէս ԺԸ դարու:

## Ը. ՔԻՒՐՏԻՍՏԱՆ ու ՀԷՔԵԱՐԻ

97. Բնիկն Քիւրտիստան կայ 'ի հարաւոյ Մոկաց և գաւառին Վանայ, յարևելից ունի զՊարսից սահմանն, յարևմտից զԱղձնիս և զՏիգրիս ցկողմանս Մօսուլայ, 'ի հարաւոյ զՓոքր Զապ գետ. հիւսիսակողմն և արևմտակողմն երկրիս 'ի բուն 'ի Մեծ Հայս է, աշխարհն ԿՈՐԴՈՒԱՑ, յորմէ և ՔԻՒՐՏԻՍՏԱՆ կոչեցաւ. և է ըստ անուանն կորդ երկիր բարձր բարձր և ապառաժեալ լերանց կոհակօք, զորս ազատաբարոյ ազգն Քրդաց ունին 'ի վաղ ժամանակաց, ընդ որս և Հայք բնիկք, և Քաղդէացիք քրդաբարոյք 'ի բարձրագոյն կողմանս երկրին բնակեն 'ի բազում դարուց հետէ. որպէս և Նախահարք նոցա Քաղդէացիքն առաջինք

անուանիք 'ի վէպս Ս. Գրոց՝ 'ի լերանց սատ իջին և կալան զմիահեծան տէրութիւն Ասիոյ, որ յանուն մայրաքաղաքին՝ Բաբելացւոց կոչեցաւ պետութիւն: — Առ ահի Քրդաց անհամարձակ է արդ երկիրն, և սակաւ ամք են յորմէ հետէ մուտ գտին ճանապարհորդք ոմանք 'ի կողմանս ուրեք. վասն որոյ և մեք ոչ ունիմք երկարագոյնս ինչ և ստոյգ աւանդել զհարաւոյ Հայաստանեայց: — Բայց յիշեսցուք այսչափ, զի արեւմտեանն Քրդաստան այսինքն ձախակողմն Տիգրիսի ԳՕՀԴԱՆ կոչի, և լերինքն Գօւտան լերինք, որք զնառագոյնք են քան զբարձրաւանդակն Վանայ, բայց յարեւելակողմանն ամբառնան Ճիւտի լերինք բարձունք 12 կամ 13000'։ Հիւսիսակողմն արեւմտեանս Քրդաստանի է ՃԻՋԻՐԷ գաւառ, յանուն քաղաքին որ յեզր Տիգրիսի, և փոքր միով շրջապատեալ կղզիաձև, վասն որոյ և Ճէզիրէ կոչեցաւ յԱրաբացւոց, որ և առ Նախնիս մեր ԳԶԻՐԱ կոչի, իսկ 'ի հնագունիցն ստորաց Ջաբդա կամ Պեզաբդա քաղաք Զաբդիկեան գաւառի, և կարծի մայրաքաղաք Զարբինոսի կամ Զարուանայ Թագաւորի Կորդուաց, զոր սպանն Տիգրան Բ, վասն դաշնակցելոյ նորա ընդ Լուկուլլեայ. մինչև 'ի դրունս քաղաքիս այսորիկ հալածեաց քաջակորովն Մուշեղ զՀոնս 'ի Դ դարու: Ի յետին ապստամբութեան և մարտս Քրդաց յամին 1836 անշքացաւ քաղաքս, և են 'ի նմա իբրև 3000 բնակիչք, ընդ որս և Քաղդէացիք և Յակոբիկք: Կոչի և Ճէզիրէ-Իպն-Էօմէր:

98. Ի հիւսիսոյ Ճէզիրէի կայ ՖԻՆՏԸԳ վիճակ, համանուն ամրոցաւ. կայ և այլ ամրոց Ֆէնիք անուն ընդ մէջ նորա և Ճէզիրէի: — Յելից և 'ի հարաւոյ Ճէզիրէի կայ ԶԱԽՈՒ վիճակ համանուն քաղաքաւ. նաւ առ Քաբուր կամ Խաբուր գետով օժանդակաւ Տիգրիսի. են 'ի նմա քարաշէն բնակարանք և կամուրջք: Ի հարաւոյ նորա կան Ջուտի կամ Ճեպել-Էլթուր (սպիտակ) լերինք, յորոց Թիկանց յարեւմտից առ Տիգրիսիւ Ֆինդուրը բերդաւան, որ աւերեցաւ 'ի Րեշիտ փաշայէ 'ի մարտին ընդդէմ Քրդաց: — Միջակողմն կամ հարաւակողմն հայկական Քրդաստանիս կոչի ԳԱՀՏԻՆԱՆ, յորում՝ գաւառ երևելի է ԱՄԷՏԻԷ, ընդ մէջ Խաբուրայ և մեծին Զապայ, քաղաքն համանուն որ և ՆԿԲԱՏԱՆ կոչիւր, 'ի լեռնավայրի 4000' բարձու, խանգարեցաւ 'ի մարտին Քրդաց. ունի տակաւին մնացուածս հնութեանց քարակերտ շինուածոց և պատկերաց, որք 'ի Սասանեանց կամ յառաջ քան զսոսա 'ի մերոյն Արտաշիսէ Բ գործեալք են. այժմ նուազեալ են բնակիչքն իբրև 400 տունք, յորս Հայք սակաւք յոյժ, և Քաղդէացիք ոչ կարի բազում. որք բազմաթիւք ևս են 'ի ԳԷՐՐԱՒԻ յարակից վիճակին Ամէտիոյ: Ի հիւսիսոյ Ամէտիոյ կայ ԱՀԻԹԱ վիճակ և աւան, և յելից նորա ԶԱՒԻԹԱ, բնակեալք 'ի Քաղդէացւոց, յորոց շատ զօք սրաճարակ արար Պէտէրխան պէկ:

94. Արեւելեան մասն Քրդաստանի, 'ի հիւսիսոյ Պահտինանայ և 'ի հարաւոյ արեւելեան հարաւային վիճակաց Վանայ՝ ՀԷՔԵԱՐԻ կոչի, և է բարձրաւանդակ լեռնախիտ, յոր խաղայ մեծն ԶԱԲ կամ ԶԱԻ գետ, և յելից կողմանէն ամբառնան հսկայաձև լերինք Կորդուաց Ճաւլար կամ Թաւրա-Ճելու կոչեցեալք, ըստ ոմանց հաւասար Մասեաց և Կովկասու. և 'ի սոսին աւանդեն բնակիչք կողմանն նստեալ զտապանն, ըստ ոմանց 'ի նախնեաց՝ որք 'ի լերինս Կորդուաց ասէին զէջս նորին: — Ի բարձրաւանդակս 8-10000' բարձունս են հանդրուանք ամարանոցք գեղջկաց՝ զոմա կոչեցեալք: Քրդաց կալեալ է զերկիրս զայս, և յանուն նոցա հատեալ 'ի գաւառս գաւառս՝ կոչի ԹԻԱՐԻ, ՏՈՒՀՔԻ, ՁՈՄԱ, և այլն. այլ 'ի միջավայրս անդ լերանցն 'ի վաղնջուց դարուց բնակութիւն կալեալ է Քաղդէացւոց կամ Ասորեաց Նեստորականաց, զսահմանօք ՃՈՒԼԱՄԷՐԿ կամ ՋՈՒԼԱՄԷՐԿ գաւառի, որք և ազատաբար կէին զդէմ ունելով Քրդաց դարս յոլովս. մինչև յամին 1843 և 1846 Պէտէր խան բէկ Ճէզիրէի դաւանօք և բռնութեամբ ընկճեալ կոտորեաց 'ի Լիզան և յայլ գեօղս ոգիս աւելի քան զբիւր մի և զբազումս փախստականս ցրուեաց, վասն որոյ և ինքն նիզակակցօքն ձերբակալ եղեալ յՕսմանեան գնդէն վտարեցաւ 'ի Կրետէ: — Քաղաքն ՋՈՒԼԱՄԷՐԿ որ է ՋԼՄԱՐ բերդ հին կամ ՋԱՑԼԱՄԱՐ, կայ 'ի բարձու 5070' ոտից, առ Հաքեարի գետակաւ՝ որ է նոյն ինքն Զապ, ամրոցաւ և կաւակերտ տամբք իբր 500ովք. զորս անշքեցոյց բռնութիւն Նաւրուլլահայ: — Ի հիւսիսոյ նորա կան Բաշի գեօղ և Քոչհաննէս ուր նստի պատրիարք Քաղդէացւոցս, աւերեալ 'ի Պէտէրխանայ՝ դարձեալ շինութիւն առնու: — Ի հիւսիսի Ջուլամերկոյ կայ Արեգ փող լեռան, յորոյ հարաւոյ Սրինգ կամ Սրընգի գիւղ. որ է հին բերդ Հայոց. և առ նովաւ հովիտ ծծմբաքեր:



Վանք մերձ ի Ճուլամերկ. Monastère près de Djoulamerg.

100. Ի հիւսիսոյ արեւելից Ջուլամերկոյ, 'ի մօտ Սալամաստայ գաւառի Պարսից՝ կայ վիճակն ԱԼԻՊԱՂ, որ է ԱՂԲԱԿ, կրկին գաւառք Կորդուաց և Վասպուրականի. որոյ գլխաւոր աւան է Պաշգալէ 'ի բարձու քարաժեռի իբրև 7000'. երբեմն աթոռ Նուր-Ուլլահ Քուրդ բէկի բռնաւորի. նիզակակցի Պէտէրխանայ, որ ամրութեամբ անմատոյց բերդին ընդ երկար զդէմ կալաւ Օսմանեանց, և նուաճեցաւ

ուր ուրեմն յամին 1847. ՚ի ներքոյ բերդին է աւանն աղիւսակերտ, 100 տամբք կամ աւելի, յորս 40 տուն Հայոց և 25 Հրէից. որք Թուին ՚ի գերութենէն զոր ած Բարզափրան զօրավար Տիգրանայ Բ. և գտանին հանգրուանք նոցա ՚ի լերինս, որպէս և յարեւմտից Պաչգալէի յ՚8900՛ բարձու, և խաշնարածք են: — Ցարեւելից հիւսիսոյ կայ հին մենաստան Հայոց Գօնփօթէլէսէ? կոչեցեալ յուղևորաց ոմանց, և այլ մենաստան մերձ նմին. որոց մին անշուշտ է վանքն Բարթողիմէոսի ՚ի ՀԱԴԱՄԱԿԵՐՏ քաղաքի հնում, ՚ի Բաշմա կամ յԱլբանոս տեղւոջ նահատակութեան Առաքելոյն Քրիստոսի: — Զվայրօքս սպան յամին 1829 Նուր Ուլլահ զգերմանացի ուղևորն հնախոյզ՝ զՇուլց որ նախ գաղափարեաց զբեւեռագիր արձանս Վանայ: Ոչ սակաւ Հայք բնակեն ՚ի կողմանքս, այլ և Հրեայք ոչ սակաւք, որք Թուին յոմանց ՚ի հին գերութենէն Հրէից սերեալք, կամ ՚ի գերութենէն Տիգրանայ Բ: — Հարաւային արեւելեան մասն Քրդաստանի՝ յարեւմտից հարաւոյ ծովուն Ուրմիոյ՝ ՐԷՎԱՆՏԸԶ կոչի, և է գաւառ առանձին ընդ կուսակալութեամբ Մուսուլի, և կայ յեզր սահմանաց աշխարհին Հայոց, երբեմն ընդ սոցա ձեռամբ գրաւեալ ՚ի հնումն, և յաճախագոյն ընդ Ասորեստանեայց և Մարաց, և ապա Պարսից. և է նորա քաղաք համանուն պարսպապատ ՚ի բարձրաւանդակի յեզր վտակի միոյ Զապայ, իբր 1300 տամբք, և վիճակք նորա քրդաբնակք. յորոց ելից կան բարձրաբերձ և պարաւոր լերինք անջրպետք Օսմանեան և Պարսկական գաւառաց, ՚ի հընումն Զաւրոս կոչեցեալ լերինք (12) և Նիփոտոխան, առ որով ՆԻՀՈՐԱԿԱՆՆ երկիր մարզ Հայոց:

# ՊԱՐՍԻԿ ՀԱՅԱՍՏԱՆ

101. Պարսից իշխանութեան մասնաւորեալ են ՚ի Հայաստան երկրէ մեծ մասն մի Վասպուրական աշխարհի, ՚ի հիւսիսոյ արևմտից. Պարսկահայք՝ ՚ի հարաւոյ նորին, և փոքր մի մասն Կորդուաց. որք ըստ օրինաց Պարսից բաժանեալք են ՚ի գաւառս կամ յիշխանութիւնս, զի գաւառապետքն՝ որպէս և նահանգապետքն նոցա Խան կոչին. և Թուին եօթն գաւառք լինել ՚ի մասինս Հայոց. զոր կոչեսցուք Հայկական Նահանգ Պարսից, և են Մակու, Սէկմանապատ, Խոյ, Մարանդ, Սալմաստ, Իւշնէ և Ուրմիա: Միւս ևս նահանգ Պարսից ըստ մասնէ Հայոց իշխանութեան է Ատրպատական աշխարհ, որոյ մասն մի ևեթ սեփականեալ էր մերոցս, որպէս Խաղտեացն աշխարհ, արտաքոյ բուն սահմանացն Հայոց Մեծաց. այլ քանզի չեն ճշդեալք ՚ի նախնեաց, սահմանք կրկին պետութեանց՝ Հայոց և Պարսից՝ յայսմ կողմանէ, և զի ՚ի տեղագրի Պարսից աշխարհին ՚ի տիեզերագրութեան միում ՚ի բաց թողեալ էր մեր իսպառ զմեծ զայս նահանգ, հարկ կարևոր համարիմք յիշատակել աստ զգլխաւոր տեղիս նորին, թէ և սակաւ մի անցանիցեմք ըստ բնիկ սահմանս Հայոց:

## Ա. ՀԱՅԿԱԿԱՆ ՆԱՀԱՆԳ ՊԱՐՍԻՑ

102. Հիւսիսային արևմտեան ծայր երկրիս կայ ընդ մէջ Պայէզիտոյ՝ յարևմտից, և հարաւոյ Մասեաց և Երասխայ յարևելից, և մինչև ցգետն Պալըգ (80) սակաւածանօթ է երկիր, և է վիճակ Մաքուայ. այսպէս կոչեցեալ յանուն ՄԱԿՈՒ կամ Մաքու քաղաքի որ ՚ի ձախմէ գետոյն. որոյ է բերդ կամ ամուր ահեղ և ընդարձակ քարայր, կարկառեալ ՚ի վերայ շինին, որում բաղում խնամով զգուշանան Պարսք, ոչ ումեք թողեալ մտանել ՚ի ներքս. այս տեղի Ծոկ Մաքուայ կոչի ՚ի գիրս մեր, և Թուի հնութեանց և արձանագրութեանց լինել ՚ի սմա: Աւանն կամ քաղաքն ՚ի ներքոյ բերդին կայ ՚ի զառէջս լերին անշքացեալ վասն բնակչացն Հայոց գաղթելոյ ՚ի Ռուսս, և քայքայեալ ՚ի սասանութենէն Արարատայ յամին 1840: Ի հնումն ԱԿԷ և ԱՐՏԱԶ գաւառք էին յերկրի աստ, և ՇԱՒԱՐՇԱՆ դաշտ և քաղաք էր գլխաւոր, ուր հովանոցք և զօրանիստք Թագաւորացն Հայոց, և ապարանք Սանատրկոյ, թերևս ՚ի նոյն իսկ ՚ի սահմանս Մակուայ. անդ կատարեցաւ հանդէս նահատակութեան քրիստոսահրաւէր առաքելոյն Հայոց Թադէի և Կուսին արքայդստեր Սանդխտոյ. մինչև ցայսօր ուխտատեղի են Վանք Թադէոսի բաղում ժամուք ՚ի հիւսիսոյ Մակուայ առ գետեզերբն ՚ի ձորամիջի, որ կոչի և Ծործոր կամ Կեծառոյ յանուն գեղջ մերձակայի. յորմէ Ծործորեցի կոչեցաւ Յովհաննէս Երզնկացի, որ դադարէր ՚ի սմա երբեմն առ Զաքարիայի առաջնորդի սորա. պատուի ընդ նմին և Սանդխտոյ շիրիմն ՚ի մատրան միում: Կրկին սրբազան է տեղին և անդ յղութեամբ երկրորդի առաքելոյն Հայոց՝ սրբոյն Գրիգորի Լուսաւորչի, վասն որոյ և աթոռ մեծի արքեպիսկոպոսի կարգեցաւ ՚ի նախնեաց անտի: Միւս ևս անգամ հռչակապանծ գաւառ վիճակս արիական և մեծահռչակ նահատակութեամբ Վարդանանց յամին 451 ՚ի նմին Շաւարշական դաշտի որ և Աւարայր կոչի, յեզեր հիւսիսոյ Մակուայ, զեզերբք Տղմուտ գետոյ, որ Թուի Աքոռայ վտակ խառնեալ յԵրասխ, կայ անդ և ակն Աքոռայ: Այլ աւաղ, զի ոչ ոք ցարդ հետախուզեաց և ետ ծանօթս ճշգրիտս զցանկալի վայրացն, յորում կրօնք և հայրենիք միաբանեալ գործս սխրալիս կատարեցին յաւուրսն անդ հարստութեան Հայոց:

103. Յարեւմտակողմն Մակուայ և յելից Պայազիտոյ կայ ՕՎԱՃԸՂ վիճակ, որոյ գլխաւոր տեղի է Քիլիսէքէնտ աւան. յորոյ հիւսիսոյ՝ յԱլտաղ լերին անցք են կարաւանի յ'7240' բարձու, երթալով 'ի Պայազիտ կամ 'ի Խոյ: — Ցելից նորա և 'ի հարաւոյ Մակուայ և Պալըք գետոյ՝ կան ԱՊԱՃԱ և ՁԱՒՇԸՐԱՆ վիճակք, և 'ի հարաւոյ նոցա յելից Օվաճըկայ և 'ի մտից Երասխայ՝ ԳԱՐԱԳՕՅՈՒՆԼՈՒ վիճակ, յերկրին ՎԸՆՋՈՒՆԵԱՑ, յորում գլխաւոր տեղիք նշանակին Գարագօյուն և Մեղրաւ կամ Մեխուր. և խոնարհագոյն 'ի հիւսիսոյ Չիլիխանէ լերանց՝ Գիրան գիւղ որ թուի Աղտոն Գիրան ժառանգութիւն սրբոյն Վահանայ Գողթնացւոյ: — Զհարաւով լերանցս պատի Աք-չայ գետ յարեւմտից եկեալ 'ի սահմանաց օսմանեան մասին և ընթացեալ յելս՝ թափի յԵրասխ մերձ 'ի Հին Ջուղա. ընդունելով խուն մի յառաջ զՔոտուր (20) գետ, որ 'ի հարաւոյ գայ նովին ընթացիւք անցանելով ընդ Խոյ. 'ի միջի երկոցուն գետոցս յարեւմտից կայ ՍԷՀՄԱՆԱՊԱՑ կամ Սէօմայնաղաբ վիճակ, որ պատշաճի ՄԱՐԴԱՍՏԱՆ և ՏՐՊԱՏՈՒՆԻՔ գաւառաց հնոց. և յարեւելից ՁՈՐՍ վիճակ համանուն բերդաւանաւ, որ է հին վիճակն և գաւառն ՀԱՑԻՒՆԵԱՑ, ուր Բիւրեղ տիկին Սիւնեաց ել ընծայիւք ընդառաջ հերակլի կայսեր, և խնդրեալ էառ 'ի նմանէ մասն 'ի կենարար փայտէն, մինչդեռ դարձուցանէր զայն 'ի գերութենէն Պարսից, և կանգնեաց եկեղեցի մեծ 'ի հանգիստ խաչին: — Ի հարաւոյ Սէհմանապատայ կայ ՔՈԴՈՒՐ վիճակ յԱՆՁԱՀԻՑ-ՁՈՐ գաւառի հնում, որ և ԸՆՁԱՀԻՑ-ՁՈՐ, և գլխաւոր տեղին աւանն Քոտուր է բերդն ԿՈՏՈՐոյ առ համանուն գետով, ուր մեռաւ Ստեփաննոս Գ. կաթ. յամին 971:

104. Ցելից Կոտորոյ և 'ի հարաւոյ Ձորայ կայ գաւառն ԽՈՅ, 'ի հարաւոյ կողմանէ մինչև 'ի հիւսիսակողմն ծովուն Ուրմիոյ, և յարեւելից գետովն օժանդակաւ Կոտորոյ՝ բաժանեալ 'ի Մարանդ գաւառէ. հիւսիսակողմն երկրին պատշաճի ԹՈՌՆԱՒԱՆ գաւառի հնոյ, հարաւակողմն ՀԵՐ գաւառի աշխարհին ՊԱՐՍԿԱՀԱՅՈՑ. և ինքն ԽՈՅ քաղաք որ աթոռ է խանի և գլուխ բազում վիճակաց, նոյն ինքն է ՀԵՐ քաղաք, ուր նստէր ոստիկան Արաբացի յաւուրս և յետ Բագրատունեաց: Ընդարձակ է քաղաքն 'ի հիւսիսոյ գետոյն՝ որ և յիւր անուն կոչի, ազնուակերտ այլ վայելուչ տամբք, լայն փողոցիւք և ծառաստանօք. Ճանապարհք արքունիք հգին 'ի չորից ծագաց նորին յԱտրպատական և յօսմանեան և 'ի ռուսական Հայս: Բնակիչք 20-25,000. յորս գոն և հարիւրաւոր երդք Հայոց: Սահմանք Խոյի կարի բարեբերք են և բարգաւաճ: Զերկաթի դուռն քաղաքիս եհերձ պողովատիկ սուսերաւն քաջն Աղվքարիզ հանուանի, հալածելով զոստիկանն, և ապրեցուցանելով զարքայն Արծրունեաց, զոր յառաջ մատնեալն էր առ քինու. (112 'ի ծանօթ):

105. Ցելից Խոյի և 'ի հարաւոյ Երասխայ, 'ի հիւսիսոյ ելից Ուրմիոյ ծովուն՝ կայ ՄԱՐԱՆԴ գաւառ, որոյ հիւսիսակողմն առ Երասխաւ էր ՃՈՒԱՇ կամ ՃՈՒԱՇՌՈՑ և հարաւակողմն ՄԱՐԱՆԴ, գաւառք Վասպուրականի, ընդ որ խաղայ Սաղան կամ Զաման գետ խառնեալ 'ի գետն Խոյի. և առ նովաւ կայ ՄԱՐԱՆԴ կամ ՄԷՐԷՆՏ քաղաք 'ի հարաւակողմն վիճակին, 'ի բարձու 4300', ունելով բերդ 'ի հարաւոյ. ըստ աւանդութեան Հայոց և բնակչաց քաղաքին՝ աստ թաղեալ է կին Նոյի Նոյեմզարա, վասն որոյ և Մայր-անդ կոչի, և 'ի մզկթի ուրեմն ասեն լինել զգերեզման նորա: Աստ թաղեալ են և Ալփարսլան և Մէլիքշահ ըստ մերոց պատմչաց: Բնակիչք 1000 տուն մահմետականք: Գետոյս բազումք են Մարանդայ բարգաւաճք և զուարճատեսք. 'ի հիւսիսակողմն կայ Զաւնոս բերդաւան. և յարեւմտից հիւսիսոյ նորա Դուզէջան գեօղ 'ի ստորոտ Քանի Նշան լերին. յորոյ հիւսիսոյ Քէլէէր աւան մերձ յԵրասխ, և կամուրջ 'ի վերայ գետակի առ նովաւ. յելից նորա հուպ 'ի խառնուրդս Աքչայ և Քոդուր գետոց Մառական գիւղ, որ ձմերոց էր թագաւորացն Արծրունեաց, և Գագկայ արքայի բազում շինութիւնս արարեալ 'ի սմա, և գետն կոչէր Կուրմէր. նոյնպէս աւար շինուածս և յանձաւսն Զուրէ կոչեցեալ մերձ 'ի Մառական: — Ցելից Մարանդայ կայ ՏԻՍՄԷՐ կամ ՏԱՍՄԱՐ վիճակ փոքր առ Երասխաւ, 'ի մտից Գարատաղ նահանգի. և աւան համանուն հուպ յԵրասխ 'ի հարաւոյ Որդուատայ:

106. Ի մտից Խոյ գաւառի և 'ի հարաւոյ Քոդուրայ, յելից օսմանեան սահմանին և 'ի մտից հիւսիսոյ ծովուն Ուրմիոյ, կայ ՍԱԼԱՄԱՍ կամ ՏԻԼՄԱՆ գաւառ, որ է ԶԱՐԵՒԱՆԴ գաւառ Պարսկահայոց. և քաղաք նորա ՏԻԼՄԱՆ իբր չորիւք ժամաւք հեռի կայ 'ի ծովէն, կառուցեալ տամբք և պարտիզօք, կարի բարգաւաճ վաճառաշահութեամբ և անցք կարաւանաց. բնակիչքն մահմետականք իբրև 800 տունք: Ի մտից հարաւոյ քաղաքին կան աւերակք հնոյ ՍԱՂԱՄԱՍՏ քաղաքի որ և Սաղմաս անուն յիշի անգամին 'ի Դ դարէ և Կորճէից նահանգի ասի վիճակեալ. աթոռ էր եպիսկոպոսի ԴՐԱՆ ՊԱՐՍԻՑ. յաւերակսն երևին աշտարակք բոլորշիք և արաբացի արձանք: Աւան նոր առ նմին կառուցեալ և բնակեալ է 'ի Քաղդէացւոց, 'ի Հայոց և 'ի մահմետականաց: Ի մերձակայ լերինս Սալմաստայ գտանին պատկերք Սասանեան արքայից քանդակեալք 'ի վէմս: Ի հարաւոյ Սալմաստայ կայ Խոսրովա աւան աթոռ նեստորական եպիսկոպոսի. մի 'ի գլխաւոր գիւղից վիճակին է և Ճամալաւա կամ Չամալաւա: Հայոց վիճակիս գաղթեալ 'ի Ռուսս՝ միայն աստ իբրև 400 տունք եւեթ: — Արեւմտեան հարաւային ծայր Սալմաստայ ՁԱՐԻ կոչի, վիճակ փոքր, ընդ որ խաղայ գետ համանուն և թափի 'ի ծովն 'ի հիւսիսոյ կողմանէ:

107. Ամենայն արեւմտակողմն ծովուն ցսահմանս Օսմանեանց վիճակեալ է ՈՐՄԻԱ կամ ՈՒՐՈՒՄԻԷ գաւառի, յանուն ծովուն մանաւանդ թէ քաղաքին գլխաւորի, որ սակաւ ժամուք հեռի է 'ի ծովէն 'ի միջավայրս արեւմտակողման նորուն առ Շահէր կամ Սաթոուր գետով. ՈՐՄԻ՝ քաղաք Հայոց կոչի միշտ առ նախնիս մեր, յայտ է թէ 'ի Պարսկահայս, այլ բնիկ գաւառ նորա ոչ յիշի. համարի հայրենիք Զրադաշտայ առաջնորդի զանգիտ կրօնից, որ եկեաց առ մերով հայկազն Տիգրանաւ. իսկ 'ի փրկչական դարուն

Յուդա առաջեալ եղբայր տեառն աստ քարոզութեամբ կատարեցաւ, և գերեզման նորա պատուի ցայժմ յեկեղեցւոջն Հայոց. յետ նահատակութեան նորա եկեալ եղբօրն հարազատի, այն է Սիմոնի կամ Շմաւոնի Կանանացւոյ և քարոզեալ, կատարեցաւ և ինքն յԸռուռէռա կամ Ռուռէս, զոր 'ի Թիկանց Որմիոյ ասեն վկայաբանք, և Թուի 'ի հիւսիսոյ նորին լինել, քանզի նշանակի յայնմ կողման գետակ մի Ռուզ անուն: Որմիա քաղաք հին է, այլ չկան 'ի նմա նշանաւոր հնութիւնք, բայց աշտարակ մի, և մզկիթ հին, և եկեղեցին Հայոց. Նստի յՈրմի Խան պարսիկ կուսակալ, ընդ որոյ ձեռամբ են 10 վիճակք և 700 գեօղք: Բնակիչք քաղաքին 20,000 աւելի կամ պակաս, յորս ոչ սակաւ նեստորականք, Հրեայք և Հայք. և Ամերիկացի քարոզիչք հաստատեալ ունին վարժարան 'ի նմին: Վիճակն Որմոյ բարեբեր և բարգաւաճ է յոյժ. բերէ որիզ և բամբակ և ծխախոտ և խաղող ընտիր և միրգս. և 'ի լերինսն անձաւք ձեռագործք և հողաբլուրք և մնացուածք հին շինուածոց ոչ սակաւք. այլ և բերդք 'ի լեռնակողմանս: Քուրդք ունին զարևմտեան և զհարաւային կողմանս գաւառիս:

108. Հարաւային արևմտեան ծայր երկրին Ուրմիոյ կոչի ԻՒՇՆԷ կամ ՇԻՒՆՈՅ երկիր յարևմտից Րէվանտըզայ, բնակեալ 'ի Զէրզաւ տոհմէ Քրդաց, 'ի 40 գեօղս, որոց գլխաւոր է ԻՒՇՆԷ քաղաքագեօղ 'ի բարձու 4330', տամբք 200 կամ աւելի. յորում յԺԲ դարու նստէր եպիսկոպոս Ասորի, և ուխտատեղի է գերեզման նորա: Ի հարաւոյ մտից Իւշնէի ընդ բարձրաբերձ լերինս որ սահման հատանեն ընդ օսմանեան Քրդստան, իբր 5 ժամուք հեռի 'ի քաղաքէն են լեռնանցք 9300' բարձր, և արձան սեպագիր Քէլի-Շին կոչեցեալ, որ է Կապոյտ սիւն, կիսեղծ. այսպիսի արձան կայ և 'ի մտից նորին յայլում լերին Րէվանտըզայ, և Թուի յԱսորեստանեայց կամ 'ի մերոյն Արամայ կանգնեալ, զի սահմանածայրք Հայոց և Մարաց էին լերինքն, և իջեւանն կամ գեօղ առ երի արձանին Հայք անուն յիշի յԺԳ դարու. 'ի հարաւոյ արձանին ամբառնայ Շէյխ-Էլ լեառն 10500': Յորոց ելից 'ի հարաւոյ ծովուն Որմիոյ ցհարաւային սահմանս այժմեան Ատրպատականի և ընդ արևելս ցԹաթաւ գետ (որ Թափի 'ի ծովն յելից հարաւոյ) կան քրդաբնակ լեռնավայր վիճակքն ՍՕԼՏԸԶ, ԼԱՀԻՃԱՆ, ՍՕՈՒՔ կամ ՍՈՒՃ-ԲՈՒԼԱՔ, բնակեալք 'ի Միքրի, Պիլպաս, Մինաէհ, Բիրան, և յայլոց տոհմից Քրդաց. գտանին աւերակք և 'ի սոսին, և սեպագիր արձան մի 'ի Դաշթէփէ առ Թաթաւ գետով:

109. Զարմանալի ևս մնացուածք հնութեանց և աւերակք կան յարևելակողմն վիճակացս և մեծի գետոյն Ճաղատու որ յելից Թաթաւայ մտանէ 'ի ծովն. յաջմէ նորա կայ Սաքըզ կամ Սէան-Գալէ բերդաւան, առ որով աւերակք քարաշէն կամրջի և բերդի, որ ձեռակերտ Սասանեանց Թուի: Ի նմին կողման գետոյն բազում ժամուք վերագոյն 'ի հիւսիսոյ կայ Քաշաւէր բերդաւան. իբր երկժամաւ հեռի յարևմտից հիւսիսոյ նորա յահեկէ գետոյն՝ գեօղն Էրմէնի-պուլաղ, որ վկայէ անուամբն ցայս վայր ձգեալ զհայ ձեռն և զբնակութիւն: Առ երի գետոյն ընդ մէջ Քաշաւերայ և հարաւային ծայրից ծովուն Որմիոյ կայ Մէրհէմէթաբադ քաղաքաւան 'ի ՄԻՅԱՆՏԱՊ վիճակի. առ որով կան աւերակք, ձեռագործ անձաւք և քանդակք և սիւնք 'ի Շէյտանաբադ և Սաթէնք կոչեցեալ վայրս, յորս և արձանագիր մի նման պահլաւիկ տառից. և յելից հիւսիսոյ նոցա առ Լէյլան գեօղիւ մեծագոյն աւերակ քաղաքատեղւոյ Գալէ Պուրտէ կոչեցեալ: Աւերակքս այսպիսիկ համարին արդ յոմանց լինել առ ԳԱՆՁԱԿ կամ ԿԱԶԱ քաղաքաւ Ատրպատականի, որիշ 'ի Դավրիժոյ. միւս ևս Գանձակ և բնաւիցն վեհագոյն համարին աւերակքն Թախտի-Սիւլէյման կոչեցեալ այժմ առ ակամբք Ճաղատու գետոյ, յարևելեան հարաւային եզր Ատրպատականի, և սա ինքն ԵՐԿՐՈՐԴՆ ԵԿԲԱՏԱՆ, որում տիրացաւ Տրդատ արքայ յարշաւելն 'ի Պարս. և անդ էր գլխաւոր և առաջին ատրուշանացն հրապաշտից, զոր Հերակլ կայսր 300 ամբ յետ Տրդատայ՝ աւերեաց ըստ մասին, և ընդ բազում դարս մնացուածք նորին զարմանս արկանէին ուղևորաց բանասիրաց, որպէս և յամին 1837 Ռաւլինսոնն Անգղիացի բանասէր հետաքննին եգիտ անդ պարիսպս քարաշէնս և ծով կամ աւազան մեծ 'ի միջի, և առ երի զտեղի ատրուշանին, այլովք հանդերձ:

110. Ծովն՝ զորոյ զարևմտեան, զհարաւային և զհիւսիսային կողմանս տեղագրեցաք՝ ՈՐՄԻԱ կոչեցեալ 'ի հասարակի յանուն Որմի քաղաքի, Սպաւտա և Մարտիան 'ի Յունաց նախնեաց, և 'ի մերոցն՝ Ծով Կապուտան կամ Ծով Դոնըքթէա, և յարևելեայց յատարաց Ծով Հայոց (Տէրէա-Էրմէնիեան), ընդ մէջ Պարսկահայոց և Ատրպատականի ձգի 'ի հարաւոյ ընդ հիւսիս երկայնեալ իբրև 80 մղոն կամ աւելի, այլ ընդ լայնն իբրև 20-22 ևեթ. աղի է և դառնահամ և անձկնաբեր, և ոչ խորայատակ որպէս զՎանայն, այլ առաւելն 46' ևեթ, և ոչ շատ յուզի 'ի հողմոց. և բարձրութեամբն ևս նուազ, իբրև 4000' գոլով, աւելի կամ պակաս. սուղ ինչ 'ի միջոյն 'ի վայր է 'ի նմա կղզեաց ութից մեծագունից քան զծովուն Վանայ և պարեխից աւելի քան զյիսուն. 'ի միում յայնցանէ որ Թէլա կոչի և Գօյուն տաղը՝ Հուլաղու Խան Թաթարաց շինեաց բերդ և գանձատունս յԺԳ դարու, ըստ ոմանց անդ Թաղեցաւ:

## Բ. ԱՏՐՊԱՏԱԿԱՆ ՆԱՀԱՆԳ

111. Արևելակողմն ծովուն Որմիոյ ցսահմանս Կիլանայ առ Կազբից ծովուն՝ է բուն նահանգն ԱՏՐՊԱՏԱԿԱՆ, 'ի հիւսիսոյ կողմանէ ձգեալ ցԳարատաղ և Մուղան դաշտս կամ ցԵրասխ գետ, և 'ի հարաւոյ ցՔիւրտիստան Պարսից և ցԻրագ-Աճէմ, այն ինքն է հին աշխարհն Մարաց կամ Մեծ Մարք. քանզի և Ատրպատական մասն համարէր նորին և Փոքր կոչէր Մարք. այլ զի մերթ ընդ ձեռամբ նոցա և մերթ Հայոցս նուաճիւր, կամ կէս սորա և կէս նորա, վասն այն և կոչէր Ատրպատական Հայոց և Ատրպատական

Մարաց, և այս յաւուրց Հայկազանց մերոց ցվերջ կայր Դ դարու. յորմէ հետէ իսպառ նուաճեցաւ 'ի Պարսից. որք կոչէին զհասարակ երկիրն ԱԴԷՐ-ՊԱՅՃԱՆ 'ի հին անուանէն, որ նշանակէ Հրոյ-դարան կամ տեղի, վասն բազում ատրուշանացն պաշտամանց հրոյ, և այն 'ի պատճառս հրաբխից երկրին և բորբոքման նաւթային նիւթոց յառաջին ժամանակսն:

112. Գլխաւոր գաւառ և նախիշխան կուսակալութիւն աշխարհիս է ԹԷՊՐԻԶ 'ի հիւսիսի արևելից ծովուն, 'ի հարաւոյ Մարանդայ, և 'ի հիւսիսոյ Սիւհէնտ լերին և Մարաղայ գաւառի, տարածեալ ընդ արևելս, ընդունելով անտուստ 'ի Սաւալան լերանց զԱճի-չայ կամ Սէ-րի-ռաւ գետ որ թափի 'ի մէջ կոյս արևելակողման ծովուն, և նման նմին գաւառահամար լինել ըստ անուանն: Ընդարձակ է գաւառն և վիճակք բազմագեօղք 'ի նմա, այլ ոչ քաջ ծանօթք. որոց գլխաւոր քաղաք և համօրէն Ատրպատականի է ԹԷՊՐԻԶ կամ ԴԱՎՐԷԺ, մի 'ի կարի նշանաւոր և բարգաւաճ քաղաքաց Ասիոյ, իբրև 30 մղոնաւ հեռի յարևելից ծովուն Ուրմիոյ, 'ի հարաւոյ կամ յահեկէ Աճիւրխապ գետոյ, 'ի բարձու 4700', և յեզր դաշտի մեծի որ ձգի 'ի ծովակողմանէն ցայն վայր. ըստ արևելեայց շինեալ է 'ի Զոպէյտայ կնոջէ Հարուն-էլ-Րէշիտ ամիրապետին յԸ դարու, և կոչեցեալ Թաւրիզ այսինքն ջերմնահալած. ըստ Հայոց յԳ դարու 'ի քաջէն Խոսրովայ՝ յետ վանելոյն զԱրտաշիր, և առ առաւել նորին կոչեցեալ Դա-ւ-րէժ, որ 'ի հին գրուածս ուրեք գրի և Գահաւրէժ. իսկ ըստ եւրոպէացւոց ոմանց՝ հնագոյն ևս կարծի՝ և յիշատակեալն 'ի Պտղոմեայ աշխարհագրէ Գաբրիս կամ Տաբրիս անուն. կոչէր և Գանձակ, այլ ոչ է բուն Գանձակն շահաստան Ատրպատականի՝ զոր վերագոյն յիշեցաք (109): Ընդարձակ է յոյժ քաղաքն և կրկնապարիսպ, այլ չեն նորա հին և վայելուչ շինուածք. քանզի 'ի բազում սասանութեանց երկրի և 'ի բուռն պատերազմաց և աւերելոյ քաղաքին Օսմանեանց և Պարսից, խանգարեալ են. Նշանաւոր են այժմ մնացուածք մզկթի միոյ կապուտակ ալապաստր վիմօք, մանաւանդ քանդակք գրոյն նորին, և ապարանք՝ զոր ոմանք Զոպէյտայ շինած կարծեն. և բազում կարաւանատունք. այլ և սուքա և տունք և մզկիթք ցածունք են առ ահի սասանութեանց: Բայց վաճառականութիւն քաղաքին և երթևեկ վարուն է յոյժ. ընդունի վաճառս 'ի Հնդկաց և յԱնգղիոյ, 'ի Ռուսաց և յՕսմանեանէ, և ընդ բազում կողմանս ճանապարհք արքունիք ձգին 'ի քաղաքէն, որ առաջին շահաստան քաղաք է Պարսից: Արտաքոյ պարսպացն պատին ընդարձակ արուարձանք և պարտէզք, որ յառաջագոյն անընդմէջ մասն էին քաղաքին, և թիւ բնակչացն կէս միլիոն թուէր. այժմ ըստ ոմանց իբրև 150,000, բայց ըստ այլոց կիսով չափ ևեթ կամ նուազ ևս, որոց մեծագոյն մասն Պարսիկք են և Թուրքք 'ի Գըզըլպաշ տոհմէ, և Հայք սակաւ, և նուազունք ևս յօտար ազգաց. յորոց Անգղիացիք ունին հիւպատոս հաստատեալ 'ի նմա, և քարոզիչք ոմանք՝ դպրոց: Խանն կուսակալ Դավրիժու յորդւոց շահին Պարսից ընտրի, և նախապատիւ է քան զամենայն կուսակալս պետութեանն (1):

113. Ընդ մէջ Դավրիժու և Մարանդայ կայ ՍՕՖԻԱՆ քաղաքաւան 'ի վիճակին ՌՈՒՏԻՊԱԴ առ Թարէան գետով. 'ի մտից նորա ԷՐՎԷՆԷԿ վիճակ և Տիղէի-Խալի գլխաւոր աւան մերձ 'ի ծովն երիւք ժամուք. յորոյ հարաւոյ և 'ի մտից Դավրիժու ԳԱԼՏԸՐԱՆ վիճակ. արևմտակողմն սորա որ է հիւսիսային արևելեան ափունք ծովուն՝ աղուտ դաշտ է, և 'ի մտից կամ յահեկէ Թուրեանայ ցամաքն կղզիաձև յառաջացեալ 'ի ծովն, և են 'ի նմին արքունի ձմերոցք խանին Դավրիժու 'ի Գիւմէշէն շինի. և ցամաքակղզին այն Շահի կոչի (արքունի) յորմէ և ծովն ինքնին: Ի հարաւոյ դաշտին և զարևելեան եզերբք ծովուն գլխաւոր տեղիք 'ի վերայ ճանապարհին որ 'ի Դավրիժու իջուցանեն 'ի Մէրհէմէթապատ, են Տէհի-Խէրէէան, Շէրամին և ԳԻՆԱԳ քաղաք փոքր առ Սաֆի գետով մերձ 'ի Ճաղաթու գետ. ընդ մէջ երկոցուն առաջնոցն կան անուանի քարայրք. զի ջուր քարացեալ գործէ զալապաստրն պղպջուն: Իսկ 'ի հարաւոյ Դավրիժու ՄԷՀՐԱՆՐՈՒՏ վիճակ. յորոյ հարաւոյ ամբառնայ անուանի լեառնն Սէ-հէնտ կամ Սահանտ 8000', որ տարածէ թևս շուրջանակի. 'ի մտից նորա ամբառնայ Տէմրփաղ առաւել քան զ'11500'. Իսկ յելից հարաւոյ բղխեն բազմառուքն Քարանկու և Շահի-Րուտ որք օժանդակեն զհզօրագոյն գետն Գըզըլ-Էօզէն կամ Սեֆիտ-Րուտ (Սպիտակ գետ): — Իսկ յելից Դավրիժու առ Աճիւրխապ գետով տարածի ԳԷՏԱՒՍՏԱՆ վիճակ ցստորոտ Սաւալան լերանց. և 'ի հարաւոյ գետոյն կայ ընդարձակ դաշտ աղի:

114. Ի հարաւոյ Սիւհէնտայ, և յելից հարաւոյ ծովուն, 'ի հիւսիսոյ Մէրհէմէթապատայ և 'ի մտից Քարանկուի կայ ՄԱՐԱՂԱ գաւառ, համանուն քաղաքաւ առ Սաֆի գետով. յորում Հուլաւու խան եւս կանգնեալ աշտարակ աստեղագիտաց, 'ի ձեռն իմաստնոյն Նասրէտտին Թուսեայ. որոյ ցարդ երևին աւերակք 'ի բլրի ուրեմն. հուպ 'ի քաղաքն յայլում քարայրերին հատեալ կան տաճարաձև անձաւք և սենեակք 'ի վաղ ժամանակաց: Հին և անշուք է քաղաքն, ունի գեղեցիկ բաղանիս և կամուրջ մի: Բնակիչք 15,000, Պարսք, Հայք, Հրեայք և Քաղդեացիք: — Յելից Մարաղայ կայ ՀԷՇՏԱՐՈՒՏ վիճակ յահեկէ Քարանկու գետոյ, Սէրէսքէնտ քաղաքաւանաւ. 'ի հարաւակողմն գետոյն առ խառնրդով վտակի միոյ կան զարմանալի աւերակք Գալէի Զոհաք (Բերդ Աժդահակայ) կոչեցեալք, քարաշէն աւան, գեղեցիկ դրամբ, յորոյ վերայ կայր երբեմն և արձանագիր հին:

115. Յելից վիճակիս և Սիւհէնտայ մինչև ցելս Ատրպատականի 'ի սահմանս Կիլանայ ձգի գաւառն ՄԻԱՆԷ, 'ի հիւսիսոյ Գըզըլէօզէյնայ և Իրաք Աճէմի

---

(1) Յետ գրելոյ մեր զայսոսիկ՝ ծանեաք զի սասանութիւն սաստկագոյն գրեաթէ հիմնովին կործանէ զքաղաքս մեծ, 'ի 23 աւուր սեպտեմբերի 1854 տարւոյս: Ընդ նմին և զխոյ քաղաք (104) և գեօղեան բազում, թերևս և զայլս ոմանս 'ի ստորագրելոցս զորոց ոչ ունիմք ստոյգ տեղեկութիւն:

և 'ի հարաւոյ գաւառին Էրտէպիլայ. քաղաքն ՄԻԱՆԷ մերձ է 'ի խառնուրդս Շահի-Րուտայ և Քարանկուի 'ի Գըզըլէօզէյն, և կոչի Միյանէ նշանակելով միջասահման գոլ ընդ Ատրպատական և ընդ Իրագ. փոքր է և սակաւաբնակ, իբր 700 տամբք. այլ գեղեցիկ և բարեբոյս շրջակայիւք. և ճանապարհք 'ի չորից ծագաց նորին տանին 'ի գլխաւոր նահանգս արևմտեան Պարսից. Ի հարաւոյ նորուն ընդ մէջ Գըզըլէօզէյնայ (որ Թուի Գօզան գետ յիշատակեալ 'ի Ս. Գիրս) և Աշփօղխօռ-չայ օժանդակի նորին՝ յահեկէն, ձգին Քօֆլան կամ Քաֆլան-Քուհ լերինք անջրպետք երկին նահանգացն. և յանցս գետոյն որ տանի 'ի Նոսին՝ արկեալ է գեղեցիկ և մեծ կամուրջ աղիւսեայ 23 կամարօք: — Ցարևմտից Միանէի առ Շահի-Րուտաւ ձգի վիճակն ԽԱՄՍԱՆ. յորում 'ի վերայ արքունի ճանապարհին Դաւրիժու և Միանէի՝ կայ ամուր աւանն ԹՈՒՐՔՄԷՆ-ՉԱՅ, ուր յամին 1827 կնքեցան դաշինք հաշտութեան ընդ Պարս և Ռուսս. առքա յետինքս հատին յայնժամ 'ի շահէն զՎրաստան և զԱղուանս և զՀայս մինչև ցԵրասխ գետ: — Ի հիւսիսոյ Միանէի կայ ԿԷՐՄԻԱՆ վիճակ ցՊուղլու-լ լեառն 'ի հիւսիսոյ, և ԽԷԼԽԷԼ կամ Խալխալ վիճակ յարևելից ցԿիլան նահանգ:

116. Ի մտից Կիլանայ, 'ի հիւսիսոյ Միանէի, յելից Սուրխապայ և աղի դաշտին, և 'ի հարաւոյ Գորօ-չայ կամ Տէրէաի-Րօտ գետոյ (որ Թափի յԵրասխ), և յարևմտից հարաւոյ Մուղան անապատի՝ կայ գաւառն ԷՐՏԷՊԻԼ կամ ԱՐՏԱՒԻԼ, յորում ամբառնայ բարձրագոյն լերանց Ատրպատականի, անուանին Սէվլան կամ Սավէլան որ է Սաւալան 12200', յորոյ գագաթան են հնացուածք քարանց շինուածոց և արձանագիր ևս եղծեալ, և պատուի անդ 'ի մահմետականաց գերեզման սրբազանի ուրումն, և անդ ասեն զեռալ զմի յականց եդեմաբուխ գետոց. զի և յամենայն կողմանց լերինն բղխեն վտակք անթիւք, որք աղբիւրացուցանեն զգլխաւոր գետս արևելեան Ատրպատականի. յարևմտից կողմանէ ստորոտ լերանցն աղխաղխեալք ձգին ցսահմանս Վասպուրական Հայոց: Քաղաքն ԱՐՏԱՒԻԼ յարևելից կուսէ լերինն կայ և յարևմտից Պաղրօ-Քուհ լերանց Կիլանայ, իբր 34 մղոնաւ մերձ 'ի ծովէն Կասպից, 'ի բարձու 4235', առ Պալըխլը-սու գետով որ խառնի 'ի Գարա-չայ. պարըսպապատ է և աշտարակազարդ, հնագոյն շինից աւերակօք կարկատեալ. անուանի է վասն գերեզմանաց Սէֆեան արքունի տոհմին, զի Շէյխ Սէֆի նախապետ նոցին աստ մեռաւ յամին 1334. շիրիմ նորա և Շահ Իսմայէլի առաջնոյ Թագաւորի տոհմին և այլոց համազարմից, կան 'ի հոյակապ արծաթագուռն և ճոխազարդ մզկիթի, այլ ոչ սակաւ խանգարեալ է վայելչութիւն նոցա 'ի սասանութենէ երկրի, և մատենադարան աղօթանոցին յաւարի առեալ 'ի Ռուսաց: Ճանապարհք կարաւանաց ձգին յԱրտաւիլայ ընդ բազում կողմանս, յորոց մին տանի 'ի հիւսիս 'ի Պաքու և 'ի Տէրպէնտ: Բնակիչք իբրու 4000 ևեթ, քանզի ոչ է յոյժ հաճելի կլիմայն, վասն երկար ձմերայնոյն, որով և բուսաբերութիւն սահմանացն նուազեալ է: Գտանին 'ի մերձաւոր վայրսն աղբերք հանքային ջերմ և ցուրտ ջրոց:

117. Ի հիւսիսի Սէվլանայ կայ ՄԻՇԿԻՆ վիճակ ցԳարա-սու. և յայն կողմն սորա, այսինքն 'ի հիւսիսի՝ ԱՐՇԱԻ-ՎԷԼԽԻ վիճակ, 'ի մտից Կիլանայ. 'ի հիւսիսոյ նորա ՈՒՃԱՐՈՒՏ. անտի և 'ի վեր ցԵրասխ գետ և ընդ արևմուտս ցբուն Գարա-սու կամ Տէրեաի-Րուտ, երկիրն մասն է ՄՈՂԱՆ անապատի կամ մեծի երիզուռ դաշտի, որ մասամբ բնակեալ է 'ի Թիւրքմէնից, և մասամբ անբնակ, և ձմերային արօտք անթիւ հօտից վրանաբնակաց: Արևելեան և հիւսիսային կէս Մուղանայ առ Կասպիականաւն՝ Ռուսաց բաժին է: — Ցարևմտից Միշքինայ և 'ի ստորին հարաւային մասին Տէրեաի-Րուտայ կայ ԱՀԱՐ կամ ԷՀԷՐ վիճակ, տարածեալ առ համանուն գետով, որ 'ի կողմանց Մարանդայ գայ յարևմտից և օժանդակէ զԳարասու. յաջմէ կամ 'ի հիւսիսոյ նորին կայ քաղաքն ԱՀԱՐ, որ ոչ միայն վիճակին գլխաւոր քաղաք է, այլ և համօրէն ԳԱՐԱՏԱՂ գաւառի, որ կայ յելից Մարանդ գաւառի, 'ի հարաւոյ Երասխայ և Գարապաղայ, և 'ի մտից Տէրեաի-Րուտայ. փոքր է և սակաւաբնակ իբր 700 տամբք: Շուրջանակի պարտէզս ունի սեխենեաց, և ոչ հեռի 'ի լերինան՝ երկաթահանս: Մերձագոյն Երասխ գետոյ վիճակք են ՔԻՎԱՆ և ԷՆԿՈՒՉԷԹ, և ոչ սակաւ ամուր վայրք 'ի նոսա:



Խաչարձան յԱնի. — Croix funéraire (Ani).

# ՌՈՒՍԱՑ ՀԱՅԱՍՏԱՆ

118. Ընդ ձեռամբ Ռուսաց երկու ազգք գաւառաց են Հայոց, կէսք մասն բնիկ Հայոց Մեծաց, և կէսք Աղուանից–Հայոց և յարելոց 'ի նոյնս լեռնակողմանցն Կովկասայ: Առաջինքն 'ի չորս Նահանգս զատուցեալ են, Սոմխէթ և Սամցխէ, Հայկական Նահանգ կամ Երեւան, Գանձակ, և Գարապաղ. Սոմխէթ-Սամցխէ մասն համարի մեծի կուսակալութեանն Տփխեաց, և Գարապաղ՝ Շէմախեայ կամ Կասպիական կուսակալութեան, որ գրաւէ զարտաքին մասն Հայոց, Նահանգս վեց, այսինքն են Շաքի, Շիրուան, Թալիշ, Պաքու, Քուպա և Դարբանտ. յետինքդ Թէպէտ և գուն ուրեք անկան ընդ Հայոց իշխանութեամբ, այլ զի յաճախ յիշին 'ի վէպս ազգիս և սահմանակիցք են մերոյ աշխարհիս, և զի ոչ նկարագրեցան 'ի կարգի աշխարհագրութեանս՝ յիշատակին աստ:

## Ա. ՍՈՄԽԷԹ կամ ՎՐԱՀԱՅՔ

119. Հիւսիսակողմն Հայոց աշխարհի ընդ ձեռամբ Ռուսաց՝ գրաւեալ է ըստ վարչութեան 'ի մեծի կուսակալութեան Տփխեաց, և երեք գաւառք են 'ի նմա, Ախլցխա 'ի հիւսիսոյ արևմտից, Գիւմրի 'ի հարաւոյ, և Փոռչալու 'ի հիւսիսոյ արևելից:

Ա. ԱԽԸԼՑԽԱ կամ ԱԽԱԼՑԻԽԷ գաւառ, որ ՍԱ–ՄՑԽԷ կոչի 'ի Վրաց (այսինքն Երկիր Մծխեաց կամ Մեսխաց) սահմանի 'ի հարաւոյ՝ Օսմանեան գաւառօք Արտահանոյ (53) և Չըլտըրայ (37) կարուց, յարևմտից՝ Եգերացոց երկրաւ և Կուր գետով, 'ի հիւսիսոյ և յելից՝ լերամբք որ անջրպետեն ընդ Փոռչալու և ընդ Սոմխէթ գաւառս, և Խրամ (Քցիա) գետով. 45,000 բնակիչք են գաւառին: Բնիկ վիճակ ԱԽԱԼ-ՑԻԽԷ քաղաքի, որ Թարգմանի Նոր Բերդ, յարևմտից հարաւոյ գաւառին կայ, 'ի հինն ՕՑԽՐԷ կամ ՈԾՐԱԽԷ Նահանգի, որ յարևմտեան հիւսիսային ծայրս աշխարհին Գուգարաց և ամենայն Հայոց. քաղաքն 'ի վերայ համանուան գետոյ օժանդակի Կուրայ կառուցեալ է, 'ի քարափին բարձու 3000', բաժանեալ 'ի հին և 'ի նոր քաղաք և 'ի բերդն, զոր 'ի Թամարայ Թագուհւոյ ասեն շինեալ. Նշանաւոր է մզկիթն մեծ 'ի ձև Ս. Սոփիայ Կոստանդնուպօլսոյ շինեալ, զոր յեկեղեցի փոխել կամեցան Ռուսք, տիրեալ քաղաքիս յամին 1828. և ածին այսր գաղթական Հայոց, 'ի Կարսայ և 'ի Կարնոյ, որք և շինեցին զնոր քաղաքն. եկեղեցիք ութ են 'ի քաղաքին, յորոց երեք Հայոց արևելեայց և երկու հռովմէական Հայոց. երկուք յեկեղեցեացն հինք են, յորոց մի է յանուն Ս. Յովհաննու 'ի բարձու բերդին, որոյ է պատկերս առաջի եդեալ: Բնակիչք քաղաքին են իբր 13000 ոգիք, որոց երկու մասն Հայ է, և մի մասն Վրացի, Թուրք և Հրեայ և այլազգիք:

120. Ցարևմտակողմն Ախըլցխայ 'ի կողմանս ԱԳԱՍ–ԹՈՒՄԱՆ վիճակի որ 'ի Հախմէ գետոյն կայ՝ Սմբատ Բիւրատեան սպարապետ Արտաշիսի Բ կառոյց զՏեհող բերդ ընդդէմ արշաւանաց հիւսիսայնոց: — Ի հիւսիսոյ Ախըլցխայ յաջմէ կամ յելից Կուրայ կայ ԱՋՂՈՐ վիճակ, համանուն ամուր բերդաւանաւ, որ է ԱՍԿՈՒՐԷԹ ըստ Նախնեաց, ընդ որով բանակեցաւ երբեմն Աշոտ Երկաթ և եհար զդաւաճան Գնունիս. և աստ ուրեմն 'ի հերուն (1853) յարձակեալ Օսմանեանց 'ի վերայ Ռուսաց՝ ընկրկեցան յետս: Ունի հոյակապ եկեղեցի և ուխտ Տիրամօր, զորոյ պատկեր ասեն Անդրէի առաքելոյ բերեալ այսր: — Ի հարաւոյ Աջղորոյ և յելից Ախալցիխեայ, 'ի հիւսիսոյ Ախալքալաքի կան վիճակքն ԱՍԲԻՆՁԱ և ԽՆՐԴՎԻՍ 'ի հին գաւառին ՋԱՒԱԽԱՑ. Խերտվիս աւան՝ ունի ամրոց հզօր և վայելուչ առ Փառաւան գետով. — ԱԽԱԼ-ՔԷԼԷՔ վիճակ հարաւային մասն է գաւառին կամ Սամցխեայ, 'ի հին Ջաւախս, յորում են լիճք շատ, և գլխաւոր Փառաւան կամ Թափառաւան 'ի հիւսիսոյ արևելից. Ժառանգութիւն էր վիճակս Թոռին Քարթլոսի եղբօրն Հայկայ, Նահապետի Վրաց, և ցարդ բնակեալ է 'ի Վրաց և 'ի յոլովից ևս Հայոց, որք զնոցին զվրաց լեզուն խօսին, որպէս և յամենայն Սամցխէ և 'ի Սոմխէթ. քաղաքն ԱԽԱԼՔԱԼԱՔ որ Թարգմանի Նոր-քաղաք, յեզր Փառաւան գետոյ՝ ունի ամրոցս, և վաճառանոցս յաջող առևտրի: Համօրէն



Եկեղ. Ախալց. — Vieille Eglise (Akhalzikhé).

բնակիչք վիճակիս են 6 կամ 7000 ոգիք, յորս Հայք երրորդ մասն և աւելի ևս:

121. Բ. ՊՈՌՉԱԼՈՒ գաւառ, մասն բուն Նահանգին Տփխեաց, 'ի հարաւոյ կայ Նորուն և Խրամ գետոյ, յարևելից Ախալքէլէքի, 'ի հիւսիսոյ Սոմխէթայ և յարևմտից խաղախ գաւառի Նահանգին Գանձակայ. և ինքն մասն է Գուգարաց աշխարհի, ունի բնակիչս 30.000 կամ աւելի: Ի հիւսիսակողմն արևմտից գաւառին առ ակամբք Քցիա կամ Խրամ գետոյ կայ ԹՐԻԱԼԷԹ վիճակ, որ է ԹՌԵՂՔ գաւառ լեռնախիտ. յորում Սմբատ Բիւրատեան զօրավար Արտաշիսի Բ ի եհար զՎ իրս. գլխաւոր տեղի վիճակին է ԾԱԼՔԱ կամ Ծալկա բերդաւան բարձր: — Զափամբք Խրամայ և Ալկէթ գետոյ (որ 'ի Նորին հիւսիսոյ ընթանայ, և յարևելեան հարաւային ծայր գաւառին խառնին երկոքեան ևս 'ի Կուր), կան վիճակքն ԱԼԿԷԹԻԽԵՒ և ԽՐԱՄԻ, 'ի հնումն ՄԱՆԳԼԵԱՑՓՈՐ և ՊԱՐՈՒԱՐ? գաւառաց վիճակեալք, որք ձգէին մինչև 'ի Կուր և 'ի Տփխիս, և վաղ ուրեմն նուաճեցան ընդ ձեռամբ Վրաց. Նշանաւոր տեղի է Մանկլիս աւերակ, այլ կանգուն ունելով զհին եկեղեցին զշինեալն առ Կոստանդիանոսիւ և նորոգեալ 'ի յետնոց և եպիսկոպոսանիստ լեալ. առ երի կառուցեալ և Նոր Մանկլիս, ամարանոց և զօրանիստ Ռուսաց: Ցարևմտակողմն՝ յելից Լէտաշա լերանց որ անջրպետեն ընդ Թռեղս, յանկեան գետոյն Խրամայ և վտակի միոյ՝ կան աւերակք ՕՐԲԵԹԻ կամ ՇԱՄՇՈՒԼՏԷ բերդի (որ Թարգմանի Երեք-Նետ) հայրենի ժառանգութիւն Ուրպելեան տոհմի եկելոյ 'ի Ճենաց յաւուրս հարըստութեան Հայկազանց. բազում շինուածոց և քարակերտ տանց են անդ մնացուածք և եկեղեցեաց Հայոց. 'ի ԺԵ դարու Լէնկթիմուր և Ճինկանշահ աւերեցին զբերդս զայս: Հանդէպ նորա և գետոյն կանգնեալ է Հայոց զնոր Շամշուլտէ գեօղ և բնակեալ յ'30 տանց: — Ի հարաւոյ Թռեղաց և Լեաքվա լերանց և 'ի մտից Պոռչալուայ կան փոքր վիճակքն ՍՔՈՒԻՐԷԹ և ԱՊՈՑ կամ ԳԱՑՔՈՒԼԻ, որոյ լերինք անջրպետեն ընդ Ախալքէլէք և ընդ Պոռչալու գաւառ:

122. Բնիկ վիճակն ՊՈՌՉԱԼՈՒ տարածանի զհարաւով գաւառին 'ի հիւսիսոյ Տաշըրաց, և է հին երկիրն ԴՄԱՆԵԱՑ և ԲՈՂՆՈՓՈՐոյ, միջատահման ընդ Տաշիրս ունելով զԼէլվար լերինս, յորում պղնձահանք են անուանիք, ժառանգութիւն Արղութեան տոհմի յԺԳ դարէ հետէ, և կարկեհան քար, վասն որոյ և Լէլ–Վար կոչին լերինքն. ընդ որս են և անցք ճանապարհի յԱղաղլէօյի–ն տեղւոջ 5460' բարձու: Բազում գետք են 'ի վիճակիս մեծի, այլ գլխաւորն Պոլոլու կամ Տէղէփա որ է Զօրոյ-Գետ ըստ հնոց, խաղայ յարևելս 'ի Սոմխէթայ եկեալ, և խառնեալ ընդ Խրամայ Թափի 'ի Կուր: Ցարևմտակողմն յելից Շինգար լերին առ Մոլովէր կամ Փոքր Խրամ գետով կայ Դմանիս գիւղ, որ է հին ՔԱՂԱՔՆ ԴՄԱՆԵԱՑ, որոյ կան մնացուածք սակաւ: Իսկ Բոլնիս կայ յարևելից առ Բոլոփառի գետակաւ 'ի հարաւոյ Խրամայ. առ որով կան հին եկեղեցիք, և 50 տուն Հայոց: Ի հիւսիսոյ նորա յափն Մաշավերայ կայ Քաթարինէնֆէլտ գեօղ գերմանացի գաղթականի 120 տամբք: — Ընդ մէջ Բոլոտաւրի և Պոռչալու գետոց խաղայ Շուլավէրի վտակ և առ նովաւ կայ ՇՈՒԼԱՎԷՐ քաղաքաւան Պոռչալու վիճակի, 500 տամբք, յորս 400 Հայոց են, որոց է առընթեր և գեօղ մի Փոքր Շուլավէր կոչեցեալ:

123. Արևելեան կամ աջակողմն Պոռչալու գետոյ ցելս սահմանաց գաւառին և անդր ևս՝ 'ի հնումն կոչէր ՁՈՐՈՑԳԵՏՔ ևս և ՍԵՒՈՐԴԵԱՑ ՁՈՐ կամ ԱՇԽԱՐՀ, վասն ափափայ խորաձորոց ընդ որս ընթանայ գետն, իսկ Սեաւ՝ վասն Սեւկոյ նախահօր բնակչաց կողմանն, որ մասն է Գուգարաց, այսինքն ՁՈՐՈՓՈՐ, ԾՈՐՈՓՈՐ, ԿՈՂԲՈՓՈՐ գաւառք նորին, որ մասամբ անկանին և յայն կողմն գաւառիս 'ի Խաղախ վիճակ: Անուանի եղև յաւուրս Բագրատունեաց, և զկնի ցԺԴ դար՝ հռչակաւոր վանորայիւքն Հաղբատ և Սանահին, որք յելից գետոյն 'ի քարափունս ձորոյն կառուցեալք են առ մանր գետակօք, ժամու հեռիք յիրերաց. Սանահին 'ի մտից հարաւոյ կայ ընդարձակ և ամայի, շինեալ 'ի Խոսրովանոյշ թագուհւոյ Հայոց յամին 967. կանգուն ունելով զհոյակապ և բարձրագմբէթ եկեղեցին Ամենափրկիչ, և այլս մանունս, և մասն մենաստանին, և գերեզմանք թագաւորաց, իշխանաց և իմաստուն վարդապետաց: Հաղբատ 'ի հիւսիսոյ արևելից կայ, զուգակից՝ շինութեամբն ժամանակաւ և յօրինուածով, և մեծագործ ևս քան զայն, Ս. Նշան տաճարաւ և բազում մատրամբք և գրատամբ և սենեկօք, համակ քարաշէն. յոլովագոյնք ևս 'ի սմա ննջեն իշխանազունք և արք իմաստունք, ընդ որս և Սարկաւագ վարդապետ և Կորիկեան թագաւորք: Բազում եկեղեցեաց և վանորէից մնացուածք գոն և 'ի սահմանս սոցա, և 'ի համօրէն գաւառին Ձորոգետոյ, նշանակք բարեպաշտութեան և մեծագործութեան արքայական շառաւիղաց Բագրատունի տանն Հայոց և Վրաց, և իշխանաց յարեցելոց 'ի նոսա. յորոց մի է և Աւագ կամուրջն 'ի թիկանց Սանահնի 'ի վերայ Ձորոյ գետոյն, արկեալ 'ի Նանայ թագուհւոյ քեռէ Զաքարէի և Իւանեայ, որ անխախուտ կայ ցայսօր գեղեցիկ արձանագրաւն, որ և մահարձան է յիշատակի վաղամեռիկ ամուսնոյ իւրոյ Աբասայ արքայի թագաւորելոյ 'ի Տաւուշ (161): Կամուրջ մի ևս վեհագոյն և հռչակաւոր ընդ ամենայն տունն Վրաց՝ 'ի ծայրս գաւառիս կայ առ խառնրդովքն Խրամայ 'ի Կուր, այն է Կարմիր կամուրջ՝ զի յաղիւսոյ թրծելոյ է, կամ Կոտրած–կամուրջ, որպէս կոչեն թաթարք Սընըք–քէօփրի, զի սակաւ ինչ աւերածս ունի արդ, յետ քակման հնոյն նոր սա շինեալ յամին 1647 'ի Ռոստոմայ Վրաց արքայէ. 400' երկայն և 30' լայն: Ցայն կողմն Կարմիր կամրջոյն կան աւերակք ԽՈՒՆԱՆ քաղաքի զոր ասեն կառուցեալ Քարթլաւսի եղբօր Հայկայ, և Գըզլ-Գալէ կոչի արդ 'ի Թուրքաց վասն բերդին. և է ըստ իս ՀՈՒՆԱՐԱԿԵՐՏՆ քաղաք 'ի ծայրս սահմանակցութեան Հայոց և Վրաց և Աղուանից: — Միւս ևս բերդ անուանի Աքճա-Գալէ 'ի Թուրքաց և Թեթրի-ցխէ 'ի Վրաց կոչեցեալ՝ կայ յարևմտից մեծի կամրջիս հեռի հինգ ժամու կամ աւելի, և անդ նստի կողմնակալ Պոռչալուայ:



Կարմիր կամուրջ. — Le Pont-Rouge.

124. Յարեւմտից հարաւոյ Սանահնի յայն կողմն (յանհեակ) Ձորոյգետոյն կայ Օձուն կամ Ուզունլար գեօղ, յորմէ էր մեծ իմաստասէր հայրապետն Յովհան յելս Է և 'ի սկիզբն Ը դարու. մահարձան հոյակապ կայ 'ի գեղջն և կարծի Սմբատայ Բագրատունւոյ լինել նահատակելոյն 'ի Դունի. իսկ գերեզման հայրապետին որ և ուխտատեղի՝ կայ 'ի Վ. Խըլաղաջոր տեղւոջ մերձ յԱւբոտ գեօղ, յարեւմտից Օձնայ: — Ի հիւսիսոյ Արդուեայ առ Աքհէնոփ գիւղիւ կայ հռամայրն Ս. Նշան ուխտն, քարայրք և եկեղեցիք. հանդէպ նորին աւերակք Կուշէի բերդի. մերձ նոցին Քոբայր անուանի մենաստան, կանգուն եկեղեցեաւ շինեալ 'ի կէս ԺԲ դարու. և առ Աքոռի գիւղիւ 'ի հիւսիսոյ Օձնայ՝ աւերակք տաճարանից: — Գաւառս Փոռչալուայ մասն է ՍՈՄԽԷԹԻ որ ըստ Վրաց նշանակէ զհայս, որպէս թէ Վրահայք գաւառ իշխանութեան նոցին (1):

125. Գ. ԿԻՒՄՐԻ կամ ԱՂԵՔՍԱՆԴՐԱՊՕԼ, որ սահմանի յարեւմտից Ղարսաւ, 'ի հիւսիսոյ և յելից Փոռչալուաւ, 'ի հարաւոյ՝ Հայկական նահանգաւ. և ունի զգաւառս ինչ Գուգարաց և զմիջին հիւսիսային կողմն Այրարատայ. և բնակիչս 40.000: Հիւսիսակողմն գաւառիս 'ի հարաւոյ Լեռնվար լերանց՝ է վիճակն ԼՕՌԻ, 'ի հին ՏԱՇԻՐՍ, ոռոգեալ յարեւմտեան կամ 'ի սկզբնաւոր վտակաց Տեպետոյ (Ձորոգետոյն), որք են Չէնկիլէր-սու և Ճիլկ. ժառանգութիւն սա Գուշարայ Հայկազնոյ առ Վաղարշակաւ լեալ, լուսաւորեցաւ կրկին քարոզութեամբ Ս. Մեսրովպայ. և թագաւորք Բագրատունիք 'ի Ժ և ԺԱ դարս պայազատեցին 'ի սմա, եդեալ զաթոռ իւրեանց 'ի բերդաքաղաքն ԼՕՌԻ կամ ԼՕՌԷ, պատեալ 'ի Ճիլկայ և 'ի Չէնկիլէր գետոց և հզօր պարսպօք, որոց միջավայրն աւերակ է այժմ. Գուրգէն որդի Աշոտոյ Ողորմածի նախ ժառանգեաց զսա, և զի 'ի Վրաց Կորիկէ կոչիւր, յայն անուն և թագաւորութիւնն կոչեցաւ Կորիկեան. բայց սերունդք նորա զրկեցան 'ի Վրաց, և յԺԲ և յԺԳ դարս թագաւորէին 'ի կողմանս Ձորոգետոյ և Խաղախայ: Այժմեան գլխաւոր տեղի վիճակին է Ճէլալ-օղլու առ Ճէլալ գետով որ նոյն ինքն է Ճիլկա: Ոչ սակաւ մնացուածք եկեղեցեաց և շինութեանց են և յայսմ վիճակի. յորոյ հարաւոյ ձգի ԲԱՄԲԱԿԻ վիճակ յանուն երկայնաձիգ լերանցն, որ թուին լերինքն ԿԱՆԳԱՐՔ գաւառի Գուգարաց, անջրպետք Այրարատայ. գետ համանուն անցանէ 'ի հարաւոյ, և յաջմէ նորին որ է 'ի հարաւոյ՝ Գարագիլիսէ գլխաւոր գեօղ վիճակիս. յորում վասն լեռնակոհակ անհարթութեան երկրին՝ սակաւ են գեօղք. գլխաւոր լերինքն ընդ մէջ Լօռւոյ և Բամբակի գետոյ՝ Պէզօպտալ կոչին. իսկ հարաւոյ արեւելակողմանն ընդ մէջ Կիւմրւոյ և Այրարատոյ՝ Գուրողող, յորում և անցք են Ճանապարհի յ'7340 բարձու:

126. Բուն վիճակն ԿԻՒՄՐԻ յելից կայ Ախուրեան գետոյ, 'ի հիւսիսոյ Արագածու, և 'ի հարաւոյ Բամբակայ, և մասն է Շիրակ գաւառի (38). քաղաքն ԿԻՒՄՐԻ յեզր գետոյն կայ 'ի վերոյ քան զՂաշ Շօրէկէլ իբր չորիւք ժամուք. գեօղ անշուք էր տեղիս յառաջ քան զքսան ամ. և 'ի գաղթականէն Հայոց եկելոց 'ի Կարուց և 'ի Պայէզիտոյ շինեցաւ քաղաք ընդարձակ 'ի բարձրաւանդակի 4820'. և յանուն դըշ-

(1) Զգաւառս զայս և զհաւաստաւոր վանորայս մանրապատում տեղագրեալ առաջնորդին Հաղբատայ բանասէր Վարդապետին տեառն Սարգսի Ջալալեանց, և տպագրութեամբ հրատարակեալ է յամին 1842 'ի Տփխիս:

խոյի կայսերն Ռուսաց կոչեցաւ ԱՂԵՔՍԱՆԴՐԱՊՕԼ յամին 1834 · Ռուսք շինեցին 'ի նմա բերդ և զօրանիստս, և մաքրարան վաճառ եկելոցն յՕսմանեան երկրէ · կանգնեցան և եկեղեցիք և շուկայք ։ Այժմ իբրև 2500 տուն բնակիչք են նորա, որոց 2000 տունք Հայոց ։ Սահմանք քաղաքին զուարճալիք են և ամենաբերք ։ — Իբր երիւք ժամուք 'ի հիւսիսոյ քաղաքին առ գետեզերբն և Ղանլըճա գիւղիւ կայ անուանի մենաստանն Մարմաշէն շինեալ յելս Ժ դարու 'ի Պահլաւունեաց հօրեղբարց Գրիգորի Մագիստրոսի, որոյ կանգուն կայ գմբեթաւոր եկեղեցի անսիւն, և յիշատակք շինողացն և նորոգողաց ՅԺԲ դարու, յորոց մի և Մարիամ դշխոյ Ափխազաց, և Թերևս յանուն նորա կոչիցի, և ոչ որպէս ոմանց կարծեցաւ Մարմարաշէն կոչիլ, 'ի սակս նիւթոյ քարանցն, այլ չերևի 'ի նմա մարմար, բայց կիծ կարմիր ։ — Պանփուղան կամ Պէնփըլէան 'ի հիւսիսոյ ևս չորիւք ժամուք, առ որով աւերակք Գըզըլ-Խալ կոչեցեալ ։ Նոյնքան ևս 'ի վերոյ 'ի հիւսիսոյ Խաղանձը գեօղ 'ի սահմանածայրս վիճակին առ Ապոցաւ, յորոյ Թիկանց ամբառնայ Աղլախան լեառն 9400' · և 'ի հարաւոյ նորա Խարախաչ լեառն առ որոյ ստորոտով աւերակք հնոյ շինի մեծի՝ Խարապա կոչեցեալ ։ — Ի հարաւոյ Կիւմրոյ կայ Գարագիլիսէ աւան 300ովք հայաբնակ տամբք ։ Ի հարաւոյ նորա Պայընտուր գեօղ յեզր Ախուրենի հանդէպ խառնրդոց գետոյն Չըլտըրայ · առ սովաւ 'ի հերուն (1853) Օսմանեանք միջամուխ եղեալք հարան 'ի Ռուսաց ։ Ի հարաւոյ հեռագոյն մերձ 'ի ծայրս սահմանաց վիճակին առ գետակաւն՝ որ Թուխ հինն Բոռն՝ կայ Զարէլար գեօղ, առ որով կամուրջ յԱխուրեանն ։ — Ցարևելս Կիւմրոյ նշանաւոր տեղի է Ղըէնլու գիւղ 'ի ստորոտս Արագածու, յորում կայ Հառիճոյ Ռոփին մենաստան շէն և եկեղեցի հոյակապ շինեալ 'ի Զաքարիայէ սպասալարէ յամին 1201 · մեծագոյն ևս եկեղեցի կայ յԱրդէւ գեղջ յարևմտից Ղըփչախայ, յանուն Ս · Լուսաւորչի ։ — Ոչ պակաս քան զ'80 գիւղորայք են 'ի վիճակին Կիւմրոյ ։

## Բ · ՀԱՅԿԱԿԱՆ ՆԱՀԱՆԳ

127 · ՀԱՅԿԱԿԱՆՆ ՆԱՀԱՆԳ Ռուսաց՝ որպէս կոչեցին նոքա, ստորին արևմտեան մասն է բաժնի նոցին, և յայնմ կողմանէ սահմանս ունի զՕսմանեան և զպարսկային Հայս, յԱնւոյ ցԿաղզուան՝ առ Ախուրենիւ · անտի ընդ արևելս խոտորեալ և անջրպետեալ լերամբք ցՄասիս, և անտի ցԵրասխ ըստ հիւսիսի արևելից · և ապա Երասխաւ սահմանի ցՈրդուպատ, որ զհարաւային սահմանն ձևէ · յարևելից լերինք Սիւնեաց կամ Գարապաղու սահման հատանեն ցարևելեան հարաւային ծայրս ծովուն Գեղամայ, և այլ լերինք պատեալք զելիւք նորա · և 'ի հիւսիսոյ նորա և նահանգին լերինքն Իչէկ-Մէյտան, և Արագած, և անտի ցԱնի՝ գաւառն Կիւմրի · և ունի Հայկական նահանգս զմեծ մասն հին աշխարհացն Այրարատայ և Սիւնեաց ։ Բովանդակ երկիրն կոչի և ԿՈՒՍԱԿԱԼՈՒԹԻՒՆ ԵՐԵՒԱՆԱՑ, և պէսպէս տրոհի 'ի մեծ և 'ի փոքր գաւառս, յերկուս կամ 'ի չորս կամ յուԹ · ըստ յետնոյս կամ ըստ մանր բաժանման՝ գաւառք կամ վիճակք են՝ Սարդարապատ, Սուրմաղի, Զէնկիպազար, Կէօք-չայ, Շարուր, Տարալաղըզ, Նախիջևան, Որդուպատ, յորոց հինգ առաջինքն 'ի կողմնակալութեան Երևանայ են բաժանեալք 'ի վիճակս (մահալ) 17, երկուքն՝ Նախիջևանայ հինգ վիճակօք, յետինն առանձին կողմնակալութիւն հինգ վիճակօք · յորս միահամուռ են գեօղք և հանգրուանք 1110 · և 'ի նոցուն 750 բնակեալք, 360 ամայիք ։ Իսկ բնակիչք 180,000, կիսով չափ Հայք ։

128 · Ա · ՍԱՐՏԱՐԱՊԱՏ գաւառ յարևմտեան հիւսիսակողմն Հայկական նահանգին կայ, զԱխուրեանն ունելով յարևմտից և զԵրասխ 'ի հարաւոյ, յելից ընդ գետս դաշտին Վաղարշապատու, և 'ի հիւսիսոյ զգաւառն Կիւմրի · և ունի 'ի հիւսիսակողմանն զԱՐԱԳԱԾՈՑՆ գաւառ հին, 'ի հարաւոյ զԵրասխաձոր, և զմեծ մասն մի Այրարատեան դաշտին · յորում են աւելի քան զ'120 գեօղք, և բազում նշանաւոր տեղիք բնականք, շինականք և պատմականք · և առաջին 'ի բնական արձանս՝ լեառնն Արագած յանուն Արմենակայ որդւոյ Հայկայ, (Ալաքեազ ըստ ռամկաց) երկրորդ 'ի բարձրութեան 'ի չափեալ լերինս Հայոց, չեզջաձև ամբարձեալ քառահերձ գագաԹամբ, լիճ 'ի միջակին ունելով, և պաղածս ծծմբոյ 'ի ջրԹունսն, բարձրագոյն գագաԹանցն հիւսիսակողմանն է 12871'. մի 'ի հրաբղխից կանուխ ժամանակաց աշխարհիս Հայոց ։ Ի լեռնէ աստի բղխէ Մէծամօր գետ մեծս, և ընդ հարաւ խաղացեալ՝ յարևմտից Էջմիածնայ խառնի 'ի Քասաղ կամ Քարասու որ է Կարէնյ-ջուրն, և երկոքին միանգամայն ընկալեալ և այլ ևս վտակս՝ Թափին յԵրասխ · կոչի Մեծամօր և Շամբի-ջուր վասն եղեգանցն շամբից, յորս տեսեն անկեալ զՏրդատ 'ի խոզաձև պատուհասին ։ Ցելից գետոցս ընդ մէջ սահմանաց Սարդարապատայ և Կէօք-չայի կայ Արայի լեառն 7910' բարձր, առ որոյ ստորոտով բանակեալ տեսեն զԱրայն Գեղեցիկ, և անդ անկեալ մարտնչելով ընդ Շամիրամայ · այժմ Գառնը-Եարըխ կոչի լեառնն, վասն զի վերուստ 'ի վայր հերձեալ է 'ի բուռն ցնցմանց երկրի յառաջին ժամանակին (15) ։

129 · Արևմտեան հիւսիսակողմն գաւառիս է ԹԱԼԻՆ վիճակ 20 գիւղորէիւք, և համանուն աւանաւ յարևմտեան ստորոտս Արագածու 'ի բարձու 4254', 'ի վերայ արքունի ճանապարհին Կիւմրոյ, 50 հայ տամբք · են առ երի նորին աւերակք մեծի շինի ։ Ժամու հեռի է 'ի նմանէ և Նորն Թալին, ամայի, և առ երկոքումբք ևս լքեալ և կիսաւեր եկեղեցիք, արձանագրութեամբք Ժ դարու, և հնագոյն ևս մատուռն շինեալ 'ի Ներսեհէ Արշարունեաց և Շիրակայ տեառնէ յԷ դարու · և աշտարակ մի և պարիսպք հզօրք առ նորօք ։ — Ցելից Թալինայ կայ Աշնակ աւան, երբեմն ձմերոց Թագաւորաց Արշակունեաց ։ — Մաստարա գիւղ 100 տամբք 'ի հիւսիսոյ Թալինայ, և 'ի սմա գեղեցիկ հին եկեղեցի ուԹանկիւնի ։ Ցելից Թալինայ վիճակին կայ ՍԻՒՏԼԻ և ԱԽՍԱԽԼԸ վիճակ, 20 գիւղորէիւք, յորս և ԹԱԼԻՇ աւան 'ի տեղւոջ հնոյն Արուճոյ, ուր Գրիգոր Մամիկոնեան կանգնեաց իւր ա-

պարանս, և եկեղեցի մեծ և հոյակապ յամին 671, որ և բաց 'ի գմբէթէն՝ կանգուն կայ մինչև ցայսօր հազարամեայ արձանագրութեամբք. են առ նմին և մնացուածք դղեկի: — Ցելից հիւսիսոյ նորա 'ի կողս Արագածու կայ Կօշ կամ Կուաշ աւան, յորում նշանէր կուրացեալն Տիրան արքայ եղկելի, և տաղնջական լեալ Թոռին իւրում Գնելայ՝ վասն այն անգստանաւ հրամանաւ որդւոյ իւրոյ Արշակայ. են և առ նովաւ աւերակք. և մերձ է 'ի սա լճակն յորմէ Մեծամօրի (որ և Սեւ ջուր) ելանէ: Ցելից սորա 'ի ձորավայրս միմեանս կան Վժան, Տեղեր և Աղց, բազում աւերակօք. 'ի յետնումն Թաղեցին նախարարք Հայոց զոսկերս Թագաւորացն Արշակունեաց Թափեալ յաւերածոյ և պղծագործ ձեռաց Պարսից, 'ի գերութենէն Կամախայ (61) և ցարդ պատուի տեղին յայլազգեաց իբրև սրբազանի իրիք վայր: — Ցելից սոցա կայ հին գեղն ԱՆԲԵՐԴու կամ ԲՒՒՐԱԿԱՆայ, որոյ միայն կիսաւեր ամրոցք և եկեղեցիք 'ի ձորամէջս, նոյնպէս և յԱգարակ տաճկաբնակ գեղջ. իսկ յԱնբերդ բնակեն Հայք 40 տուն: Ցելից նորա կան Լուզըէան և Փոքր գեօղք և մենաստան, յանուն Ղազարայ Փարպեցւոյ Թարգմանչի, զորոյ և զգերեզման ցուցանեն անդ. վտակք մանունք անցանեն առ Անբերդաւ և Փարպով և Թափին 'ի Քասաղ առ Օշականաւ (134). Փարպոյ ջուրն կոչի և Շաղլըրդու ջուր:

130. Ցարևմտից վտակացս և 'ի հարաւոյ վիճակացն յիշելոց կայ ՍԱՐԴԱՐԱՊԱՏ վիճակ, համանուն քաղաքաւ յեզր Քուլաքէարի գետակի, շինեալ յամին 1819 'ի սարտարէն Երևանայ, աւերակօք հնոյ քաղաքի. որում ընդ հուպ տիրացեալ Ռուսաց՝ ամրացուցին և ևս զբերդն. են 'ի նմա 'ի միրազներայց տունք իբրև 70: — Ի հարաւոյ քաղաքին գլխաւոր գեօղ է Շէհրիւր, 70 հայեցի տամբք և նորաշէն եկեղեցեաւ: Ցելից գեղջս և 'ի հարաւոյ Թէյէֆիւլ գեղջ կան 'ի կարմիր լուսաքար բլրի կամ բարձրաւանդակի՝ ստէպ մնացուածք առաջնոյն և հնագոյնի քաղաքամօր Հայոց, այն ինքն է ԱՐՄԱՒԻՐ, շինեալ յԱրամայիսայ 'ի Հայկայ թոռանէ իբր 1200 ամօք յառաջ. և ընդարձակեալ 'ի Հարմայէ որ չորրորդ յԱրամայիսայ, այն որ 'ի բարձու բլրին կանգնեաց զամրոցն, յորոյ յաշտարակն երկաթի կարթիւ վարեաց որդի նորա քաջն Արամ զՆիւքար Մադեաց իշխան. ամս աւելի քան զ'2300 մայր և թագաւորանիստ քաղաք լեալ Հայոց, ապա սակս հեռանալոյն 'ի նմանէ Երասխ գետոյ և անջուր թողլոյ զտեղին, միանգամայն և զերկելոյ 'ի հզօր պաշտպանութենէ ալեացն, բառնաւ Արմաւիր յԵրուանդայ բռնաւոր արքայէ. այլ տակաւին նշանաւոր էր տեղին և 'ի Ե դարու, և ոչ է յայտ երբ իսպառ աւերեալ անշքեցաւ. զքարինս գերբկացն վարեցին 'ի շինութիւն Սարտարապատու և Շէհրիարայ, միայն տակաւին և 'ի տեղւոջն և 'ի գագաթան բլրին: Երբեմն և հին հունն Երասխայ Գօւր Արազ կոչեցեալ:

131. Ընդ մէջ Քալակեարի գետոյ և Ախուրենի և Երասխայ կան ԲԱՐՁՆԻՍ և ՍՀԱԹԼՈՒ վիճակք 30 գիւղովք, մասն Արշարունեաց կամ Երասխաձորոյ. և 'ի սմա Ախուրեանն խառնի յԵրասխ. յարևելեան անկեան խառնրդոցս 'ի Սհաթլու վիճակի կան աւերակք ԵՐՈՒԱՆԴԱԿԵՐՏ աւանի, գեղեցիկ դաստակերտին Երուանդայ՝ հանդէպ Երուանդաշատ նոր քաղաքամօր (41), որ յարևմտեան անկեան խառնրդոց գետոցն. յերկոսին ևս գերբուկք սեաւ և կարմիր լուսաքարից, մնացուածք գերեզմանաց քրիստոնէից և եկեղեցեաց. յորոց մի և Գըզըլ-Գուլէ կոչեցեալ, կիսաւեր տաճար մեծ և հոյակապ. բազում և այլ մնացուածք հնոց շինուածոց են յերկոսին ևս ափունս գետոյն մեծի Երասխայ, որ խաղայ ընդ բովանդակ դաշտս Այրարատեան, զոր հինքն օտարք Երասխեան դաշտ (Araxenus campus) կոչէին. և նա է սեպհականն բնավայր պայազատութեան Հայոց ազգի:

132. Ցարևելից վիճակացս ամենեցուն, և յարևմտից լերինն Արայի և Հրազդան գետոյ և հարաւային արևմտեան սահմանաց Երևանայ՝ ձգի վիճակն ԿԱՐԲԻ կամ դաշտն Վաղարշապատու, երկայնեալ 'ի հարաւոյ յափանց Երասխայ՝ ցԱնբերդ և ցստորոտս Արագածու, ուստի իջանեն նախայիշեալ գետքն յԵրասխ, տարածանելով զդաշտս բարձր 2800–2900': Այս է ընտիրն ԱՅՐԱՐԱՏ գաւառ, կամ գլխաւոր մասն ԱՐԱՐԱՏԵԱՆ ԵՐԿՐԻ. յորում 'ի հարաւ կոյս դաշտին յարևելից Քասաղայ կայ գլխաւոր տեղի նորին և նշանաւոր ընդ ամենայն Հայս ԷՋՄԻԱԾԻՆ գեօղ, վանք և աթոռ մեծի կաթուղիկոսին Հայոց, յ'2870' բարձու. չորիւք փարսախօք յարևմտից Երևանայ. տեղին յիշատակի յառաջ քան զ2500 ամս, առ Երուանդաւ հարբ Հայկազինն Տիգրանայ, առ որով 'ի Շրէշ բլրի՝ որ թուի կոչեցեալն այժմ Ուր յանէյ Կոնդ, քեռայր նորին Վարդգէս շինեաց կամ նորոգեաց զառաջին աւանն Արտամետ անուն, և յիւր անուն կոչեաց Վարդգէս. յետ բազում ժամանակաց Վաղարշ հաւ Ս. Տրդատայ ընդարձակեաց զաւանն և ամրացոյց և յիւր անուն կոչեաց ՎԱՂԱՐՇԱՊԱՏ որ և ՆՈՐ-ՔԱՂԱՔ կամ ՔԱՂԱՔՈՒԴԱՇՏ. ուր զգարնան եղանակն անցուցանէին Տրդատ և հայր նորա Խոսրով. և աստ եւս Ս. Գրիգոր զհրաշալի տեսիլն իջման Միածնին Բանին և զբաղխելն ուռամբ զհիմունս երկրի, վասն այսորիկ կոչեցաւ տեղին Էջ-Միածին կամ Էջ-Միածինն, և անուանի եղև և է հաստատութեամբ 'ի նմա քահանայապետական աթոռոյ Հայոց, որ և չէն մնայ յետ աւերման քաղաքին 'ի Մեհրուժանայ յամին 380. և երևին ցայսօր հետք պարսպաց քաղաքին յանուանեալ գեղջն Վաղարշապատ կամ Էջմիածին, արտաքոյ պարսպաց վանացն և ընդ մէջ եկեղեցւոյն Հռիփսիմեայ, զոր հանդերձ մեծաւ կաթուղիկէիւն Շողակաթաւ և մատրամբ Գայիանեանց, որք 'ի տեղւոջ նահատակութեան և թաղման կուսանացն սրբոց, շինեաց Սուրբն Գրիգոր. և վասն այնորիկ յայլազգեաց Իւչ-քիլիսէ կոչի ուխտն: Ի սկզբան անդ հաստատեալ էր վանս միանձանց 'ի նմա յանուն Սուրբենայ ուրումն առաջնորդի. յետ աւերածոյն Մեհրուժանայ նորոգեալ և ընդարձակեալ 'ի Վահանայ Մամիկոնենէ՝ կարգեցաւ ընդ տեսչութեամբ Ղազարայ Փարպեցւոյ. և անկեալ ընդ պէսպէս փոփոխութեամբք և անշքութեամբ՝ 'ի կէս ԺԵ դարու սկսաւ անդրէն



Էջմիածին. — La Cathédrale d' Etchmiadzin.

պայծառանալ՝ հաստատութեամբ կաթողիկոսական աթոռոյ փոխադրելոյ կամ բաժանելոյ 'ի Սսոյ, և նախապատիւ համարելով ամենայն պատրիարքաց և կաթուղիկոսաց Հայոց։ Ի սկզբանէ ԺԷ դարու և այսր բազում շինութիւնս արարին կաթուղիկոսունքն Մովսէս, Փիլիպպոս, Ղազար, Սիմոն և այլք։ Յետինս այս էած զմեծ կամ զարտաքին պարիսպս Էջմիածնայ որ և բրգամբք զարդարեալ է, և իբր փարտախաւ ունի շրջապատն, չորիւք դրամբք. կայ և ներքին պարիսպ դրամբք հինգ. 'ի միջոցի կրկին պարսպացն կան կրպակք, ախոռք, կալք, բաղանիք, և այլն։ Միջոց ներքին պարսպին բաժանեալ է 'ի կրկին քառանկիւնս և 'ի պէսպէս շինուածս, որպիսիք են Վեհարանն՝ որ է բնակարան կաթուղիկոսին, սենեակք միաբանիցն, սեղանատունն, և այլն։ Ի միջակի պարսպիս և համօրէն վանացն կայ տիեզերահռչակ կաթուղիկէն և մայր եկեղեցեաց Հայոց, շինեալ նախ 'ի Գրիգորէ և 'ի Տրդատայ, նորոգեալ յետ 80 ամաց, և դարձեալ քարաշէն կանգնեալ յամին 483 'ի Վահանայ Մամիկոնեանց, վերակացութեամբ Ղազարայ Փարպեցւոյ, անփոփոխ պահելով զառաջին չափն և ձևն, 'ի վերայ տեղւոյն իջման Միածնին. և 'ի մէջ Է դարու կրկին նորոգեալ՝ քարակերտ շինութեամբ գմբեթին 'ի Կոմիտասայ կաթողիկոսէ, և այլով ինչ մասամբ 'ի Ներսիսէ Շինողէ. և յետ հազար ամաց դարձեալ նորոգեալ յաւելուածովք խորանաց և կաթուղիկէից. միան տակաւին հնութիւնք 'ի տաճարիս նուիրելոյ Տիրամօրն և կոչեցելոյ Շողակաթ. որ երկայնաձև քառակուսի է, և կամարօք բաժանեալ 'ի թևս, ունելով իբրև 96՝ ընդ երկայնն 'ի ներքուստ և 88՝ ընդ լայն. և 'ի վերայ չորից ստուար սեանց սրածայր կաթուղիկէն 62՝ բարձր 'ի ներքուստ. եօթն խորանք են, արևելեանն հին և աւագ բեմն Շողակաթն, հարաւայինն՝ իջման տեղին. և մի 'ի խորանացն 'ի վերայ արևմտեան մեծի դրանն է, 'ի միջին դատիկոնի եռայարկ զանգակատանն, յորոյ 'ի վերնումն են զանգակքն. և մի 'ի նոյանէ ձուլեալ 'ի Դիպեթ աշխարհի Թաթարաց, նոցին տառից և սրբազան բանից դրոշմածովք. առաջի արևմտեան դրանն կայ ժամատուն ամարանի. և դրունք 'ի հարաւոյ և 'ի հիւսիսոյ. աւանդատունք յաջմէ և յահեկէ աւագ բեմին, մին նշխարատուն և պահարան սրբոց նշխարաց և գանձուց. յորում պահին Գեղարդն աստուածամուխ, փայտեայ պատկեր ձեռագործ Յովհաննու աւետարանչի՝ որ կարծի բերեալն 'ի Դարունից եկեղեցւոյն (86),



Յատակագիծ Էջմիած. — Plan de la Cathédrale.



Ս. Հռիփսիմէ. — Eglise de S. Ripsimée (Etchm.).

Թզաչափ մասն Նոյեան տապանին, Աջ սրբոյ Լուսաւորչին, Աջ սրբոյն Յակոբայ Մծբնեցւոյ, այլով մասամբ փայտի տապանին, Գեղարդն սրբոյն Հռիփսիմեայ, և այլն: Ի դասին են կրկին դուռք կաթուղիկոսի, ճարտար քանդակօք գրուագեալ. և այլ բազում քանդակք և պատկերք 'ի վերայ դրանց և կամարաց և ձեղուանն, յորոց շատք՝ ձեռագործք են Մկրտչի և Յովնաթանու Նաղաշ կոչեցելոց և Սանփանոսի Լեհացւոյ: — Յարևմտից տաճարին կայ կաթուղիկոսարանն, այսինքն բնակարան կաթուղիկոսին. և 'ի հիւսիսային և յարևելեան թևս՝ միաբանիցն բնակարանք. իսկ 'ի հարաւակողմն որ Ղազարապատ կոչի՝ հիւրատունն մեծ՝ շինեալ 'ի Ղազարայ կաթուղիկոսէ, և նորոգեալ յաւելուածով յամին 1839. ուր հաստատեալ է ժողովարան Սինհոդոսին, զոր կարգեաց կայսրն Ռուսաց յամին 1837 'ի վարչութիւն ուխտի եկեղեցւոյն Հայոց: Ի ներքոյ հիւրատանն են Սեղանատունք՝ ամառայինն մեծ և քարաշէն, ձմեռայինն փոքր. Մոմատունն՝ սպիտակարանն մոմոյ. խոհակերոց մեծ, Սառցատուն, և այլն: Տպագրարան մերձ նոցին, կայր և Թղթարան յառաջագոյն. 'ի վերայ մեծի սեղանատանն կայ Մատենադարանն, յորում ճոխ հաւաք հայ ձեռագրաց և այլոց ոչ սակաւ տպագիր մատենից: Պարտէզք ընդարձակք են վանացն, այլ և բուրաստանք, ջրհորք և առուք ածեալք 'ի Քասաղայ, և Քանքան ջուր բղխեալ 'ի ներքուստ եկեղեցւոյն. և ծառատունկ նոր հանգերձ լճաւ յաւելեալ 'ի տէր Ներսիսէ այժմեան կաթուղիկոսէ: Թիւ միաբանիցն առաւելու և նուազէ, որպէս այժմս, յորս են արքեպիսկոպոսք, և եպիսկոպոսունք, վարդապետք և աբեղայք. հաստատեալ կայ է անդ և մեծ վարժարան մանկտւոյ: Հաւաք միաբանիցն հայթհայթին 'ի կալուածոց աթոռոյն, յորս են ոչ սակաւ գեօղք մերձակայք և այգիք և խանութք, և 'ի նուիրաց: Յամին 1441 յորում կրկին հաստատեցաւ աթոռ նախագահ հայրապետութեանն Հայոց յԷջմիածին՝ մինչև ցայժմ նստան 44 կաթուղիկոսունք:

133. Քառորդաւ ժամու հեռի 'ի վանացն յարևելից հիւսիսոյ կայ երկրորդ եկեղեցին՝ Ս. Հռիփսիմէ 'ի տեղւոջ նահատակութեան հրաշագեղ կուսին և մօր հոգևորի Հայաստանեայց՝ 32 ընկերօքն 'ի հնչանս Թագաւորին Հայոց, շինեալ նախ 'ի Լուսաւորչէն, ապա 'ի մեծէն Սահակայ, և յետոյ 'ի Կոմիտասայ կաթողիկոսէ յամին 618, որոյ և արձան յիշատակի անջինջ կայ անդ, ուր և գերեզմանն իւր. Նորոգեալ յետ հազար ամաց 'ի Փիլիպպոսէ կաթուղիկոսէ, և սա անդ հանգչի. պարսպապատ է և եկեղեցիս այս: Իսկ երրորդ եկեղեցին Ս. Գայիանէ մերձագոյն 'ի վանսն՝ 'ի հարաւոյ կայ, ուր նահատակեցաւ մայրն կուսանաց երկոքումբ ընկերօքն. զեկեղեցին գրիգորաշէն ընդարձակեալ վայելչաց ես շինեաց յամին 630 Եզր կաթողիկոս, և ինքն անդէն հանգչի. և յետ հազար ամի Փիլիպպոս կաթողիկոս, յետ նորա Եղիազար շինեաց գաւիթ, և ինքն անդ հանգչի հանդերձ այլովք աշխատանակցօք: Են և առ սովաւ պարիսպք և բնակարանք: Կայ և չորրորդ եկեղեցի յարևմտից Հռիփսիմեայ 'ի տեղւոջ նահատակութեան միւսոյ հիւանդ կուսին. Նորոգեալ 'ի Նահապետէ կաթողիկոսէ յամին 1690, ուր և ինքն հանգչի: Կիսաժամու հեռի կայ հանգուցեալ անուամբ եկեղեցին Ս. Գրիգորի Առաջարի կոչեցեալ, յաւազախիր առապար տեղւոջն՝ ուր Տրդատ այլակերպեալն ընդառաջ եղև Գրիգորի. Ներսէս Գ կաթուղիկոս 'ի կէս Է դա-

րու չինեալ զմեծ և զհոյակապ տաճարս զայս, զոր «զարմացուցիչ տեսողաց» կոչեն հինքն, այլ յետ ոչ բազմաց կործանեցին Հագարացիք նախանձաբեկք։ Այս ամենայն սրբութիւնք և աթոռ կաթուղիկոսական 'ի սկզբանց դարձին Հայոց 'ի Քրիստոս և ցայսր ձգեն յԷջմիածին ամի ամի ուխտաւորս և նուէրս ուխտից. բայց յանհաւատիցն բռնութենէ և յապաստակէ բազում անգամ կողոպտեալ և տառապեալ աթոռոյն՝ յապահովանայ արդ ընդ Ռուսաց իշխանութեամբ յետ վերջին պատերազմին Պարսից։

134. Ի դաշտին Վաղարշապատու են իբրև 40 գեօղք և վանորայք անուանիք. յոլովք յարևմտակողմն կամ յաջմէ Քասաղայ և 'ի հիւսիսոյ մայրավանացն, յորս գլխաւորք են Օշական գիւղ յարևմտից հիւսիսոյ երկժամաւ հեռի. առ կարմրագոյն չեչաքար ափամբ Քասաղայ, որ Աշտարակ Օշականայ կոչիւր առ նախնեօք. անդ եհար Վահան Ամատունի զհէնն հիւսիսոյ ակն արկանելով յեկեղեցիս Կուսանացն, և ընկալաւ զգեօղն 'ի պարգևի մասին 'ի Խոսրովայ յորդւոյն Տրդատայ, և ժառանգ իւր միւսն Վահան Ամատունի՝ անդ հանգոյց զմարմին մեծին Մեսրովպայ, ուր և կայ ցարդ ընդ փայտածածուկ յարկաւ նորոգեալ եկեղեցւոյն. առ որով են և աւերակք, զոր ապարանս և մահարձանս չիրմի քաջին Վահանայ ասեն։ — Ի հարաւոյ մօտ Օշականայ կայ փոքրիկ լճակ Աղըր-կէօլ անուն։ — Ժամաւ յելից հիւսիսոյ Օշականայ է Աշտարակ գիւղ, ուր երեք եկեղեցիք են շինեալք կամ նորոգեալք յԺԳ դարու, և խաչվէմք գամբանաց. և կամուրջ քարաշէն եռակամար, նման սմին և յՕշական գոյ։ Ի գեղջէ աստի է այժմեան ծերունի կաթուղիկոսն Հայոց Տէր Ներսէս։ — Կիսաժամաւ 'ի հիւսիսոյ Աշտարակայ 'ի սարահարթի գետոյն կայ Մուղնի գիւղ, յորում եկեղեցի Ս. Գէորգայ, որոյ նշխարք փոխադրեցան 'ի Յովհաննավանից յեկեղեցի սորա մեծ և հոյակապ, առ որով կայ և մենաստան վայելուչ և պարսպապատ։

Կիսաժամաւ ևս 'ի սորա հիւսիսոյ կան Յովհաննավանք, ռամկօրէն Հաննավանք, մեծ և անուանի, այլ լքեալ. շինեալ նախ 'ի Լուսաւորչէն և Սխալի կամ Սողի վանք կոչեցեալ զառաջինն, նորոգեալ 'ի Մեծէն Ներսիսէ, և ապա 'ի Զ և յԺԴ դարս և յԺԷ. ունի արձանագիրս յոլովս զնորոգութեանց և զնուիրատուաց. յեկեղեցւոջ սորա աւանդի պահեալ Վարշամակին Քրիստոսի և այլոց նշխարաց սրբոց. յայս վանս գաղթեաց առ վայր մի Ս. Վահան Գողթնացի յԸ դարու։ Ի սկիզբն անցելոյ դարուն Զաքարիա Սարկաւագ պատմիչ արար զաստորագրութիւն վանացս. որ և խաչ 'ի վերայ դրան եկեղեցւոյն աստ կանգնեալ 'ի Լուսաւորչէն 'ի չափ իւրոյ հասակին։ — Մերձ է 'ի Մուղնի Սէրկէօլ գիւղ, ուր սպանաւ Վասակ Պահլաւունի հայրն Գրիգորի Մագիստրոսի։

135. Ի հիւսիսոյ Յովհաննավանուց կայ Կոշի գիւղ, բնակեալ 'ի գաղթականէն Պայեզիտոյ 100 տամբք. են և 'ի սմա աւերակք յոլովք հնգեքումբ եկեղեցեօք։ — Կիսաժամաւ յարևմտից Կարբոյ կայ Ոսմի գիւղ, ուր եգն Ս. Մեսրովպ զնշխարս սրբոյն Սարգսի զօրավարի, և անուանի ուխտ եղև, որում առաջնորդ կայր 'ի կէս ԺԻ դարու Ոսկան վարդապետ տպագրիչ. այժմ ծածկեալ կան նշխարքն փլածով եկեղեցւոյն յամին 1827 'ի սասանութենէ մեծէ. կանգուն կայ գաւիթն նորոգեալ յամին 1264։

Ի հիւսիսոյ Կարբոյ առ խորաձորով Քասաղայ կան եկեղեցիք հնացեալք Սաղմոսավանից կամ Ս. Սիոնի, այլ վանքն աւերեալ են իսպառ։ Յերեսս խորաձորոյ գետոյն հատեալ են քարանձաւք դժուարամուտք յոյժ, տեղիք ապաւինի և պահպանութեան գանձուց, որպէս ասի։ — Միւս ևս մենաստան անուանի է յՕհանաւան գեղջ յելից Կարբոյ և Մուղնոյ ընդ մէջ Քասաղայ և Հրազդանայ. աստի էր Մովսէս Բ կաթողիկոս, որ հաստատեաց զՏումար և զԹուական Հայոց յամի Փրկչին 552. նշանաւոր է եկեղեցի գեղջս եռայարկ, կամ երեք եկեղեցիք մի զմիով. մենաստանն քայքայեալ կիսաժամաւ հեռի կայ 'ի հարաւային ոտս լերինն Արայի, և հոյակապ ութանկիւնի բոլորակ եկեղեցին շինեալ 'ի Գրիգորէ Մամիկոնեայ յԷ դարու, որոյ գմբէթն անսիւն անկեալ է կիսով չափ։ Դաշտավայր է գիւղին, յորում ահեղ և զարմանալի պատերազմունք մղեցան, նախ Արայի և Շամիրամայ իբր 3850 ամօք յառաջ քան զմեզ. և յետ 2600 ամաց 'ի սկիզբն Է դարու՝ յունական զօրացն Փոկասայ կայսեր ընդ Պարսից. և դարձեալ զինի 1100 և աւելի ամաց՝ Թահմազայ կամ Նատըր շահի ընդ Օսմանեանց։ — Ի հարաւակողմն Էջմիածնայ գեօղ անուանի է Ջէյլօ, 'ի մօտ Մեծամօրի, 60 հայաբնակ տամբք։

136. Բ. ՍՈՒՐՄԱՌՈՒ կամ ՍՈՒՐՄԷԼՈՒ գաւառ 'ի հարաւոյ Երասխայ կայ և Սարդարապատու, և յայլոց կողմանց սահմանս ունի զՕսմանեանն և զպարսիկ Հայաստան. արևմտեանն մասն է ՃԱԿԱՏՔ գաւառ, յորում են Բուրդող լերինք Թափալըու և Քէօրօղլու կոչեցեալք յայլազգեաց, 8980՛ բարձր, և 'ի հարաւոյ Սինէկ տաղ անջրպետ Պայեզիտոյ. իսկ արևելեանն մասն ՄԱՍԵԱՑ ՈՏՆ է։ Արևմտեանն մասն ՏԱՐԱՔԷՆՑ կոչի, յելից Կաղզուանայ, և բնակեալ է 'ի Թաթարաց 28 գիւղից. միջակողմն բուն ՍՈՒՐՄԷԼՈՒ, յորում են գեօղք 50, և բազմաբնակք հայութեամբ, զի են 'ի նոսա իբրև 9000 ոգիք։ Գլխաւորք շինեցն են, յարևմտակողմն՝ ԿՈՂԲ կամ ՔՈՒԼՓ աւան, հայրենիք Եզնկայ Թարգմանչի յատակաբան իմաստասիրի, յարևելեան հիւսիսային ստորոտս Բարդող լերին, 'ի ձև շրջաթատեր կառակերտ տամբք և աշտարակօք, 'ի խաղս Վուրտամուրք վտակի, բնակեալ 'ի 180 հայ գերդաստանաց, յերի աւերակաց հնոյ քաղաքաւանին. ուր մնացուածք կճեայ եկեղեցեաց և բնակարանաց, որք առ Հերակլիւ կայսերբ և Եզրիւ կաթուղիկոսիւ թուին շինեալք. սմա շնորհեալ էր կայսրն զանուանի Աղահանս Կողբոյ, որ և Աղբակ. և է լեառն աղի 'ի մնարս Բարդողի յելից կուսէ աւանին երկայնեալ 'ի Չնկաւոր գիւղ. երեք կարգք են խաւ 'ի խաւոյ աղից, անջրպետեալք ազգ ազգ և գոյնագոյն կաւաքարօք. հոսանք Վարդամարգայ և խլրամունք երկրի զկէս լերինն փորացուցեալ են և հովիտ յարդարեալ, և մասն մի հատեալ է յանձաւս անձաւս յաղահատից, զոր

և յաւուրց անտի Նախապետին Նոյի առեն սկսեալ փորել. գլխաւոր գոգ աղահանիցն ձգի 150 ոտս ընդ երկայնն։ Հայոյ ումեմն յանձնեալ է Ռուսաց տէրութեան ղաղահանքս և առնու բաժ 50,000 Ֆրանգաց, ամի ամի հատանի աղ բաւական 'ի պէտս 550,000 մարդկան։ Գոյ և լճակ մի աղի առ Դուզ-ղալասն գիւղիւ յառս ոստոյ միոյ Արարատայ յորում բնակեն 75 տուն Հայք։ — Ցեխց Կողբայ կայ Սուրմալու գեօղ, և 'ի հիւսիսոյ նորա յանկեան խառնրդոց Չնչաւատայ յԵրասխ՝ յ'2850' բարձու՝ Գուրտուղլի աւերակ հնոյ քաղաքի կամ աւանի, ամրացելոյ հզօր պարսպօք և քարաժեռիւք. են առ նովաւ մեծամեծ գերեզմանք յոլովք Հայոց և Թաթարաց։ Միւս ևս նշանաւոր տեղի աւերակաց է Ամուրտ գեօղ առ նովին ափամբ գետոյն հեռագոյն կիսօրէիւ։ Ի հարաւոյ սորին և 'ի մնից Դաշպուռուն լերին կայ Իկտիր կամ Իղտիր գեօղ մեծ 130 հայ գերդաստանօք։

137. Ի հարաւակողմն արևելից գաւառին Սուրմառւոյ, միջասահման բաժնի երիցն ինքնակալութեանց՝ ընդ որս այժմ բաժանեալ է աշխարհս Հայոց, ամբառնան յաւերժական արձանք երկրի տիեզերահռչակ ԼԵՌԻՆՔ ԱՐԱՐԱՏԱՅ, յանուն մեծի դաշտին (յորոյ հարաւակողման կան), և գլխաւորի աշխարհաց կամ նահանգաց երկրիս Հայոց՝ Այրարատայ, և առ յանուն Արայի Գեղեցկի, ըստ հնապատում աւանդութեանց ազգիս. յիշեն և Ս. Գիրք զլերինս Արարատայ 'ի սկզբան անդ պատմութեան ազանց, 'ի ձեռն Մովսիսի մարգարէի, իբր չորիւք ևեթ դարուք յետ Արայի կացելոյ, և 'ի նոսին վկայեն զնիստ տապանին։ Բնիկ անուն լերանցս՝ առ տեղացիսն պահի առ Հայս, ՄԱՍԻՔ կոչեցեալ և Լեռինք Մասեաց, և յաճախ ևս Մասիս զբարձրագոյն կատարն իմանալով. և զայս՝ յանուն Ամասիայ նահապետի նախահաւուն Արայի առեն կոչեալ, (որ և շինեաց յարևմտից հիւսիսոյ լերինն զՓառախոտ և զՑոլակերտ աւանս), և կամ Մարսակայ ընդոծնի Աբրահամու հաստուածելոյ յԻսահակայ 'ի Հայս, ըստ այլոյ պատմչի։ Կոչի և այլ պէսպէս մակադրական անուամբք. Աղոփ, Աւագ, Թուխ, Մեհին, Սեաւ լեառն, և 'ի ռամկաց Մասիս աղխուրհ. Քուհն Նոյի 'ի Պարսից, և Աղըրը կամ Ահըրը տաղ 'ի Թուրքաց։ Անուանի 'ի սկզբանցն և այսր, վասն տապանին 'ի նմա հանգստեան, և երկրորդ խանձարուրք մարդկութեանս լինելով, յոր սակս և արդարապէս կարգի ընդ սրբազան տեղիս, և ուխտադնացութեամբ պատուեալ է անդստին 'ի վաղ ժամանակաց հեթանոսութեան և 'ի դարս քրիստոնէութեան. և բազում առասպելս և զրոյցս յօդեալ է զնմանէ վիպասանիցն Հայոց դիցապաշտից. Նշանաւոր է և վասն բարձրութեանն, զի յետ կովկասեանն Էլպուրզայ առաջին է բարձրութեամբ 'ի լերինս արևմտեան Ասիոյ, ունելով յերեսաց Սեաւ ծովու 'ի վեր 16254'. և ևս առաւել վասն բարձրագիտակ կերպարանացն չեզաձև ամբարձմամբն, որպէս յարևմտեան հարաւային կողմանց՝ յերեսաց դաշտին Երասխայ վերամբառնայ ոտս ոչ պակաս քան զ'13500, ահեղ իմն և գերահրաշ տեսլեամբ, զոր գրեթէ չէք այլուրեք տեսանել, ոչ 'ի Կովկաս և ոչ 'ի հսկայսն երկրի 'ի լերինս Հնդկաց և Անդեայց Ամերիկոյ. այսպէս և ըստ հեռուստ վայրաց 'ի տես գալոյ՝ ըստ ոմանց գրեթէ զամենեքումբ գլէ, հաւասարելով յայսմ ծայրագունին լերանց Հիմալայայ, նշմարեալ յափանց Կասպիականին 'ի բացէ 200 և աւելի մղոնաց։ Երրորդ անգամ, զարմանալի և բնութեամբն, այսինքն է կազմուածովն, գոլով միատեսակ որձաքար պորփիւր ցցուեալ յերկրի, և հրաբուխ ահաւոր շիջեալ 'ի հազարաց ամաց, այլ ոչ իսպառ դադարեալ. հիւսիսային ստորոտքն երկայնեալ տարածին 'ի դաշտն Երասխայ, խորոփիտօք և քարակարկառ կոհակօք, արևելակողմն խճախառն և աւազուտ, ըստ հարաւոյ կուսէ անձուկ լեռնադաշտակաւ կցեալ ընդ այլում լերին որ Փոքր Մասիս կոչի, և երրորդ է բարձրութեամբ 'ի չափեալ կատարս լերանցն Հայոց, ունելով 12284', իսկ արևմտեան ոտքն 'ի լերինս մանունս յանգին։ Ի հասարակի ստորին կողմանքն աւազուտք և առատարք են, միջավայրքն բուսաբեր և քարուտ, և քարինքն յաճախակի լաւա, պորփիւր, բոսցցոլեան հող, աւազ և աղ ինչ. այլ բազում ուրեք անհեդեդք և խառն 'ի խուռն իմն կառուցեալք, 'ի մեծ և 'ի բուռն ցնցմանց երկրի կերպարանեալք. և վերնակողմն յ'12000 ոտից և 'ի վեր համակ ձիւնապատ է 4000ոտնեայ վերարկուաւ անլուծանելի սառամանեաց. և 'ի քղանցից անտի սառամանեացն 'ի հիւսիսոյ կուսէ ցգեօղն Արկուռի՝ պատառեալ է լեառնն 6000 ոտս ընդ խոնարհ. 'ի վաղնջուց ուրեմն հրաբուխ վերաշնչմանց, զոր յիշէ և մերս վիպահայր Մովսէս Խորենեցի, և Վիշապ Մասեաց կոչէր կամ Փլածն Ձէժ, յորում արգելեալ ասէին վիպասանքն Հայոց զԱրտաւազդ արքայ և 'ի Քաջաց պահեալ, զի մի ելեալ և աշխարհի աւեր և վախճան հասուցէ. ընդ այն խաղային ուղխք 'ի հալից ձեանց։ Ի կուշտ մի քարակոհակ վհին շինեալ էր մենաստանն Ս. Յակոբ, 'ի տեղւոջ դադարման Մծբնեցւոյ հայրապետին՝ յելանել իւրում 'ի խնդիր փայտից նոյեան տապանին, ըստ ազգիս մերոյ աւանդութեան, մենաստան փոքր և պարտէզ. և 'ի վերոյ լուսաղբիւր ջինջիչ մարախոյ յ'7620' բարձրութեան։ Ստորև քան զսա կայր Ակոռի կամ Արկուռի գիւղ 'ի 5982' բարձու, 'ի տեղւոջ այգւոյն տնկելոյ 'ի Նոյայ, ըստ աւանդութեան, առ որոյ յիշատակէ տնկեալ դարմանէին այգիք ստորև 'ի 4013' բարձու. իսկ 'ի գեղջն բնակէին 300 տուն Հայոց, և ունէին եկեղեցի հին և գերեզմանատեղի հազարամեայ արձանագրովք, ցամ տեառն 1840. յորում 'ի քսաներորդի աւուր ամսեան յունիսի՝ սաստանութիւն մեծ եղև 'ի դաշտին և 'ի լերինս Արարատայ, որ և ընդհատ և նուաղ ժամիւք տևեաց աւելի քան զերկու ամիս, կենդրոն ցնցմանց ունելով ըզբարձրն Մասիս. որոյ յետ բազում դարուց 'ի յուշ իմն բերեալ զնախկին հրամուղ եռանդն, ահեղ որոտմամբ և վերապատառմամբ արձակեաց բոցախառն ծուխ սեաւ. և մեծապէս շարժեալ դղրդեցաւ, ինքն և դաշտն առհասարակ և անդրագոյնք ևս սահմանք. և մինչդեռ բազում ուրեք երկիրն խորխորեալ պատառէր, և շինուածք տապալեալ կործանէին, և գետն Երասխ օժանդակօք իւրովք ալէկոծեալ ընդ հուն



Տեսիլ Մասեաց ի բերդէն Երեւանայ . — Vue des monts Ararat, prise de la forteresse d'Erivan.

վազէր և տեղափոխէր. վէմ մի կարմրագոյն բըրահատակ փրթուցեալ 'ի բարձանց լերինն, և թափ ընդ թափ հոլովեալ ձուլեալ ընդ քարինս և ընդ սառոյցս՝ գահավիժեալ անկանէր կիսով յորկորս վհին մեծի, և կիսով խոնարհագոյն ևս թաւալ առեալ՝ զմասն մի վանաց Ս. Յակովբայ և զնորին աղբեր հարեալ՝ կորզեալ արկանէր 'ի վերայ գեղջն Ակոռւոյ, և նոքիմբք զգիւղն կործանեալ աւերէր ջնջէր հեռախաղաղ առնէր. տամբք և ընտանեօք և ստացուածովք կորուսեալ զտեղին, և զառ ստորև նորին տաւաղեալ վըրանաբնակ Քուրդս. յորոց սակաւք ոմանք կարացին անձնապուրծ լինել. և ծուխ հրախառն փոթորկեալ զհետ մեծի թաւալոցին՝ ճարակեաց թխացոյց զմնացուածս շինին և ծառաստանին, և ծածկեաց օդեղծ աւերածովք. որք յետ ամսօրեայ աւուրց ('ի 24 յուլիսի) քայքայեալք սորսորեցան իջին 'ի խոնարհ 'ի դաշտավայրսն, վարեալք 'ի հեղեղեալ քարանց զերծելոց. և 'ի սկախառն հոսանաց կաւոյ և աղմոյ. յորոց դարձեալ ոչ սակաւ աւերմունք եղեն. և ցարդ նշմարին ողորմելի մնացուածք գեղջն և մենաստանին մասամբ 'ի տղմի խրեալք և մասամբ 'ի խառնակոյտս անկերպարանս, և մեծագոյն ևս մասամբ՝ աներևութացեալք: Բայց առ յիշատակէ գեղջն հնոյ կանգնեցաւ Նորն Ակոռի 'ի ստորոտս լերինն, և բնակեցաւ 'ի Հայոց իբր 180 տանց: — Գագաթն լերինն 'ի հանդարտութեան օդոց՝ մառախլապատ տեսանի, իսկ 'ի շնչել 'ի նմա հողմոց՝ պարզ և սպիտակափառ և պաղպաջուն փայլէ վսեմահայեաց. բայց և հողմքն և մառախուղք, և սառամանիք նորին և ապալէր ուղղաբերձ կողք և աւազն սահագնաց, և ամարանի հեղեղք ձիւնահալ հոսանաց, և փրթածք հիւսոյ, դըժուարինս և վտանգաւորս գործեն զելս լերինն, և դրեաթէ անմատոյց՝ զբրգաձև գագաթն զասպնջական տապանին. յոր նախ առաջին առ մեզ յամին 1829 յիններորդում աւուր ամսեան հոկտեմբերի ել գիտուն բնախոյզն Բարրոդ Գերմանացի ընդ Ֆէոդորովի չափաբերի և այլոց ոմանց, և եռեւ բլուրս երիս սառամանեաց 'ի վերոյ քան զպատառածն մեծ, և 'ի գագաթան տեղւոջն տափարակ իբր 200 քայլիւ շրջապատաւ, ուստի երևէին համօրէն Այրարատ և կողմանք Սիւնեաց. անդ կանգնեաց խաչ փոքր, և խաչ մեծ 'ի ստորև՝ յառաջին ելսն. յետ նորա ելին և այլ բնագէտք 'ի զանազան նուագս և հաւաստեալ ստուգեցին զքննութիւնս Բարրոդեանց: — Փոքրն Մասիս որ կոնաձև ևս քան զՄեծագն ամբառնայ ց'9560' յերեսաց դաշտին Երասխայ, յամարան զերծանի 'ի ձեանց, և դիւրելանելի է, թէպէտ և աւազուտ և սառ. 'ի գագաթանն ունի լճակ լոռ օրինի հրաբըխաց, և եզերքն քարախիթք. իսկ 'ի տեղւոջ տափարակի վէմք մեծամեծք թաւալեալք կան, զորս Օղ--ղի կամ Հոկայից գերեզմանս ասեն լինել: Ի լեռնադաշտի կցուածոյ կրկին լերանցն կարծի յամանց նիստ տապանին: Ի հարաւոյ կուսէ խառնին ստորոտք Մասեաց ընդ լերինս Պայէզիտոյ, յարևմտից ընդ լերինսն որ սահման հատանեն ընդ գաւառս Պայէզիտոյ և Սուրմառոյ, և երթեալ կցին ընդ Բարգողայ. համօրէն լեռնադաշտակքն բերեն զհրաբուխ երկրի կերպարանս, ասըն-գաքարիւք և լաւաքարիւք, որք յաճախագոյն ևս դըտանին 'ի հիւսիսային կողս լերինն, մանաւանդ առ ակամբք Սեաւ Ջրոյն ուր և մօրավայրք են, և բազմութիւն ջրաւէր հաւուց: Հաւուցս վայրենեաց և որսականաց առատութիւն է և 'ի ստորոտս լերինն, ուր և օրսան բազմօյիւք. իսկ չորքոտանիք չեն առատ 'ի Մասիս, 'ի գազանաց՝ երևի երբեմն և յովազ. նուազեալ է և բուսաբերութեամբ. ծառք սակաւք են 'ի նմա և գտանին ցբարձրութիւն 7800-8000 ոտից. անտի և 'ի վեր ալպեան բոյսք որք ժամանեն ց'12000'. և աղգք ինչ ց'13000': Առ ակամբք գետոյդ յիշելոյ 'ի սահմանս Արկուռոյ՝ ելեալ Արտաւազդն արքայի յորս կընճից և ցռուց՝ խարդաւանեցաւ 'ի վիհն. լեռնակոհակն այն կոչէր առ հինան Գինոյ լեռան կամ Բլուր և գետն Գինեգոյն, թուի թէ 'ի յիշատակ գինւոյն Նոյի: — Ի հիւսիսային Մասեաց ոտին կան գեօղքն Սիրդողան, Արալըխ. Համանդօփ, և այլն:

138. Գ. ԶԷՆԿԻ-ՊԱԶԱՐ գաւառ փոքր, այլ նշանաւոր՝ զմայրաքաղաքն նահանգին Հայոց յինքեան ունելով. կայ յելից Երասխայ հանդէպ Մասեաց ՈՒտին և Սեաւ Ջրոյ, 'ի հիւսիսոյ ունի զդաշտն Վաղարշապատու և զգաւառն Կէօք-չայ, յարևելից զլերինս Գեղամայ, 'ի հարաւոյ զՇարուր գաւառ. և այսպէս կոչի յանուն Զէնկի գետոյ, որ է Հրազդան ըստ նախնեաց, և է ԿՈՏԱՅՔ գաւառ հին. հարաւակողմն գաւառիս կոչի ԳԱՌՆԻ-ՊԱԶԱՐ յանուն Գառնոյ գեղջ, որ և մասն է Գեղաքունի գաւառի Սիւնեաց. հիւսիսակողմն ԳԸՐՔ-ԲՈՒԼԱՂ, վասն բազում աղբերցն ականց որ 'ի լերանց Գեղամայ իջեալ՝ առու գործեն և խաղան յելից Երևանայ: Միանգամայն 100 գեօղք են երեցուն վիճակացս. յորոց 'ի ծայր արևմտից հիւսիսոյ կայ մայրաքաղաքն ԵՐԵՒԱՆ յահեկէ Հրազդանայ և Գըրքպուլաղայ, յարևելից առաջնոյն, 'ի բարձու 2970' ոտից 'ի սարահարթի Հրազդանայ. աւան էր 'ի հնումն հին, այլ շինողն անյայտ. յԸ դարէ և այսր անկեալ ընդ իշխանութեամբ Հագարացւոց, Պարսից և Օսմանեանց, և իշխանանիստ լեալ, 'ի դարէ հետէ կայր 'ի ձեռս Պարսից՝ որոց իշխան 'ի սմա սարտար կոչէր, և յետին սարտարն բազում շինութիւնս արար 'ի սմա. Ռուսք նուաճեցին յամին 1827, 'ի ձեռն Բասքեւիչի որ և կոչեցաւ Երևանեան. յամին 1841 կարգեցին մայրաքաղաք կուսակալութեան համօրէն Հայկական Նահանգի, նորոգեալ զամրոցն որ 'ի հարաւակողմն քաղաքին, ուր և դղեակ կուսակալին՝ երբեմն սարտարին Երևանայ, և ապարանք աւագ որերոյ, և կամուրջ 'ի վերայ գետոյն: Բայց քաղաքն գծուծ է տեսլեամբ, և մասամբ հողակերտ. հինգ թաղք են նորա և վեցերորդ Նոր-Թաղ շինեալ 'ի գաղթականէն Հայոց, յորում է հին եկեղեցին ստորերկրեայ մատրամբ շիրմի Ս. առաքելոյն Անանիայ, են և այլոց թաղից եկեղեցիք. և շուկայ մի մեծ աղիւսեայ կամարօք, և մզկիթ յախճապակազարդ, և վարժարան նոր վասն մանկտւոյ ամենայն ազգաց բընակաց քաղաքին, որ են 20,000 ոգիք, յորս Հայք իբրև 6000, այլքն մահմետականք և Ռուսք: Ի Զօրագեղ թաղի կայր աշտարակ մի հին և վայելուչ՝

թագմանկիւնի ձևով, այլ այժմ կործանեալ է և տեղին յայգի փոխեալ, որպէս և մեծ մասն մի քաղաքին այգեստան և պարտէզք են. բայց կլիմայն խիստ է 'ի ձմերան և անհամբոյր յամարան (26)։ Ի հիւսիսոյ քաղաքին հանդէպ Կոնդ Թաղի կայ Կոզեռն բլուր, և 'ի նմա մատուռն և տապան Ցովհաննու Կոզեռան, և Մովսիսի կաթուղիկոսի նորոգողին Էջմիածնայ, և գերեզմանք Հայոց։ — Քանաքեռ գիւղ ժամու հեռի 'ի հիւսիսոյ քաղաքին՝ ասի շինեալ 'ի Քամայ և 'ի քեռէ նորա, բնակեալ է 'ի Հայոց, և են անդ աւերակք ինչ։ — Ի Նորք գեղջ յելից քաղաքին են բրուտք, զի ելանէ անտի կաւ ընտիր։ Ի հիւսիսոյ և յելից սոցա նշանաւոր տեղիք են Աւանն կամ Աւանա և Ձագ գեօղք, յորս պայծառ եկեղեցիք շինեցան յԸ դարու, և նշխարք նոցին միայն, նոյնպէս և Ձագավանից մենաստանք։

139. Ցելից Երեւանայ տարածանի դաշտ ցստորոտս լերանց Գեղամայ, յորում բազում Հակատամարտք մղեալ են. 'ի հարաւոյ կուսէ ձգի դաշտն ցԵրասխ գետ, և 'ի մասին աստ են աւերակք երկուց անուանի և մեծաց մայրաքաղաքաց Հայոց, Դունայ և Արտաշատայ։ ԴՈՒԻՆ յելից հարաւոյ կայ Երեւանայ իբր հինգ ժամու հեռի, 'ի ձախմէ Ազատ գետոյ (Գառնոյ), այժմ գեօղ մի անշուք է առ տեղեաւն համանուն քաղաքին մեծի, որոյ աւերակք կան 'ի մօտոյ նորա 'ի կաւուտ բլրի, ուր շինեցաւն 'ի Խոսրովայ յորդւոյն Տրդատայ, և պարսկական ձայնիւ Դուին կոչեցաւ ըստ պատմչին մերոյ՝ որ է Բլուր, և անուանեցաւ ՈՍՏԱՆ ՀԱՅՈՑ, զի անդ փոխեցան արքունիքն յԱրտաշատայ, և 'ի բարձման Արշակունեաց՝ եղև աթոռ կաթողիկոսին և ամրացուցաւ 'ի Հայոց, որք և շինեցին 'ի նմա եկեղեցի յանուն սրբոյ Լուսաւորչին, զոր հոյակապ ևս կառոյց Սմբատ Բագրատունի առ Մօրկաւ կայսերբ. 'ի Զ և յԷ դարու չորիցս ժողովք եղեն ուխտի եկեղեցւոյն Հայոց 'ի Դուին. բայց ամրութիւնք քաղաքին քայքայեալք՝ 'ի կայսերացն Ցունաց՝ նորոգեցան 'ի բռնանալ Հագարացւոց 'ի Հայս յԸ դարու, և մայրաքաղաք աշխարհին համարեցաւ. անդ նահատակեցան Ս. Դաւիթ Դունեցի և Ցիզտիբուզտ։ Բագրատունիք յետոյ ուրեմն զբաւանդ ածին զքաղաքն, այլ յետ Թ դարու 'ի մեծէ սասանութենէ կործանեալ և կորուսեալ ոգիս 70,000, իսպառ աւերակ մնաց, և երևին արդ գերբուկք կուակերտ տանց և պարսպաց։ — Ի մօտոյ հարաւոյ Դունայ մերձ յԵրասխ և յԱզատ գետ կայ ԱՐՏԱՇԱՏ առ Արտաշիր գիւղիւ, որ յառաջ քան զամս 2000 և աւելի, յորժամ շինեցաւն (յԱրտաշիսայ նախարարէ Հայոց ընդվզելոյ 'ի Սելևկիացւոց, Թելադրութեամբ գոռ զօրավարին Աննիբաղայ Կարքեդոնացւոյ), յերից կողմանց պատեալ լինէր յԱզատ գետոյ և յԵրասխայ, որոյ այժմ փոխեալ է զընթացսն. քանզի յառաջն խաղայր ընդ հիւսիսի և քերէր զքաղաքաւն, և գետն Մեծամօրի յարևմտից Քասաղաւ հանդերձ ցայս վայր ձգեալ խառնէր յԵրասխ. և 'ի վերայ նորա արկեալ էր Տափերական կամուրջն, ընդ որ գահավիժեալ սպանաւ հայր Լուսաւորչին Անակ՝ սպանիչն Խոսրովայ Մեծի. գարս իբրև վեց մայրաքաղաք եղև Հայոց, այլ ոչ յար 'ի նմա նստէին Թագաւորք. Կորբուղոն զօրավար Ներոնի կայսեր պաշարեալ էառ զքաղաքս և աւերեաց, և ապա վերստին շինեալ կոչեցաւ Ներոնիա, նորոգեցաւ յԱրտաշիսէ Բ, յաւելուածով մեհենեաց, զորս քանդեաց Ս. Գրիգոր. Շապուհ Բ և Ցազկերտ Թագաւորք Պարսից աւերեցին զքաղաքն, այլ Մամիկոնեանք վերստին նորոգեցին, և անդ առ Վարդանաւ խմբեցաւ ժողովն Արտաշատու. բայց յետ սակաւուց Թուի լքեալ տեղւոյն 'ի պայծառանալ Դունայ, և ընդ նմին կործանեալ սասանութեամբ։ Այժմ հիմնայատակ երևին ընդարձակ փլածքն, համակ աղիւսաշէն, հետք կրկին պարսպաց և միջնաբերդի 'ի հիւսիսոյ կուսէ խրամով զատուցելոյ. 'ի հարաւոյ կողմանէ ամբառնան տասնիւ չափ հողաբլուրք դամբանականք, և բեկորք սափորոց 'ի նոսա, գեղջին և կանաչ ապիկով բռածոյ գրուագեալք։ Խրամքն այժմ յածուս բրնձոյ փոխեալք են և հրապարակքն յանդաստանս, և յաւերակացն միջի կայ գեօղն Արտաշիր սակաւ տամբք։

Ի հարաւոյ յեզեր Երասխայ կայ Խոր Վիրապն Արտաշատու, ուր զամս երեքտասան տքնեցաւ Ս. Գրիգոր, և այժմ մատուռն շինեալ կայ 'ի վերայ գբոյն, որոյ խորութիւն է 25-30'. և շրջապատն անձուկ յոյժ իբրև 15 կամ 20', որմ ածեալ գմբեթաձև 'ի ներքուստ և սեղան փոքրիկ 'ի ներքոյ սեղանոյ մատրանն, յորոյ կողայ են մուտքն կամ էջք 'ի գուբ անդր 'ի ներքոյ մատրանն. եկեղեցին հոյակապ շինեալ անդ 'ի Ներսիսէ Գէ, բնաջինջ լեալ է. առ երի ամբառնայ արդ 'ի գագաթան բլրի 'ի հիւսիսոյ վիրապին 'ի վայելչագիտակ վայրի՝ մենաստան քարաշէն և եկեղեցի մեծ 'ի կարմրագոյն քարանց նորոգ շինեալ 'ի Դաւթէ վարդապետէ յԺԷ դարու. անդ կարծին թաղեալ Ներսէս Գ, և Վարդան Բարձրբերդցի, սակաւք յոյժ են միաբանքն կամ վանապանք։ Մերձ նմին 'ի քառաժեռս են երկու գրոշմածք խաչի, զոր ասեն առաքելոցն Բարթողիմեայ և Ցուդայի փորեալ՝ առ յիշատակէ հանդիպմանն իւրեանց անդ։ Ցերի Արտաշատայ 'ի մօտոյ կուսէ զՃանապարհայն կայր Եղովնոյն մեհեան Տիր գրոց Հայոց, որ էր (Հերմէս) դպրութեանց խնամարկու և երազացոյց։ — Ցարևմտեան սահմանիս և Մասեաց ստին և Վաղարշապատու դաշտին՝ լինի անուանի Որդանն կարմիր 'ի վերայ սիզոյ միոյ, յորմէ ժողովեալ առաքեն 'ի Ռուսաստան։

140. Իբրև չորիւք և կիսով ժամու հեռի յԵրևանայ 'ի հարաւոյ արևելից նորա, կայ հին քաղաքագեօղն Գառնի, պանծալի հնութեամբն և գաստակերտիւ մեծի արքային Տրդատայ, յոստ մի հարաւոյ բուն լերին Գեղամայ կամ Գեղայ, որք 'ի ռամկաց Աղմաղան անուանին։ Ահաւոր ընձային կերպարանք վայրացն բուռն հրաբղխից զօրութեամբ այլակերպեալք, խորք խոխոմաձիգք և անձաւք քարայրից բացեալ բազում ուրեք, յորոց միջոյ դնդնչելով 'ի Գեղ լեռնէ բղխեալ իջանէ Ազատ գետ, որ և Գառնոյ վտակ, 'ի բարձանց 4-500 ոտից ընդ ահագին կոշկոռս գահավիժեալ 'ի խորաձորս լեռնահովտաց։ Ոչ այնքան անհարթ էր տեսիլ վայրայն յառաջ քան



Հովանոց Տրդատայ. — Terrace ou Trône de Teridate.

զամս չորեքհազար յորժամ հայկազնեանն Գեղամ նահապետ շինեաց անդ 'ի ձորակի միում զԳեղամէ դաստակերտ, զոր Թոռն նորա Գառնիկ՝ յիւր անուն Գառնի անուանակոչեաց. և եղև այն գիւղաքաղաք բարգաւաճ մինչև յաւուրս Տրդատայ Մեծի. որ յառաջնում քառորդի Դ դարու շինեաց անդ ամրոց "որձաքար և կոփածոյ վիմօք, երկաթագամ և կապարով մածուցեալ, որպէս ասէ Խորենացին. յոբում շինեալ և տուն հովանոց, մահարձանօք, զգանչելի գրօշուածովք բարձր քանդակաւ. 'ի համար քեռ իւրոյ Խոսրովիդխտոյ. և գրեալ 'ի նմա զյիշատակ իւր հելլենացի գրով". զոր յետինքն կոչեցին ՍԱՐԱՒՈԵԹ ՏՐԴԱՏԱՅ, և ցարդ կոչի Թախտ Տրդատայ: Շէն էր տակաւին և առ Շահաբասաւ, և բնակիչք նորա հարկին զաղապատակս նորա, այլ ապա գերի վարեցան: Ի մեծի սասանութեան Երևանայ յամին 1679, 'ի սպառ կործանեցաւ և անբնակ եղև Գառնի, և "անկաւ զարմանալի Թախտն Տրդատայ", որպէս ասեն ժամանակագիրք: Երևին ցարդ 'ի պալատեան գահաւանդի ուրեմն, որ խոնարհի 'ի հովիտն յարևմտից վտակին Գառնւոյ աւերակք գեղեցիկ քառակուսւոյ, իբր հարիւր կանգուն յերկայնութիւն 'ի հարաւոյ ընդ հիւսիս և հարիւր և քսան յելից ընդ մուտս. Ճակատն զառ 'ի վայր 'ի Ջուրն հայի, իսկ երկոքին կողմանքն ամուրք 'ի բնէ՝ ամրագոյն ևս գործեալ են փոքրիկ պարսպօք որ 'ի կոփածոյ գորշագոյն լաւայէ, ճարտարագործ յոյժ. իսկ յետուստ կողմն՝ ամրացեալ է յարուեստ: Երևին աւերք աշտարակացն որք ամբառնային պարալելեան սեամբք՝ 'ի վերայ կոհակաց ժայռից, որոց բեկորք ցրուեալ են յերեսս ձորահովտին խառն ընդ բնական փրթուածոց քարանց. Հնգանկիւնի տեսանի ձև սեանցն, և որակ քարին խիտ և սևագոյն. և բնութեան ինքնին իբրև 'ի նախանձ մտեալ ընդ արուեստի՝ ձևակերպեալ է անդ սիւնս իմն անհեդեդս և պատուարս անձեռագործս՝ կարգ ըստ կարգէ: Հիւսիսային կողմնըն կիսաբոլոր ընծայէ պատուար աշտարակազարդ, և յանդիման եզերքն յարևելս և յարևմուտս. մի միայն մնացք նշմարին առ արևելեան աշտարակաւ, խաչաձև նշանօք գրուագեալ: Իսկ զմէջ պարսպացն գերբուկք եւթ ունին խառն 'ի խուռն մասանց շինուածոց, սեանց խարսխաց և քուաց. ընդ որս և հովանոցն այն զարմանալի, և արժանի ձեռակերտ քաջին Թագաւորի և տաճարին սիրոյն արձան. որ թէպէտ և սա_



Գեղարդայ վանք. — Aijri-vank (Monastère aux-Cavernes ou de S.te Lance.)

անհուԹեամբ երկրի տապալեալ է, այլ տակաւին մասանցն ամբողջ կալով 'ի գետնի՝ 'ի ձեռն նկարահանի արուեստագիտի ընծայէ զպատկերս զայս ճակատու դիմին. որոյ քառակուսի է ձեւ հաւասար չափով իբր 34 ոտք առ կողմն, և ձեղունն գմբեԹաւ աւարտեալ. ութ ոտնաչափ բարձր է յատակն քան զհրապարակի գետինն յոր հիմնեալ է. երեսք նորա հային 'ի դուռն դղեկին. զճակատն վսեմաշուք բազմեն սիւնք վեց յոնիականք, կատարեալ գեղով և պարզութեամբ ըստ հին ոճոյն, 22 և կէս ոտն 'ի բարձրութիւն հանդերձ վերնաքուռիւն, 25 ըմԹաչափ շրջապատուԹեամբ. տակաւին ողջ կան քիւքն մանր դրուագօք, աերեւազարդիւք և հերապանծ տափածագլխովք. բազմուԹիւն չախչախեալ սեանցն և խոյակացն տան կարծել Թէ և համօրէն կողմանքն սիւնազարդք էին. և յայտնապէս իսկ տեսանի այս 'ի յետին կողմն որ հայի 'ի քարագնաց հոսանս Ազատայ և սակաւ ինչ այլատարազ է քան զճակատն, մանաւանդ զարդքն ծաղկաձեւք: Նոյնպէս և անդաստակ տաճարին հոծ և խիտ ունէր քանդակս և սիւնս. ստորին կողմանք տաճարին ոչ երեւեցուցանեն զարդս, այլ միայն պարբատաշ քարինս: Ի հիւսիսոյ և յարեւմտից հովանոցիս կան այլ աւերակք քարաշէնք, որ Թուին բուն ապարանք Խոսրովիդխտոյ, այլ 'ի քարանց հեղեղատի կառուցեալ, պարզունակ ոճով: Շարտէն Գաղղիացի որ իբր երկու դարուք յառաջ ճանապարհորդեաց ետես 'ի Գառնի և աշտարակ մի նորանշան ձեւով, որոյ չերեւին արդ հետք. իսկ 'ի հիւսիսոյ դղեկին կան մնացուածք մարակոցաձեւ շինուածոյ, մեծամեծ գունդք քարեղէնք նման հրաձիգ ռմբաց, և հեռագոյն 'ի նմին կողման 'ի լեռնադաշտակի ուրեմն՝ աւերակք գիւղաքաղաքին Գառնոյ կարի ընդարձակք. որք քարաշէն և տունք երկայնաշարք, և եկեղեցիք հինգ Թուով, որոց ոճ շինուածոյ նման է եկեղեցեացն Էջմիածնայ. զմի յայնցանէ նորոգեալ այժմ բնակչաց տեղւոյն՝ կատարեն զսուրբ պաշտամունս. նշանաւոր է յայլսն մատուռն մի յանուն սրբոյ Կարապետին, յայժ գեղեցիկ յօրինուածով, կիսափուլ կաԹողիկէիւ, որոյ է պատկերդ հանդիպոյ: Համօրէն շրջակայքս Գառնւոյ լի են այսպիսի աւերակօք. 'Ի սոցին սակի է և մնացուած բերդի միոյ 'ի քարափլեր մերձ յակն Ազատայ, զոր ժողովուրդն՝ Գանձասուն Տրդատայ կոչէ:

141. Իբր ժամու և կիսով հեռի յարեւելից հիւսիսոյ Գառնւոյ 'ի սորոտս անձաւախիտ լերինն Գեղայ որ հայի 'ի ձորն Գառնւոյ՝ կայ 'ի գաւառին կոտէից հռչակաւոր մենաստանն Այրիվանից կամ Գեղարդայ, շրջապատեալ լերամբք և քարայրովք ահաւորօք. Թուի և սա զատակերտ կամ ժամանակակից Տրդատայ շինիլն. քանզի և ոչ յետ բազմաց յայց ելին տեղւոյս Ս. Ներսէս և Ս. Սահակ՝ Թէպէտ և 'ի յետնոց նորոգեալ տեղւոյն միայն հիմունք պարսպացն Թուին հինք. հիւսիսայինն որմն կայ 'ի բարձուանդակի, և արեւմտեանն առ 'ի չեղ բարձրացեալ, իսկ այլք ցածունք են: Կրկին մուտք են վանացն, մի անձուկ ընդ արեւելս որ հայի 'ի գետակն կարկաչասահ, և միւս ըստ արեւմուտս լայն և խաչազարդ: Ի մենաստանի աստ են եօԹն եկեղեցիք զարմանաշէնք՝



Տաճար Գեղարդայ. — Eglise de la S.te Lance.

յորոց անուն Չօլմն եկեղեցիս իսկ կոչեն ռամիկք զանեղին, և իբրև մի եկեղեցի միացեալ 40 խորանօք։ Անդէն ընդ մտանել 'ի վանսն՝ ընդ առաջ լինի եկեղեցին մեծ կոփածոյիւք կառուցեալ հանակ, և արտհեալ 'ի տաճար և 'ի ժամատուն. տաճարն անսիւն բարձրանայ սրածայր կաթողիկէիւ. 'ի չորեսին անկիւնս Նորին են մի մի աւանդատունք կրկնայարկք,



Մատուռն ի Գառնի. — Chapelle à Karni.

սիւնազարդք կամ աղօթատեղիք. իսկ ժամատունն ընդարձակագոյն ևս է՝ յարկեալ 'ի վերայ չորից միասնանի հսկայաձև սեանց Թանձր վերնախարսխօք, յորոց վերայ ամբառնայ կաթողիկէ քառակուսի իմն ձևով, խորշխորշեալ փորածովք և լուսամուտ մեծաւ, յորմէ միայն լոյս առնու եկեղեցին. կամարք ութ ձգեալ 'ի սեանցն՝ յաւէտ կամարաբաժինս արոհեն. առ դրամբն որ 'ի ներքինն մուծանէ տաճար՝ կանգնեալ են աստ և անտ խաչքէմք մեծամեծք, կարի յոյժ ճարտար արուեստարկեալ. և համօրէն իսկ եկեղեցին քանդակեալ է խիտ և հոծ դրուագօք և արձանագրութեամբք, և գեղեցիկ օրինակ ընծայէ ճարտարապետութեան, Թէպէտ և մանր մասունք նորա չեն քաջ զուգապատշաճք և նմանք միմեանց. 'ի վերայ միջնադրան անդ կայ արձանագրութիւն շինութեան յամին ՈԿԳ (1214)։ Հիւսիսային որմն եկեղեցւոյս է միապաղաղ վէմ յղկեալ՝ երեւք առապարին, և կրկին բարձր է քան զեկեղեցին, և վէմն զըրնութիւն երկանաքարի ունի. 'ի նմա հատեալ փորեալ է մատուռն երիս որմնակիցս, և յերիցն վերայ միւս այլ ընդարձակագոյն. մուտք առաջնոյն են 'ի ժամատանէն, և է փոքր, իբրև ութ ոտք յերկայնութիւն և 'ի լայնութիւն հաւասար, ձեղունն գըմբեթաւոր ամբառնայ, և 'ի հարաւոյ ունի զլուսամուտն բոլորշի. 20 ոտս բարձր 'ի յատակէն՝ հատեալ և գործեալ է բեմն և սեղանն 'ի նմին իսկ 'ի վիմէ. 'ի հիւսիսակողմն այսր մատրան կայ խորշ մի ութ ոտնաչափ, կրկին կամարօք զատուցեալ, ընդ որով կան գերեզմանք, և յորմն ընդ կամարօքն՝ բարձր

քանդակաւ փորեալ է վիմափորի գլուխ եզին մանեակ 'ի բերանի, յորմէ լուծք չղթայից արձակին և կապին ախուծուծս կրկին և արծուի Թևատարած սաւառնէ 'ի վերոյ նոցա՝ մագլցի ունելով զգառն. 'ի հարաւային որման կայ արձանագիր յիշատակի Պռոշայ մեծի իշխանի շինողի մատրանն. ծաղկաձևք և խաչազարդք պճնեն զերեսս որմոցն: Համանման սմին են և Բ և Գ մատրունքն յարևելից նորա, ունելով և սոցա զմուտն 'ի մեծէ գաւթէն, առաւելեալք զարդուցն մասամբ. իսկ Դն որ 'ի վերայ սոցա կայ՝ ունի մուտս արտաքոյ յարևմտեան հարաւոյ, 'ի նմին վիմէ, և է քառակուսի իբրև 20 ոտնաչափ առ կողմն. չորիս ունի սիւնս ատուարս և գեղեցիկս, յորոց կամարք ձգեալք ամբառնան գմբէթ սրաձև, յորում լուսամուտ բոլորշի, և սաստ կարծի սկիզբն արարեալ փորուածոյ մատրանն և տակաւ 'ի վայր խաղացեալ որպէս 'ի բռվս. կայ 'ի սմա բեմ և սեղան. 'ի վերնախարսխի միոյ 'ի սեանցն գրեալ է արձանագիր Պապաքայ որդւոյ Պռոշայ և կնոջ նորա Ռուզուքանայ, որ յամին 1288 եաուն զայն փորել. կան և այլ մատրունք փոքրկունք փորեալք 'ի բազում կողմանս քարալերինն. մասամբ վիմափորք են և սենեակք միանձանց որ 'ի հարաւոյ և յելից եկեղեցեացն. 'ի տաճարի մեծի եկեղեցւոյն պահէր գեղարդն սուրբ՝ որ այժմս գանձեալ պահի յէջմիածին: — Նշոր սորեկան Արաքացի աւերեաց նախ զեկեղիս զայս յամին 923, և ապա սասանութիւնն 1679 ամին, և յետոյ Լեզկիք. և առ մեզ կրկին նորոգեալ յամին 1834, ոչ տակաւ անդրէն վատնգեցաւ և խախտեցաւ 'ի մեծէ սասանութենէն Արարատայ յամին 1840. տակաւ սմանք 'ի Ճգնաւորաց Սևանայ պահեն այժմ զզարմանաշէն մենաստանս: — Որում նման և պայծառագոյն եւ էր Հայոց Եառ կամ Հառաց Եառ՝ յարևելից հարաւոյ սորա և յելից գետոյն, նորոգ շինեալ Անծածրէնւ եկեղեցեաւն 'ի Գրիգորէ մագիստրոսէ՝ յամին 1013, որ նոյնպէս կործանեցաւ յամին 1679, և Թէպէտ ձեռն արկին 'ի նորոգութիւն, այլ լքեալ մնաց: Մերձ երկոցուն սոցա 'ի նոյն լերինս էր և Աղջոց վանք՝ առ յիշատակէ սրբոց Հռիփսիմեանց, հաստատեալ 'ի Լուսաւորչէն: Մերձ նմին Թուփ և Ողջաբերդ գիւղ, բնակեալ այժմ 'ի սակաւուց մահմետականաց, յորում անձաւախիտ քարայրք են վիմափորք, այլ ոչ է քննեալ տեղւոյս:

142. ՇԱՐՈՒՐ գաւառ 'ի հարաւոյ կայ Ջէնկիպաղարայ և յարևելից Տարալագզայ, Երասխաւ սահմանեալ յարևմտից կողմանէ, և Արփա գետով օժանդակաւ նորուն 'ի հարաւոյ. արևելեան մասն նորա լեռնավայր է, արևմտակողմն դաշտագետին, և մասն է գաւառայն Այրարատայ՝ ԴՈՒՇԵՑ ԴԱՇՏԻՆ և ՇԱՐՈՒՐԱՑ: Հիւսիսակողմն կոչի ՎԷՏԻԲԱԶԱՐ, յանուն Վէդի վտակի՝ որ Թափի յԵրասխ. ընդ մէջ նորա և Արփայի խաղայ այլ վտակ Չանախճի կոչեցեալ: Ցերկոսին վիճակս գաւառիս 70 գեօղք են, յորոց բնակիչս՝ Հայք 3000 միայն, այլքն Թաթարք: Գլխաւորք 'ի գեօղեանն են Վէդի, յորում 100 տուն Հայոց և 130 Թաթարաց: — Տևէմ. 'ի սմա եւ 100 երդք Հայոց. — Սաֆարաւ, 140 տունք Թաթարաց և Պարակց: Ի բնիկն Շարուր գլխաւոր գեօղ է Պաշ-Նորաշէն իբր 100 Հայ գերդաստանօք և 28 այլազգեօք, առ Արփայ գետով. — Եկիճէ, Խանչելար, Վայխիր? և այլն: Քաղաք կամ չէն նշանաւոր ոչ յիշատակի այժմ 'ի գաւառիս, այլ հարկ էր 'ի հնումն բարգաւաճ յոյժ լինել նմին, մերձ գոլով յՈստանն արքունի և յաւագ լեառնն Մասիս. և Թերևս գտցին նշացուածք շինուածոց 'ի 40 և յաւելի գեօղսն ամայիս, արտաքոյ եօթանասնիցն բնակեցելոց:

143. ԿԷՕՔ-ՉԱՅ գաւառ ընդարձակ յարևելից կայ չորիցն նախագրելոց, և բոլոր զծովակաւն Գեղամայ, տարածեալ ընդ հիւսիսի և ընդ հարաւ և ընդ արևմուտս. հիւսիսակողմն ունի զԱՇՈՑՔ, զՆԻԳ և զԾԱՂԿՈՒՆԻՍ կամ ՎԱՐԱԺՆՈՒՆԻՍ գաւառս Այրարատայ, արևմտակողմն զՄԱԶԱԶ, հարաւակողմն և արևելեան անձուկ եզր զԳԵՂԱՔՈՒՆԻ գաւառ Սիւնեաց. մասամբ Վայոց Ձորոյ: Ջարգիս արևմտեան հիւսիսային մասն գաւառիս ԱԳԱՐԱՆ կոչի, յորում 40 գեօղք են. մասն վիճակիս յայնկոյս Քառադայ կայ ցԱրագած լեառն, հիւսիսային և միջին կողմն ՏԱՐԱՉԻՉԱԿ կոչի, որ Թարգմանի Ծաղկանեաց Ձոր, և կոչի իսկ այսպէս 'ի յիշատակարանս. 'ի սմա 37 գեօղք են. հարաւակողմն է բուն ԿԷՕՔ-ՉԱՅ, յորում 60 գեօղք հայաբնակք 9000 ազգաւ: — Համօրէն գաւառն կոհակացեալ է լերամբք և ձորովք, և կենդրոն իմն Թուի ահեղ հրաբխից, և 'ի նոցանէ գոգացեալ տաշտաձև Լիճն Սևանայ, որ է Ծով Գեղամայ կամ Գեղաքունեաց ըստ նախնեաց, Կապոյտ ծով կոչեցեալ յայլազգեաց, Կէօքչայ կամ Կէօքծէ փէնիզ, և Տերեաւիրէն՝ 'ի Պարսից, այսինքն Գեղեցիկ ծով: Ի հիւսիսոյ նորա ձգին Իշէկ-մէյտան լերինք և անջրպետեն յելից կուսէ զԱհանգն Գանձակայ. յարևմտից կուսէ ամբառնան Խումբէթէրէ (Երկգագաթունք) կանաձևք հրաբխիք, և Ահմանկան լերինք բարձունք, որ են Գեղամայ լերինք. 'ի մտից կուսէ նոցին՝ Քէօլթանկ, և Հասոխ՝ որ է Շամիրամայ լեառն հանդէպ լերինն Արայի. յարևմտեանն հարաւակողմն՝ Նալ-Թէփէ և Աք-տաղ որ են լերինք Գեղայ, և Արգըլայ-սար՝ այսպէս կոչեցեալ յանուն արքայանի ուրուք, և այլ գագաթունք բարձունք բիւր ոտնաչափ և աւելի. յարևելից կուսէ Քունկուր, Քիլիսէլի, Տէլքէթէփէ, և այլն: Ի լերանց աստի 38 գետք և վտակք մտանեն իջանեն 'ի ծովակն, կէսք առանձինն և կէսք յիրար անկեալ, որպիսիք են գետն Չիպուքլուի 'ի հիւսիսոյ, Գէտին և Դըռախտին 'ի հիւսիսոյ արևելից. իսկ յարևելից կուսէ վտակք մտանեն իջանեն զի լերինքն հուպ կան 'ի ծովակն. 'ի հարաւոյ և յարևմտից հորագոյնք իջանեն գետակք, որպէս Մաղրա գետն՝ օժանդակեալ 'ի յոլովից վտակաց, գետն Մազնոց, Շղուաքայ, Ձագայ, Կոթայ, Կողակ որ յԱքգըլլայ սարէն իջանէ, և այլն: Իսկ 'ի ծովակն մի միայն առու ելանէ յարևմտից հիւսիսոյ և հոսէ 'ի Հրազդան գետ, որոյ և Թիւ մի համարի: Եւ է ծովակն 6000՝ բարձր յերեսաց Սևաւ ծովու, ունելով 40 մղոն ընդ երկայնն և 20 ընդ լայնն 'ի հարաւոյ կողմանէ, իսկ 'ի հիւսիսոյ 10 մղոն միայն, անձկագոյն եւ է 'ի միջակողմն՝ քարուա սարաւանդից յառաջե-

լով 'ի ծովն, ցածագունից յա-
բեմոնից և բարձրագունից յա-
բեւելից կուսէ. և համօրէն ե-
րեսացն տարածութիւն է 370
մղոն քառակուսի: Ջուրքն 'ի
հասարակի բարեհամք են և
քաղցր, հաց յափանցն ուտելք,
յոր խառնեալ է հրաբուխ լե-
րանց արգասիք. և որպէս գի-
տեալ է բնակչաց կղզւոյն և
միրձակայ գեղջէիցն՝ եօթն ամ
անձ ջուրն և բարձրանայ և ա-
պա եօթն ամ զնուազանի. բերէ ազ-
գի ազգի ձկունս, որպէս յիշե-
ցաք 'ի բնական նկարագրի աշ-
խարհիս (28), յորոց ազխտեալ
տառատապէս տանին 'ի գաւառս
և 'ի նահանգս հեռաւորս, տեղ
լինչ բաժ տալով յաղքունիս. խայ-
տան և հաւք ջրասէրք 'ի վերայ
ծփանացն, զորս հերձանեն սա-
կաւ նաւակք ձկնորսաց, և լաս-
տափայտ մի 'ի պէտս վանացն
որ 'ի ՍԵՒԱՆ կղզւոջ: Կղզիս այս
փոքրիկ որոյ կէս մղոն եւեթ է
շրջապատ, ունելով վերայ մի
ռուսական ընդ երկայնն և կէս
վերայ ընդ լայն, կայ յարեւմտից
հիւսիսակողման ծովուն, սակա-
ւուք հեռի 'ի ցամաքէն, իբրև
գագաթն պորփիւրաքար լերին
սեւորակ ցցուեալ ըստ ջուրան,
այլ դալարագեղ բուսաբերու-
թեամբ զուարճատես է աչաց,
մանաւանդ 'ի գարնայնի՝ զար-
դարի քաղցրահոտ ծաղկամբք և
փայրենի մրգօք: Ոչ է յայտ
սկիզբն բնակութեան կղզւոյն,
այլ զի յանուն Գեղամայ կոչի
ծովն՝ թուի և 'ի Հայկազնոյն
յայնմանէ զառաջինն շինեալ, և
'ի յետնոց ամուր հաստատեալ
'ի նմա՝ որոյ աւերակք երևին եր-
բեմն 'ի ներքոյ ջուրցն. և յիշեն
պատմիչք մեր 'ի սկիզբն և 'ի կէս
Ը դարու Հագարացւոց ձեռն
արկեալ և քանդեալ զայն. այլ
իբրև տեղի անքոյթ ապաստան
լինէր ինքնին կղզին, յԹ և Ժ դարս
իշխանացն Սիւնեաց և Աշոտոյ
Բ արքայի: Իսկ վանացն որ 'ի
նմա շինութիւն 'ի Լուսաւորչէն
միրմէ ասի սկզբնաւորեալ և 'ի
նմանէ կոչեցեալ Այս-է-վան, յոր-
մէ Սեւանն յորջորջեցաւ. մա-
տուռն մի Ս. Յարութեան անուն
շինեալ ասի Սրբոյն, և հիմունք



Սեւան. — Lac de Sévan.

նորա ցարդ երևին. բայց յետ Թ դարուն պայծառացաւ տեղին շինութեամբ և վայելուչ կարգօք միաբանակեցաց, առաջնորդութեամբ հօր Մաշտոցայ, որ եղև յետոյ կաթուղիկոս. քանզի մեծահաւատ և այրասէր տիկինն Սիւնեաց Մարիամ 'ի յիշատակ առն իւրոյ Գաբրուն Վասակայ և 'ի լրումն անդարձի նորուն՝ ուխտիւք խնդրեալ շնորհս եգիտ մտանել 'ի կղզին, զի ոչ էր երբեք Թոյլ տուեալ կին մարդոյ մտանել յանապատ միանձանցն, և ետ կառուցանել վերակացութեամբ Մաշտոցի յամին 874-80 զեկեղեցին մեծ յանուն սրբոց Առաքելոց, որ և կանգուն կայ ցարդ, խաչաձև գոլով և առանց սեան կրելով զգմբէթ. երկուստեք բեմին աւանդատունս ունելով, որոց հիւսիսայնոյն դուռն արտաքուստ է, զի անտի էին ելք տիկնոջն 'ի վերնատունն վասն աղօթից. դրունք եկեղեցւոյն յարևմտից և 'ի հարաւոյ միափեղկք են յընկուզենի փայտէ, առաջինն շինեալ յամին 1176 որպէս փորագրեալ 'ի նմա յիշատակագիրն ցուցանէ, և երկրորդն պէսպէս քանդակօք գրուագեալ յամին 1557. նորոգեալ է եկեղեցին յամին 1654 յերից հարազատաց Տփխեցւոց: Յեկեղեցւոջս յայսմ յաղօթս կալով երանաշնորհ Հօրս մերոյ Մխիթարայ Աբբայի մինչ սարկաւագն էր յամին 1692, արժանացաւ այցելութեան Տիրամօրն և քաղցրութեան առ 'ի նմանէն: Կայ և այլ եկեղեցի յարևմտեան հիւսիսի կղզեկին 'ի գիւր տեղւոջ ստորաշէն ձեղուամբ, շինեալ 'ի նմին տիկնոջէ և նորոգեալ 'ի նոյն հարազատաց յամին 1664, և վերջստին 'ի յետնոց յամին 1740: Յարևմտից եկեղեցւոյս է նորաշէն բնակարան միաբանիցն 25 սենեկօք, շինեալ յառաջ քան զամս քսան: Գոն և այլ մատրունք անշուքք. և յարևելեան կողմն առ ծովափին երկու խրճիթք Մուշտոյնէր կոչեցեալ, զի անդ ճգնէր երանելին Մաշտոց Թէպէտ և խրճիթքն նորաշէնք են: Միաբանքն անապատակեացք այժմ 10 կամ 15 ոգիք են, և զնախնեացն խստակրօն վարս անազարտ բերեն յանձինս, պարապեալք 'ի պահս և յաղօթս յերկարս: Զուարճալի են բոյսք և պարտէզք կղզւոյն, մանաւանդ ծաղիկն կամ շուշանն Մարեմայ կոչեցեալ: Են 'ի ծովուն և երկու ժայռք անբնակք. բազում անգամ յուզին սաստիկ ալիք նորա 'ի շնչելոյ արևելեան հողմոց, զոր և Սոթայ հողմ կոչեն: Ի կարէձմեռն ձմերանի խսպառ պաղի ծովակն, և յայնպիսում ժամանակի ծակեալ ոմանց զսառն և չափեալ գտին զխորութիւնն ուրեք իբրև 70 ոտս, չև հասեալ լարին 'ի յատակն:

144. Յարևմտակողման հիւսիսոյ գաւառիս, յԱՊԱՐԱՆ վիճակի և 'ի հին Աշոցս մինչև յՔասաղ գետ, նշանաւոր տեղիք են Պօշ-Ապարան 'ի գլուխ Քասաղ գետոյ՝ և ինքն Քասաղ կոչեցեալ 'ի հնումն, ունի հին եկեղեցի մեծ, և 56 երդ Հայ: — Ապարան միւս որ և Ղիրողալէ նոյնքան հայ բնակչօք. մերձ 'ի սա և 'ի Զամբրլու գիւղ՝ կան քարաշէն և կրաձոյլ շինուածք հին. զտանին և սրբազան շինուածոց աւերակք առ գետովքն Աստուածընկալ, Թղուտ (որ Թուրի Թէղէնիս), Գարա-քիլիսէ, Տամճլու, Բաշաքէչի, Արզական, և այլն: Զօրաթ, առ որով ձոր գեղեցիկ՝ բրաբիոնի կամ Մարեմայ ծաղկի: Գտանին և բոյսք կապարի և պղնձոյ, որպէս կարծի և ոսկւոյ՝ 'ի լերինս կողմանս. յորոց մի է Սուքէլէն 'ի մէջ հիւսիսոյ լերինն Արայի, առ որով գեօղ համանուն՝ բնակեալ 'ի Հայոց գաղթելոց 'ի Մակուայ:

145. Յարևելից հարաւոյ լերինս և 'ի մէջ Հրազդանայ 'ի Տարաչիչակ վիճակի, որ է ԾԱՂԿՈՒՆԻՔ կամ ՎԱՐԱԺՆՈՒՆԻՔ գաւառ, նշանաւոր տեղիք են, Կէչառուս կամ Կէչառուաց վանք յաջմէ գետոյն 'ի ստորոտս Ալիգէզ-Թաւ լերին 'ի մուտս գեղեցիկ հովտի 'ի բարձու 5500', ուր 'ի հնումն էր ԿԵՉՐՈՐ քաղաքաւան. շինեալ յԱպիրատայ Պահլաւունոյ և 'ի Գրիգորէ Մագիստրոսէ յամին 1031-3. վեց եկեղեցիք են 'ի նմա, մեծագոյնն հրաշակառոյց անսիւն գմբեթաւ՝ որ անկաւ 'ի սասանութենէ յամին 1827. կայ 'ի նմա և արձանագիր յիշատակի պատուոյ Մագիստրոսին յամին 1051. և նորոգողաց և ընդարձակողաց վանացն 'ի սկիզբն ԺԴ դարու՝ յայլ եկեղեցիս. մենաստանին սակաւ ինչ հետք մնան: Վասն գեղջս վայրացս՝ աստ օթագային բնակիչք Երևանու յամարան: Մերձ 'ի Կեչառուս կան մնացուածք և Մաքրավանից առ համանուն գիւղիւ և այլոյ Մէնտօփանի: — Ի մէջ հարաւոյ սոցա յանկեան վտակի օժանդակի Հրազդանայ կայ Բջնի գիւղ, առ աւերակօք հնոյն՝ ԲՋՆՈՅ կոչեցելոյ ամուր աւանի, որոյ մնան մասն բերդին 'ի բարձու սարահարթի, առ որոյ ստորոտով կանգուն կայ հոյակապ տաճար անսիւն գմբեթաւոր շինեալ 'ի Գրիգորէ Մագիստրոսէ (որոյ կալուած էր Բջնի) յամին 1031. յորում Սմբատ արքայ (Յովհաննէս) և Պետրոս կաթողիկոս Գետադարձն՝ հաստատեցին եպիսկոպոս 'ի Բջնի, որոյ ընդ նախարարնին մնան նշխարք: Ի ԺԴ և 'ի ԺԵ դարս ապաստան Թաթարաց աւերեաց զտեղիս: Բնակիչք գեղջն 40 տուն մահմէտական և 30 տուն Հայ: Առ Բջնեաւ կամուրջ փայտաշէն արկեալ կայ 'ի վերայ Հրազդանայ: — Ի հիւսիսոյ Բջնոյ կայ Սօլաք գիւղ, և առ նովաւ աւերակ Մայրոյ վանաց կամ Մայրագոմայ, ուր եկաց Յովհաննէս հակառակողն Եզրի:

146. Յելից Հրազդանայ 'ի հիւսիսային արևմտեան կողման ծովուն, 'ի ՆԻԳ և 'ի ՄԱԶԱԶ գաւառս նշանաւոր տեղիք են, Չիբուխլու գեօղ որ է Ճապոփէն ըստ Հայոց, 'ի հիւսիսային արևելեան ծայր ծովուն 'ի սահմանագլուխ գաւառիս և Գանձակայ, 'ի ստորոտս լեռնանցից Իշէկմէյտանայ, 130 տամբք Հայոց եկելոց 'ի Պայէզիտայ: — Գորդաք կամ Օրդաքլու յարևմտեան հիւսիսային ծայր ծովուն, Թուրի Բէրդիկոյ գիւղն, 60 հայ տամբք և աւերակօք: — Ծաղկունիք մերձ 'ի Պորտակ: — Ուլխանլու յահեկում Հրազդանայ մերձ 'ի խառնուրդս առուին Սևանայ 'ի գետն, հանդէպ Կեչառուաց, 100 հայ տամբք: Ի հարաւոյ նորա Ախտա գեօղք երկու 120 տամբք Հայոց: Ընդ մէջ սոցա և ծովուն կայ Գօղօ-Բէքէ լեառն: — Ալաֆար որ Թուրի Այաբէրէօ գիւղ, 'ի հարաւոյ վերնոյդ և 'ի հիւսիսոյ Քեօթանկ լերին, 40 տամբք: — Դարձեալ յեզր ծովուն Ցամաքաբերդ, Գոմաձոր, Դըդմաշէն, և այլն. ընդ որս և Հայր Յովհան վանք և Ալիբէ վանք? աւերակ յեզր ծովուն:

147. Ի կիսոյ ծովուն և 'ի վայր՝ բուն գաւառ է Գեղարքունեաց, որոյ արեւմտեանն մասն ԳԱՒԱՌ կոչի այժմ, յանուն աւանին զոր առ Կէօք-չայ գետով Թափելով 'ի ծովն՝ կանգնեցին գաղթականք Պայէզիտու, վասն որոյ և Նօր-Պայէզիտ կոչի, երկու ժամու հեռի 'ի ծովեզերէն, շինեալ եկեղեցիս յանուն եկեղեցեացն Պայէզիտոյ. բայց 'ի խնդիր շահաստան տեղւոյ շատք 'ի բնակչացն մեկնեցան, և մնան այժմ տունք իբր 260, և ոգիք 1350: Ի մօտոյ նորա հուպ յարեւմտեան լեզու ցամաքին 'ի ծովուն (143) առ գետակաւն կայ Նօրատուս կամ Նօրատուսոյ գեօղ հին, 100 տամբք. յորում կան գերեզմանք հին և տաճարն զոր կանգնեաց Սահակ Սիւնի յԹ դարու կործանեալ գմբեթաւ, և աւերակ կուսաստանի Դուքայ վանաց: — Հարաւային արեւմտեան ծայր գաւառին կոչի ԱՅՏԱՄԱՆ, յանուն կրկին գիւղից բնակելոց 80 Հայ տամբք: Ի հնումն աստ էր ԿՈԹ քաղաքագիւղ, ուր հոյակապ եկեղեցի շինեալ 'ի Գրիգորէ Սուփանայ Սիւնւոյ, այժմ աւերակ. գետն որ առ աւանաւս Թափի 'ի ծովն՝ կոչի Իշխանագէօք, զի բերէ առատ զձկան անուանեալ ձուկն և զկողակ: — Ի մօտոյ Կոթայ կայ Վանի-Ահի գիւղ, ըստ նախնեաց Ճողոգոյ, յորում մնացուածք մեծի եկեղեցւոյն շինելոյ 'ի Մարիամայ Սիւնեաց տիկնոջէ յեւս Թ դարու: — Արեւմտեան հարաւային կողմն ծովուն կոչի ԳԱՐՄԱՆԼԸԳ (մթին) յանուն երկուց գիւղից՝ յորս 120 տունք են Հայոց, առ համանուն գետակաւ յելից Իշխանագետոյ: Ցելից սոցա մերձ 'ի ծովեզրն կայ Վանավանոս մենաստանն՝ եկեղեցեաւն շինելով յամին 903 'ի Մարեմայ տիկնոջէ և յեղբօրէ նորա Շապհոյ որքայեղբօրէ, գեղեցիկ արձանագրաւն: — Ցելից սորա առ Կիւլլիւ-փէրէ վտակաւ 'ի լանջս լերին միոյ կայ մեծահռչակ մենաստանն Մաքենեաց կամ Մաքենոցաց որ և Մաքենփէնիս, որ պայծառանայր յԲ դարէ, առաջնորդութեամբ հօր Սողոմոնի առն իմաստնոյ՝ հեղինակի Տօնական գրոց. կանգուն կայ անսիւն բարձրագմբէթ տաճարն զոր շինեաց Գրիգոր Սուփան յամին 852, և մասն մի վանացն՝ քարաշէն. զոր և Գըզըլ-ղիլիսէ կոչեն. 'ի Կիւլլիւ-փէրէ դեղջ բնակեն 100 տուն Հայք:

148. Արեւելեան հարաւային կողմն ծովուն կոչի ՍՈԹ, և է Սոթից գաւառ Սիւնեաց, որոյ արեւելեան մասն արտաքոյ Հայկական նահանգիս մնայ 'ի Գարաբաղ: Անունն ՍՈԹՔ կամ ՁՈԴ ըստ արդեւացս կայ յեւս միջնակին առ վտակաւ յոր խառնեալ այլք գործեն զԳըլ-Պօլաք գետակ, և առ ակամբք նոցին 'ի սպառուած հարաւոյ գաւառին կայ Աւլահ-կէօլ կամ Ալա-կէօլ լճակ չամբուտ. Ձոդ և Պօղուրճիւլէր գեօղ գըլխաւոր բնակեալ են 'ի Թաթարաց. գեօղն 'ի հնումն կոչէր Վասոնդ. կան առ նոքօք հին գերեզմանք և խաչվէմք և եկեղեցիք: Ցայսմ միջնակի Սոթից են երանիւ չափ գիւղորայք բնակեալք 'ի Թաթարաց որոց փոխեալ է և զանուանս գիւղորայիցն, որք հին հայկական անուամբք 'ի դիւանս աթոռոյն Սիւնեաց յիշին և յամին 1513, յորում դեռ հայաբնակք էին. 81 գեօղք թուեալ են անդ 'ի Սոթս, յորս և Գեղամէքօ. և 47 'ի Գեղարքունիս, որ է արեւմտեան կողմն հարաւոյ ծովուն, որպէս յիշէր և յեւս ԺԳ դարու Ստեփանոս Օրբելեան պատմիչ և առաջնորդ Սիւնեաց: Արեւելեան մասն Կեօքչայ գաւառի՝ անձուկ երկիր է և լեռնավայր սահման Գանձակ նահանգի. և կոչի ԿԻՒՆԷՅ 'ի Թաթարաց և Աբէգանէ ըստ Հայոց, յորում գեօղք սակաւք են, որպէս ('ի հարաւոյ սկսեալ) Մեղրէ Մեծ և Փոքր. Շինքուլ, Ճիւ, Շօրժա, Թօխլուճա, Ճանբէզէ. և այլն: Շօրժա կայ 'ի վերայ հրուանդանին յարեւելից կարկառելոյ 'ի ծովն (143):

149. Զ. ՏԱՐԱԼԱՂԸԶ գաւառ 'ի հարաւոյ կայ Գեղարքունւոյ Քօշիւն լերամբք անջրպետեալ, յարեւմտից սահման ունի զՇարուր, 'ի հարաւոյ զՆախիջեւան, յելից զԳարաբաղ նահանգ, բարձր բարձր լերամբք նորուն անջատեալ. յորոց բղխեալ Արփա գետ արբուցանէ զգաւառս և ընթանայ յարեւմուտս յԵրասխ ընդ մէջ Շարուրայ և Նախիջեւանու. և է երկիրս այս ՎԱՅՈՑ ՁՈՐ կամ ԵՂԵԳՆԱՁՈՐ հին գաւառ Սիւնեաց. լերամբք պարսպեալ ամենուստ, ոչ սակաւ և 'ի մէջն կոհակեալ. յորում 110 գեօղք նշանակին այժմ, բայց 32 'ի նոցանէ ամայիք. Ուռպելեանն թուէ հարիւրիւ չափ գեօղս հարկատուս Թեմին Սիւնեաց 'ի գաւառէն Վայոց, ընդ որս են և հռչակաւոր վանորայք, որպէս Թանահատ, Խոտակերից, Նորավանք, Հերմոնավանք, Գլաձոր, Ցախաց-քար, և այլն. որոց գիրք և հանգամանք չեն մեզ ծանօթք: Այժմեան գլխաւոր տեղիք գաւառին են Քէշիշ-քէնդ աւան 'ի հիւսիսի կամ յաջմէ Արփայ 60 հայ դերդաստանօք, և Եղեգիս յարեւմտից հարաւոյ 250 տամբք մահմետականաց: Այլ գեօղք. Անդողոր 'ի հիւսիսի, 36 հայ տամբք. Մալիշկա, 45 տունք. Աղաքէնդ, Ախտա, Խաչիկ քարաշէն եկեղեցեաւ, Խէրխէր, Արղնըտ, և այլն. Մարթիրոս 'ի հարաւակողմն գաւառին, 40 հայ տամբք և 20 Թաթարօք. որոյ մերձ կայ մենաստան յանուն Տիրամօր. — Արէնի 'ի հարաւոյ գետոյն որ յանուն նորա կոչի, 20 հայ տամբք. յԺԳ դարու Տարսայիճ իշխան կառոյց 'ի սմա ապարանս և Սարգիս եպիսկոպոս Նորավանից կամուրջս մեծակառոյցս. յորմէ գուշակի մերձ նմին լինել և Նօրավանից որ գլխաւոր էր վանորէից Սիւնեաց յետ Տաթեւու, և վասն տեղւոյն դրից կոչէր և Խօրաձօր. մերձ էր նմին ամրոցն Հրաշքաբերդ կամ Հրասեկայ բերդ: Իսկ պայծառացեալն յեւս ԺԳ և 'ի սկիզբն ԺԴ դարու Գլաձորոյ կամ Գայլէձոր վանք, որ և Աղբերց վանք, իցէ թերեւս յարեւելակողմն գաւառին առ ակամբք Արփայի, 'ի ստորոտս Քէօշ լերին: Կան և այլ ամայի վանորայք, յորոց երկուք Գողթայ-վանք կոչին, և մին առ Ալաքեօք գիւղիւ կայ 'ի հարաւոյ Խաչիկեան լերանց. և բազում եկեղեցեաց աւերակք 'ի Թաթարաբնակ գեօղս, որ աւելի են քան զհայսն, և բնակիչքն իբրև 5000, իսկ Հայք բնակեալք 'ի 28 գեօղս՝ 3000 ոգիք:

150. Է. ՆԱԽԻՋԵՒԱՆ գաւառ 'ի հարաւոյ կայ Տարալաղըզայ և Շարուրայ, 'ի մօտոյ սահմանի Երասխաւ և Գարագօյունլու միջնակաւ Պարսից մասին (103), 'ի հարաւոյ Օրտուպատաւ, և յարեւելից Գարաբաղիւ. արեւմտեան կողմն է հին ՆԱԽՃԱՒԱՆ գաւառ

Վաղարշակունի, արևմտեանն ՆՈՐԱՇԷՆ գաւառ Սիւնեաց, հարաւայինն՝ մասն ՃԱՀՈՒԿ գաւառի նորին. այժմ 'ի չորս վիճակս բաժանի. յորոց 'ի հիւսիսոյ արևմտից՝ 'ի հարաւոյ Շարուրայ կայ ԽՈՔ ինն գիւղօրէիւք. համանուն գիւղն բնակեալ է 'ի Թաթարաց կամ Թուրքաց, որպէս և այլքն, բաց յԱշնաբերդ գեղջէ, յորում են 43 տուն Հայք: — Յելից Խոքայ կայ ՄԱՒՐԱՋԻ-ԽԱԹՈՒՆ վիճակ 9 գիւղօրայիւք առ Ճաղըր գետով որ 'ի լերանց Տարալագեղայ գայ և անցեալ 'ի հարաւոյ Նախիջևանայ Թափի յԵրասխ. յաջմէ կամ 'ի մտից գետոյն կայ համանուն աւանն Ճաղըր կամ Ճաղըրի 100 Թուրք և 130 հայ գերդաստանօք:

151. Ի հարաւոյ Խոքայ և յելից Նորա և Մաւա-ջիխաթունի կայ վիճակն ՆԱԽԻՋԵՒԱՆ, 60 գիւղօրայիւք, յորում և ՆԱԽԻՋԵՒԱՆ քաղաքն գլխաւոր երկուց գաւառացն Նախիջևանայ և Տարալագեղայ, յաջմէ Ճաղըու գետոյ, 'ի բարձու ուրեմն 2630' Երասխեան դաշտի. քաղաք հին, և ըստ հասարակաց աւանդութեան Նախ-իջևան Նոյի և բնակութիւն յետ ջրհեղեղին, առ որոյ հաստատութիւն ցուցանեն և զԳերեզման Նոյա առ գրամբ քաղաքին, աղիւսակերտ կիսաւեր շինած քառակուսի կամ ութանկիւնի. 12' տրամագծաւ. բայց ինձ 'ի բուն 'ի ստորոտս Արարատայ Թուի Նոյեանն Նախիջևան յիշատակեալն 'ի Յովսեպոսէ պատմչէ յԱ դարու, համանիշ յունական Թարգմանութեամբ. իսկ սա Թուի Նախճոյ-աւան քանզի և յաճախ գրի Նախճաւան: Հայկազնեանն Տիգրան բնակեցոյց 'ի սմա զգերութիւնն Մարաց, և յետ այնորիկ բազում անգք անցին ընդ քաղաքս, յորս և եղերական հրկիզումն Նախարարացն Հայոց յեկեղեցւոջ սորա 'ի բռնաւորաց Հագարու. յԺԳ դարէ և այսր բազում անգամ աւերեցաւ 'ի Թաթարաց, Պարսից և յՕսմանեանց



Նոյայ Շիրիմ. — Tombeau de Noé.

և 'ի Ռուսաց՝ յաւաման նորին 'ի ձեռաց Պարսից՝ որոց խան նստէր և 'ի սմա: Ի մնացորդս շինիցն նշանաւոր է գունան գղեկի խանիցն կամ Աթաբեկաց, շինեալ յԺԲ դարու, գունագոյն աղիւսագործ, կրկին մինարայիւք և արտաքոյ արձանագրութեամբք. և հոյակապ շիրիմ կամ աշտարակն Աթաբեկաց՝ վտանգեալ 'ի սասանութենէ 1840 ամին 12անկիւնի ձեւովն 70' 'ի բարձու և 96' 'ի շրջաբերութիւն, 'ի գունագոյն աղիւսոց նկարապաճուճեալ, հարուստ քանդակօք և արձանագրութեամբք: Բնակիչք 6000, յորս իբր 2000 Հայք: Սահմանք քաղաքին Թէպէտև քարուտք, այլ բարեբերք են և զուարճալիք: — Ի ԺԴ դարու հաստատեցաւ 'ի Նախիջևան աթոռ հռովմէական արքեպիսկոպոսի Հայոց 'ի Դոմինիկեան կամ 'ի Քարոզչաց ուխտէ, որոց քարոզեալ 'ի գաւառս և յԵրնջակ և 'ի Գողթն, աշակերտեցին գեօղս բազումս և հաստատեցին վանորայս. սոքա են Ունիթոռքն կոչեցեալք կամ Ջահկեցիք, որք տևեցին ցԺԸ դար, և ապա այսր անդր ցրուեցան մնացորդք նոցա: Գլխաւոր աթոռ նոցա Ջահուկ կամ Ճահուկ աւան յանուն գաւառի Սիւնեաց, յելից հիւսիսոյ Նախջևանու այժմ ամայացեալ է. անյիշատակ է և Շահաղծա կամ Շահաղունեաց գիւղ, յորում անուանի մենաստան նոցա յանուն Ծննդեան Տիրամօրն:

152. Այժմու նշանաւոր տեղիք վիճակիս են ԱՍՏԱՊԱՏ առ խառնրդովք Ճաղըու յԵրասխ, երբեմն քաղաքաւան նշանաւոր, և ըստ աւանդութեան՝ կոչեցեալ այնպէս վասն տապանաց մարմնոց Ս. Վարդանանց, յորոց անուն կայ և եկեղեցի 'ի բերդին՝ զոր շինեաց Ապպաս Միրզա Շահ Պարսից վասն որոյ և Ապպասապատ կոչի. այժմ անշքեցեալ է քաղաքաւանն, և բերդն միայն կայ: Ի հարաւոյ սորա է անուանի մենաստանն Կարմիր վանք յանուն Ս. Ստեփանոսի, մեծաւ եկեղեցեաւ յաղիւսոյ և 'ի կարմիր քարանց. չէն է մենաստանն նոր շինեալ 'ի սկիզբն անցելոյ դարու. և են առ նովաւ քարանձաւք 'ի ձորն Երասխայ, ուրանօր կառուցեալ են վանքն յ'2200' բարձու, վասն որոյ և Քարափոխս վանք կոչին. 'ի գեղջն փոքու որ առ նովաւ բնակեն 20 երդ Հայք: — Հէկրէամ աւան բնակեալ յ'200 երդ մահմետականաց. Դաշտէնք 140 տուն հայ և 20 Թուրք. Կի-ւ-Բէէճէ յահեկէ Ճաղըու գետոյ 78 երդ Հայովք. Գարախան-դէկլի 100 տուն հայ. Շահապաղաք, Հաղաբաղաք, Խաղխալ, և այլն, բնակեալք 'ի Հայոց:

153. Յելից Նախիջևանու կայ ԱԼԸՆՃԱ վիճակ 24 գիւղօրէիւք առ համանուն գետակաւ երկայնեալ ընդ մէջ Երասխայ և Արփային և Այըռ-լերանց Գարապաղու, և է ԵՌՆՋԱԿՆ գաւառ. որոյ հին բերդաւանն համանուն՝ այժմ ամայի Ալընճա-Գալէսի՝ կայ յաջմէ գետակին 'ի բարձու քարալերին, շինեալ յԵրընջակայ ուստմնէ Սիւնեաց տիկնոջէ 'ի հին ժամանակս. յԹ դարու պաշարեաց զսա ոստիկանն Յուսուփ առնուլ զգանձս Սմբատայ Ա: Ի հարաւոյ Երնջակայ առ գետեզերբն կայ հին մենաստանն Ս. Գէորգ և նորն Ս. Ստեփանոս շինեալ կամ նորոգեալ 'ի ԺԶ դարու: Երնջակ մի էր 'ի գլխաւոր աթոռոց Ունիթոռաց, և անուանի էր Ս. Կարապետ մենաստան և

ուխտ 'ի Նմա. և 'ի սահմանս բերդին հաստատեալ էին և այլ գիւղօրայք աւթոռք և վանորայք նոցին, յԱպրակունիս՝ յորում այժմ 43 տուն Հայ. 'ի Խօշկօնիս՝ որ արդ Խօշթեղին կոչի, և յեշէ տեղիս յաւուրց Տիգրանայ Հայկազնոյ, ուր արդ 12 տուն մահմետականս: — Քռնա, յորմէ Յովհաննէս Հայ առաջնորդ Ունիթոռաց և Թարգմանիչ լատին գրոց 'ի սկիզբն ԺԴ դարու. այժմ մահմետականք բնակեն անդ 30 տուն, և են աւերակք վանաց և եկեղեցեաց. — Նորաշէն, 40 Հայ և 15 Թուրք տամբք. և հեռագոյն յարևելս Շոռոթ աւան, 20 Հայ և 10 Թուրք տամբք. մերձ է 'ի սա Աստապատ անուն մենաստան: — Ի Թիկանց՝ որ է յարևմտից հարաւոյ սոցա՝ ամբառնայ Եղնուց լեառն, յորոյ քարածերպս գեւան օձք. 'ի ստորոտս լերինն կայ մատուռն Կեղուռ կոչեցեալ, ուրանօր աւանդեն գաղարեալ առ վայր մի սրբոց Հռիփսիմեանց:

154. Ի հարաւոյ մօրց լերինս և 'ի սահմանամէջս գաւառացն Նախիջևանայ և Որդուպատայ առ խառնըրդաւք Ալընճայ յԵրասխ՝ կան աւերակք հնոյն ՋՈՒՂԱՑ որ և ՃՈՂԱ, 'ի քարափան բարձու 2500', որ 'ի Հայկազանցն ժամանակաց շինեալ կայր, և բնակեցաւ 'ի յաղնուաց գերութեանն Մարաց. 'ի միջին ժամանակս 'ի նուաղել այլոց քաղաքաց Հայոց՝ պայծառանայր սա ճարտարութեամբ վաճառականն բնակչացն, և եղև շահաստան անուանի և ճոխ և շինեցաւ քարաշէն եկեղեցեօք, ապարանօք և կամըրջօք. և վաճառականք նորա երթային մինչև յԻտալիա և յայլ քաղաքս ուրեք Եւրոպիոյ. 'ի սկիզբն ԺԷ դարու Շահաբաս Պարսից արքայ՝ գաղթեցոյց բռնութեամբ զճարտար բնակիչսն



Դուռն եւ Աշտարակ Աթաբէկից ի Նախիջեւան. — La Tour et la porte du palais des Atabeks à Nakhitchevan.

յԱպահան, անդ տուեալ կառուցանել զնորին Ջուղա, և աւերեալ զհինն. որոյ կան միայն նշխարք մածապործ չքնաւածոց, բերդի և կամրջոյ, և հիացուցիչ հոյակապ գերեզմանաց. 'ի գերբուկս աւերակացն զեաման կարիձք մեծամեծք. բայց յամաց հետէ աճէ բնակութիւն Հայոց աղանթեր նմին և են այժմ տունք 55: Ժամու 'ի հարաւոյ նորին կայ այժմ Նաւակերտ անցին Երասխայ, Ճանապարհ վաճառուց ընդ Ատրպատական: Սերունդք Ջուղայեցւոց 'ի Պարսս' տառապանօք նուաղեցին և անանկացան. այլ գաղթեալքն 'ի Հնդիկս' ոչ սակաւ բարգաւաճեցին և բարգաւաճեն մինչև ցայսօր: — Ցարևմտից հիւսիսոյ Ջուղայ առ խառնրդովք Ալ-չայ գետոյ յԵրասխ յաջմէն' կայր ԽՐԱՄ քաղաք յորում զնախարարսն Հայոց այրեցին Հագարացիք որպէս 'ի Նախիջևան յամին 704. առ աւերակօք նորին կայ Ըամֆ կամ Տարսալամֆ գիւղ, ուր մասն նշխարաց Ս. Կարապետին պահիւր, և յետ կոյս Ժ դարու փոխադրեցաւ 'ի Ջուղա, և յետ աւերման սորին' 'ի Ս. Ստեփաննոս վանս Մաղարթայ, որ կայ ընդ մէջ Խրամայ և Ջուղայ առ ստորոտով լերինն Մաղարթայ. յառաքելոյն Բարթողիմեայ և 'ի Թադէէ ասեն հաստատեալ զվանսն, և 'ի մեծէն Ներսիսէ. և 'ի հիման եկեղեցւոյն ասի եդեալ Ս. Բարթողիմեայ երիս հատս մանանցն. յամին 976 Աշոտ Գ և Խաչիկ կաթուղիկոս նորոգեցին զեկեղեցիս վանացն և կնքեալ նոցին ցարդ պահի անդ. իսկ յամին 1643 Յակոբ կաթուղիկոս վերստին նորոգեաց ամուր պարսպաւ և բրգամբք. և այլք յետ նորա. և չէն և պայծառ է տեղիս, ուր ցուցանեն յիշատակս զառաքելոյն Բարթողիմեայ, աղբիւր և խաչ երկաթի և դրոշմածս խաչաձևս 'ի վէմս. և պարգևս արքայատուրս 'ի Բագրատունեաց:

155. Ը. ՈՐԴՈՒԲԱԴ գաւառ որ է ՈՐԴՈՒԽԱԴ ըստ Նախնեաց, և 'ի սպառուած Հայոց Նահանգին կայ, անձուկ սահմանաւ և եռանկիւնաձև, 'ի հարաւոյ զԵրասխ ունելով, 'ի մտից զԵրնջակ, և յելից զխափան Գառապաղու. և է հինն ԳՈՂԹՆ կամ ԳՈՂԹՆԱՍՏԱՆ գաւառ, մերթ Վասպուրականի և մերթ Սիւնեաց սեփականեալ, և ԿՈՎԱՍԱԿԱՆ Սիւնեաց. զարեւելակողմն պարսպեն լերինք Գառապաղու, խաղանեալ 'ի հիւսիսոյ և Այանկէր 'ի հարաւոյ. յառաջնոյն իջանէ հզօրագոյնն գետոց գաւառիս Ջուրն Բասփ: — Անուանի էր գաւառն Գողթան յաւուրց Հայկազանց' արգասաբերութեամբ երկրին և հանճարոյ բնակչացն, երգասէր և բանաստեղծ մարդկան, որոց յօրինեալ էր վիպասանութիւնս զնախնեացն քաջաց և անգիր երգովք աւանդեալ յետոց ցհինգերորդ դար. յորում կրկին մանաւանդ թէ երեքկին' յետ Բարթողիմեայ և սրբոյ Լուսաւորչին' քարոզեաց նոցա սուրբն Մեսրոպ, ցածուցանելով զառասպելաբանս բարս նոցին. մինչև ցայսօր միան առ նոսա յիշատակք առաքելոյն Բարթողիմեայ աւետարանչի երկրին, իսկ վիպասանութեանցն փոխանակ' նորալուր բարբառ նոցա' զոր զոկ կոչեն, որպէս և զինքեանս. և են արգասաւոր բանաստեղծականք Թարգմանութիւնք բառից նոցին: 4000իւ չափ եւեթ են Հայ բնակիչք գաւառիս, սուղ ինչ նուաղագոյն և մահմետականքն, բնակեալք 'ի գեօղս 52, որք 'ի հինգ վիճակս տրոհեալ բովանդակին:

156. Առաջին վիճակ է ՈՐԴՈՒԽԱԴ՝ այժմ ՕՐԴՈՒԲԱԴ կոչեցեալ յարևելակողմն հարաւոյ գաւառին' առ Երասխաւ, ինն գիւղովք. ժամու հեռի կայ 'ի գետոյն մեծէ քաղաքն ՕՐԴՈՒԲԱԴ 'ի բարձու 1850' քարափանն' խոնարհելոյ 'ի դաշտակողմն. տունք նորա ցրիւ կոնդնեալ կան 'ի մէջ ծառոց անտառի, յորոց սօսի մի մեծ 32' շրջապատու բնոյն 'ի 6' բարձրութեան յերկրէն' ովաննայ կիսոյ հրապարակի միոյ, և մերձ 'ի կաճղն փապարեալ ժողովարան է սենեկաձև. պատեն և զքաղաքաւն ծառք, ընդ որս և թթենիք չերամարոյծք: Բնակիչք քաղաքին 4000. յորս 200 միայն Հայք: Ի սահմանաց Օրտուպատայ սկսանին երագասահ հոսանք Երասխայ ընդ քարուտ զառիվայր երկիր, քանզի խոնարհի յատակ երկրին ընդ արևելս իբրև 800' ցՄեղրի, որ չորիւք եւեթ փարսախօք հեռի կայ, և անտի և անդր նոյնպէս ցքարավաղս իւր, անցանելով ընդ անձուկս վիմաց և ընդ ժայռս: Յեզր անդ սահմանաց գաւառիս մերձ 'ի Մեղրի կայ Կոշշէտան գեօղ 30 հայ տամբք և հսաղ 'ի նա մենաստան յանուն Ս. Կարապետի: Մի 'ի գլխաւորացն է և ՔԻՒԼԻ 30 տամբք մահմետականաց, 'ի հիւսիսոյ Կարչևանայ, և թուի բնավայր Գողթն գաւառի' ապաւաղելով անուամբ: Այլ յետին ծանօթ գլխաւոր տեղի գաւառին է ԱԳՈՒԼԻՍ 'ի հիւսիսոյ Օրտուպատայ' գլխաւոր աւան փոքու վիճակի, յորում հինգ գեօղք եւեթ են. և կայ առ վտակի փոքու յարևմտից Պէյտէ լերին, և ըստ Նախնեաց' Գառաւյ լերին, որոյ պար երկայնեալ ընդ հիւսիս խառնի 'ի լերինս Տարալագեազայ: Ս. Բարթուղիմէոս քարոզեալ աստ կացոյց առաջնորդ հաւատացելոցն զԿումսի զոր աշակերտեացն 'ի Խորասան աշխարհէ, և նմա յաջորդեաց Բարերլաս Խուժիկ, և միոցին քրիստոնեայք ցաւուրս Ս. Գրիգորի Լուսաւորչ' 'ի քարայրս Գառաւյ. որ նորոգեաց զեկեղեցին շինեալ 'ի Բարթողիմեայ և հաստատեաց զաթոռն եպիսկոպոսական, վիճակեալ նմա գեօղս' յորոց շատք կանգուն կան. եկեղեցին կոչի յանուն Ս. Թովմայի և մենաստան մեծ պարսպէ զնա, ամուր և վայելուչ շինուած նորոգեալ յԺԷ դարու, որ և չէն է և աթոռ եպիսկոպոսի և վարժարան. արտաքոյ պարսպացն կայ մատուռն շիրմի Ս. Կումեայ և հին գերեզմանք: ՅԱգուլիս' որ յերկու թաղս բաժանի 200 տունք են Հայոց և ըստ այլոց 300, և 80 մահմետականաց:

157. Ի մտից Ագուլիսայ կայ վիճակն ՏԱՊԻՆ յանուն Պտապոն գետոյ և կամ Դաշտայ' որ ընդ մէջ Որդուատայ և Երասխայ, առ որ ստորերկրեայ ուղի գործեալ ասի յոտից բլրոյն' ուր կայն Դաշտ: — Մերձ նմին է ընդ մէջ Որդուատայ և Ագուլեաց' Վանանդ գեօղ, անուանի 'ի հնումն բնակչացն արութեամբ և ուշմութեամբ, ուր ասեն կատարեալ զաւուրսն Լուսիկ աշակերտ Բարթուղիմեայ: Վանանդ և Աստապատ Գիրան սեփական կալուածք էին Ս. Վահանայ Գողթնացւոյ և պայազատաց տոհմին: Ի Վանանդայ անուանի եղեն և յԺԷ դարու Թովմաս եպիսկոպոս և

մերձաւորքն իւր, որք ուղղեցին յՍմառնորդամ ասպա-գրութեան անուանի։ Երկրորդին եւ գիւղքն բնակեալ են 'ի մահմետականաց։ — Ի հիւսիսակողմն սորեւլից գաւառակս կայ ՁՈՐԱԳԵՏ միջնակ փոքր հինգ գիւղովք. որոց գլխաւոր Ջիլանաբ 40 տուն Հայովք, և երկուք հին եկեղեցեօք. իսկ յարեւմտից ԳԵՂՕՆ 19 գիւղօ-րայիւք, յորս են և հին Թեմեչն Թոմփսոյի վանաց, այսինքն Ծուլե՛ս յելից Ըռաւթայ բարձրադմբէթ եկե-ղեցեաւ, Բոսոփ՝ յորում աւերակք եկեղեցեաց, Փո-սախ յորում մենաստան Ս. Յակոբ հայրապետի. Այս եր-կու գիւղք 100 հայ ընտանեօք, Մարգեան՝ յո-րում էր մենաստան շինեալ 'ի Ս. Մեսրոպայ, Գե-ղէս, Խուրս, և այլն։

## Գ. ԳԱՆՁԱԿ ՆԱՀԱՆԳ

158. Նահանգս այս որ յանուն հնոյ քաղաքին Աղուանից-Հայոց՝ կոչի ԳԱՆՁԱԿ և նորով անուամբն ԵՂԻՍԱԲԵԹՈՒՊՕԼԻՍ կոչի, կայ յելից Սեւանայ կամ Կեգջ-չայի, և 'ի մտից Կուր գետոյ, 'ի հիւսի-սոյ՝ Ձորոգետով կամ Գուգարաւ (121. 123) բա-ժանի 'ի Սոմխեթոյ, և 'ի հարաւոյ 'ի Գարաբաղ նահանգէ՝ Կուրակ կամ Գուրակ գետով, և լերամբք՝ յարեւելից հարաւոյ Սեւանայ։ Հիւսիսային կողմն՝ սա-ռուած է Գուգարաց աշխարհի, արեւմտեանն երկիր լեռնային է մասն ԱՐՑԱԽ աշխարհի, արեւելեանն դաշտային երկիր առ Կուր գետով մասն ՈՒՏԻ աշ-խարհի։ Յարեւմտից 'ի լերանցն իջանեն գետք հզօրք և մա-նուանդ և ընթացեալ յարեւելս՝ խառնին 'ի Կուր, տարահեղով զերկիրն 'ի ձորահովիտս յա-լովս, որոց 'ի վաղեմն դարս իշխէին աղուանութեան պայա-զատք Սիւնեաց ազգի հայ-կազնոյ, և յետ բարձման Ար-շակունեաց հարստութեան՝ միջամուխ եղեն և Աղուանք վարեալք յայնմ կողմանէ Կուրայ. ներսանդք նոցա և Թաթարք և Պարսք տիրեցին երկրին ցանկս դար, յորոց ակնկալն Ռուսք հանեին 'ի Պար-սից զնահանգս, նուաճեալ զԳանձակ քաղաք՝ յորում նստէր խան մեծիշխան, և կար-գեցին զայն աթոռ կուսա-կալի. 'ի չորս գաւառս տրո-հեալ զնահանգն, որ են Խա-զախ, Ըամշադիլ, Այլում և Եղիսաբեթուպօլ. յորս բնակեն Հայք աւելի քան զ20,000 և Թաթարք համ-գերձ այլովք իբրև 60,000։

189. Ա. ԽԱԶԱԽ գա-ւառ 'ի հիւսիսի նահանգին

կայ, յարեւմտից սահմանակից գաղով Գուգարաց (122) և Կեգչայոյ (143) և Աղստև գետով բաժա-նեալ 'ի Ըամշադլոյ. 'ի միջին դարս Հայոց չէր եր յայժ երկիրս շինութեամբ ամրոցաց յիշխանաց պայա-զատաց Բագրատունեաց և բարեկամն վանօրայից, և կոչէր ըստ զանազան կողմանցն ԿԱՑԷՆ, ՄԻԱՓՈՐ և ՁԵՂՋԵՆԻ, մերթ գաւառաց անուամբ և մերթ աշ-խարհաց, և մեան ցարդ անթիւ նշխարք շինուածոցն, է որ կանգուն և է որ աւեր. այսպիսի է Բէրդն Կայենոյ յարեւմտակողմն, առ Աչոա Երկաթ ամրո-ցայք երբեմն, զոր ըղեք Ձորմազանայ յԺԳ դարու աւերեցին. և յարեւմտից հարաւոյ առ սարորտովք Իջէւ-մելքեան լերանց և մերձ յԱղստեւ գետ Գետիկ վանք կամ Գոշայ վանք, զոր 'ի վերջ կողս ԺԲ դարու կանգնեաց Մխիթար խմաստուն վարդապետ, յետ աւերման հնոյն Գետկայ որ յելից հարաւոյ նորա բացագոյն յայլում միջնակի. կանգուն կան եկեղեցիք նորա և մասն մենաստանին և գերեզման կանգնողին։ Յելից սոցա ձգի Կէօփ լեռան երկայնանիստ, որ է Գոփ լեռան 'ի համանուն գաւառի, յորոյ գագաթան մատուռն շինեալ սրբոյն Մեսրոպայ՝ եւ. 'ի նմա մասն 'ի նշխարաց Ս. Սարգսի. առ ստորոտովն կայ բերդն Գագայ անուանի 'ի Ժ-ԺԳ դարս։ Ի սմին գաւառի ամբառնայ և Գաւարզին լեռան 2500' 'ի վեր, բըր-գաձև ապառաժ պարփիւր փորշագոյն, պատուաւոր անձաւաձև գագաթամբ։ Ի ստորև սորա կայր բերդ համանուն, Թերևս կոչեցեալն Քարհէրձ՝ որում իշ-խէր Վահրամ իշխան յաւուրս արշաւանաց Թաթա-



Գաւարզին լեառն. — Pic de Cavarzin.

րաց ։ Մերձ 'ի սա են աւերակք Խաղօխ աւանի յորմէ առեն զկոչումն գաւառակդ, և զայն ըստ ոմանց առեն Թիֆինուենս մարզկան կողմանն՝ ըստ սովորութեան Վրաց անուանեալ, և կամ վասն նախնի բնակութեան Ուռպելեանց Ճենաց, որպէս Թէ Ճենաց Խաղախս անուանիլ ։

160. Գլխաւոր գետոյք կողմանցս են Կօթի, Մէնէճէնք, Տիւի, Ճօրխէլ առ Չօրփուլը լերամբք, առ առով և Հաղարծին գետով և անուանի մենաստան նորին՝ պայծառացեալ ԺԳ գարու յառաջնորդութեան Խաչատրոյ վարդապետի՝ որ երգեաց զխորհուրդ խորին երգ. եկեղեցին և մատրունք նորոգեալք կանգունք կան, և 'ի միում յայնցանէ են հանգստարանք Թագաւորաց Գագկայ և Գուրգենայ ։ Ցելից Չօրտակըլ լերին յատոս այլոյ անտառախիտ լերին Չօզըլ կոչեցելոյ մերձ յԱչըղըր գետ՝ կայ հրաշակերտ մենաստանն Մոխրոյ վանք գեղադիտակ գրիւք, քարեղէն քանդակօք և պատկերօք դրուագեալ վեհագոյն ամենայն մերձակայ վանորայից, այլ ամայի վասն դժուարամատոյց տեղւոյն. և գամբանք խաչազարդք շուրջ զնովաւ ։ — Ի հիւսիսոյ արևելից սորա և մերձ 'ի Գաւարզին 'ի վերայ արքունի ճանապարհին Տփխեաց կայ Ճօղաղ կամ Բէյէօ աւան յ'2200' բարձու. 'ի մօտոյ նորա Կօնէն առ աւերակօք հնոյ քաղաքի կամ աւանի, և Կիրանց վանաց ։ Ցելից սոցա ցԿուր գետ նշանաւոր գետոյք են Գոզ-Սէլահօղլու և Նոր Սէլահօղլու առուակէն, Աք-Գօյունլու, Գարաֆօյունլու, Տող Քէօնէմէն և Աղստև՝ առ գետոյն, յորոյ անուն և գետս և գաւառս կոչէր 'ի հնումն ։ — Ի կողմանքս յայս և յայլ գաւառս նահանգիս բնակեն նորաղանդ Ռուսք հերձուածք յեկեղեցւոյ նոցա՝ Մալէքան և Տախոպօրեց կոչեցեալք ։

161. Բ. ՇԱՄՇԱՏԻԼ գաւառ որ և ՍՄԻՐ ՇԱՄՇԱՏԻՆԼՈՒ, 'ի հարաւոյ Խազախայ կայ, ընդ մէջ Սևանայ և Կուրայ, և ձգի ընդ հարաւ ցՃէկիր գետ, որով անջրպետի յԱյրումայ և 'ի Գանձակայ ։ Ի լերանց որ յարևելից Սևանայ հոսեն 'ի Կուր՝ 'ի գաւառի աստ՝ Հասանսու, Թովուս-սու, Մըրղըզ-սու, Զակէամ-սու, և այլն. և Թուրք հակառակ այլոցն հոսանաց ընդ հիւսիս իջեալ՝ խառնի յԱղստև ։ Ի հնումն արևմտեան կողմն գաւառիս մասն էր Արցախոյ՝ ԿՈՂԹ գաւառ նորին, Թերևս և ԲԵՐԴԱՁՈՐ կամ ԲԵՐՁՈՐ, իսկ արևելեանն մասն Ուտիոյ՝ ԳԱՐԴՄԱՆ գաւառ. և 'ի բնակիչսն գտանին ցարդ Ուտիացիք կամ Աղուանք սեփական լեզուաւ, զոր և Ուտիք կոչեն, յորոց են եւ ոմանք յայնկոյս Կուրայ 'ի բնիկ Աղուանս ։ Ի միջին գարս որպէս և ցարդ՝ յայլ նոր վիճակս արոհեալ է գաւառս, այսինքն են՝ ՄԻԱՓՈՐ, ՑԱԻՈՒՇ և ՁԱԿԱՄ, և միանգամայն ՍԵԻՈՐԴԵԱՑ ԱՇԽԱՐՀ կամ ՁՈՐ կոչեցեալ, յորս բնակեն Թաթարք և Հայք ։ — Ի միջի Աղստև և Հասան գետոց նշանաւոր գետոյք են Աղթամ Վէրէն 40 հայ տամբք, Քէրվանսէրայ 70 տամբք, Հասանքալա կամ Հասանսու, և այլն. և 'ի հնոց տեղեաց աստ Թուին լինել Հինն Գէթին (159), և բերդն Ցէրօնակեան ուր նստէին Կորիկեան Թագաւորք. նոյնպէս և 'ի Նոր-Բէրդ, և մերձ սմին Վօրօգօյ Ս. Նշան մենաստան տակաւին կանգուն ։ — Ընդ մէջ Հասանայ և Մրղուզ ջրոյ որ յանուն լերինն բարձու (7), նշանաւոր տեղիք են Զօրն Տաւուշայ, յորում և ցարդ կան Թօսու Գօլէ և Թօվուզ գետոյք, որոց մին Տաւուշ Թուի՝ յորմէ էր մեծ վարդապետն Վանական ԺԳ գարու, և միւս Տօս՝ յորմէ Յովհաննէս Տուէցի ժամանակակից նորին ։ Աշոտ Երկաթ սիրէր յոյժ զկողմանքս և բազում անգամ նստէր 'ի Տաւուշ, և աստ մարտեաւ ընդ աներոյ իւրում Սահակայ, և աստ ընդ Ցլիկն Ամրամայ ։ Մերձ 'ի Տաւուշ և 'ի Զօրախան գիւղ է Խորանաշատ վանք զոր շինեաց Վանականն վարդապետ, որում հուպ էր Եղէկլօնիս բերդն. և ոչ հեռի Թուի Մածնաբէրդն, ամենեքին սոքա անուանիք 'ի ԺԱ-ԺԳ գարս, վասն բնակութեան Կորիկեանց պայազատացն Բագրատունեաց և նուաճմանն 'ի Թաթարաց ։ — Ցելից Տաւուշոյ 'ի տեղւոջ կամ յանկիւնաձև ջրապատ երկրի զոր գործեն գետքն Տաւուշ, Ինճէ և Կուր՝ բնակեն Ուտիացիք 'ի Կըռղէն գեղջ և 'ի սահմանսն ։

162. Ընդ մէջ Մըրղուզ լերին և գետոյ և Ճէկիր գետոյ կայ ՁԱԿԱՄ երկիր, որոյ հիւսիսային արևմտեան կողմն ՂԱՐԱՂՈՒ ԵՐԿԻՐ կոչի, ուր յաւուրս գերեվարութեան Շահաբասայ բնակեցան Գեղամեցիք. 'ի հնումն Թուի ՍԱԳԱՄ կոչեցեալ վիճակիս և Գարդմանայ գաւառի Ուտիոյ մասն լեալ. աստ էին ձմերոցք Թագաւորաց Հայոց 'ի ջերմահովիտս լեռնաձորոց մերձ 'ի դաշտն Աղուանից, այսինքն Կուր գետոյ, և առ եզերբ Ձակամայ կայ ցարդ Խալխանալը գիւղ, որ Թուի ունել զտեղի ԽԱՂԽԱՂ ձմեռնահանգիստ քաղաքի Թագաւորացս մերոց Արշակունեաց, ուր Անակ Պարթև յանդիման եղև Խոսրովու մեծի. և 'ի հանդիպոյ դաշտին եհար մեծն Վարդան զՊարսս 'ի գալ նոցա 'ի Դրանէն Ճորայ 'ի Հայս, առ ափամբք Լօփնաս կամ Լաբնաս գետոյ, որ Թուի մի 'ի վտակաց Ձակամայ, կամ ինքն իսկ ։

163. Գ. ԱՑՐՈՒՄ գաւառ ունի զարևմտեան հարաւային մասն նահանգիս, զլեռնակողմն, յակնից Ձակամայ և 'ի Ճէկեր գետոյ և 'ի վայր, և է ԲԵՐԴԱՁՈՐ գաւառ հնոյն Արցախայ, Թերևս մասամբ Կողթայ. 'ի միջին գարս կոչեցեալ ԾԱՐայ երկիր, և այժմ ԱՑՐՈՒՄ և ԽՕՋԽԱՐԱ կամ ՂՕՋՂԱՐԱ վիճակք. առաջին անունդ սուգարանի յոմանց Հայ-հոռոմ, կամ անուն է տոհմի Թաթարաց Այրումլու կոչեցեալ, իսկ երկրորդն Թուի Խաչէօլ յանուն լերին, յորմէ բղխէ գետ համանուն, և 'ի հարաւոյ նորա գետն Գանձակայ. իսկ 'ի հիւսիսոյ գետն Շէմքօրայ, և 'ի նորա հիւսիսոյ՝ Ճէկիր գետ ։ Առ ակամբք Շէմքօրայ, 'ի Թիկանց Սոմխից գաւառին Սիւնեաց (148) կայ Ծար աւան, զոր յիշէ Մագիստրոս ։ Ի սկիզբն ԺԴ գարու շինեցաւ 'ի սմա մենաստան հոյակապ, որ և ամայի կայ. և գարու յառաջ յաւանէ աստի Դաւիթ ոմն մոլորեցուցիչ համբաւեաց զանձն Քրիստոս, և զբազումս խարդաւանեալ, հերքեցաւ 'ի գիտնոց վարդապետաց ժամանակին ։ — Ի հիւսիսոյ Ծարայ յատոս Բօյէր Գօօրֆէն կոչեցեալ լերանց կան Շիղահանէ որ են հանք պղնձոյ ։ — Ի հարաւոյ ելից սոցա 'ի սպառուածս կոյս լերանցն ձգելոց 'ի դաշտն Կուրայ՝ կան վանորայք ինչ և տնապատք անուանիք 'ի Ե գարու

քարոզութեամբ Ս. Մեսրովպայ և քահանայութեամբ աշակերտաց նորին և պահելով 'ի նոսա նշխարաց սրբոց զոր յԵրուսաղեմէ բերին, և կոչին Խաչաֆոլ և Սպիտակ Թորգոմեանց և Մեծատան. յանապատին կանգուն կայ հին եկեղեցի գեղեցիկ զանգակատամբ, և 'ի հարաւոյ նորա մատուռն և գերեզման նահատակք 'ի նմին, զոր Ծիրանաւորն կոչեն. նոյնպէս և 'ի մենաստանին որ առ Խաչաքարակաւ՝ կայ անուանի եկեղեցի գմբեթաւոր. որոց շինութիւն կամ հիմնարկութիւն առ սկզբնաւորեալ 'ի սրբոյն Մեսրովպայ յերկրորդումն քարոզութեան իւրում զԳարդմանոյ ձորով, յորում զհեթանոսամիտ բնակիչսն իշխանաւ նոցին Խուրսաւ էած յուղղութիւն. յիշատակք նորա և աշակերտաց նորին գաւառին և 'ի հարաւոյ կողմանցս 'ի Չլբերդ գաւառի (176): Մերձ սոցին ամբարանոյ Հշլաֆէրէ? լեառն:

164. Գեօղք 'ի կողմանքս նշանաւորին Գանոց, Կէրանց, Շաթախ, Կէնիֆէրէ, Գաճան, և այլն: Ցելից սոցա ընդ մէջ Շէմքոր և Խոչաքար գետոց կան նշանաւոր աւերք առ Կիւլամբէր և Նիւխոր? գիւղովք և Քիւլ-վիւլիւ լերամբ. և են, Հասանկալէն աւերակ անապատ Կուսանաց, և Դոանոյ անապատ, ուր Մխիթար Գոշ գրեաց զԳիրս Դատաստանաց, և Չարէք բերդ և Սնապատ, բերդն նոյն թուի ընդ Մամուռ բերդի զոր նորոգեաց մի 'ի Կանկամանեանցն յԺԻ (165) դարու և շինեաց մենաստան մեծ, որ և ցարդ չէն կայ: Իսկ յարեւմտից հարաւոյ սոցա՝ աւերակք Գէտաբէկ բերդի, անուանի յԺԳ դարու. — Ցանջաքարախ անապատ, անուանի 'ի Ժ դարէ. և ՓԱՌԻՍՈՍ աւեր քաղաքատեղի և վանք, երբեմն աթոռ իշխանաց Փոքր Սիւնեաց, յորմէ թուի և անուն ՓԱՌՆԷՍ գաւառի Արցախոյ:

165. Դ. ԵՂԻՍԱԲԵԹՈՒՊՕԼ գաւառ կայ յելից Այրումայ, յինքն փակելով զԿուր յիւրոց ելից. 'ի հնումն ԳԱՐԴՄԱՆ գաւառի Ուտիոյ վիճակ էր, և է երկիր դաշտավայր, ջերմ և բարեբեր. անուանի վասն մեծի քաղաքին Գանձակայ, որ և մայրաքաղաք Աղուանից եղև 'ի միջին դարս. 'ի սմա խաղան 'ի Կուր գետքն Ճէլէր, Շէմքոր, Կէնճէ և Գուրակ կամ Կորակ ըստ մասին. և բաժանի 'ի վիճակս համանունս գետոցն: Ի ՃԱԿԷՐ՝ որ 'ի հիւսիսոյ ամենեցուն կայ, նշանաւոր գեօղք են Եէրմուշլու, Չարփակլու, Գարամ և Բարամ, որում մերձ ուխտն Մինասայ ճգնաւորի, և լեառն Գոանոխէր կոչեցեալ, յորում Սարաչէն հանդիպումք բնակչաց գեղջն Գոանոխկերի. և քարահատք յեռանի: Մերձ նմին են և Ծուղլու վանք և Անապատ: — Առ Շամքոր գետով կայ Այրում գեօղ 'ի հիւսիսոյ, և 'ի հարաւոյ նորա 'ի ձախմէ գետոյն Շէմքոր գեօղ, առ աւերակօք ՇԷՄՔՕՐ կամ ՇԱՄԽՈՐ քաղաքի, զոր 'ի Զ դարու շինեալ ասէ ոմն 'ի մերոց պատմչաց, և այլք աւանդեն 'ի Կանկամանեան տոհմէ Հայոց շինեալ, որք թուին լինել Մամիգոնեանք (Մամ և Կոն), և որոց գաստակերտք բազումք են 'ի կողմանս յայսոսիկ, թէպէտ և ոչ հինք. 'ի ԺԱ դարու Պարսք տիրացան քաղաքիս, և յետ բազում անցից աւերեցաւ 'ի սկիզբն անցելոյ դարու. Նշանաւոր 'ի շինուածս քաղաքին էր Սիւնն կամ Աշտարակ Շէմքորոյ աղիւսակերտ և գեղեցիկ 200' 'ի բարձրութիւն բերելով նմանութիւն զաշտարակին Անւոյ և զԱյդ-մինարայից Էրզրումոյ, որ 'ի սասանութենէ կործանեցաւ յամին 1840: Յաւերակս քաղաքին երևեն կամուրջք և կարաւանատունք: Ի հարաւոյ Շէմքորոյ շինեալ էր գաղթականաց Գերմանացւոց զԱննէնֆէլտ գեօղ յամին 1818, այլ առ հինի Թաթարաց և օդոյն անբարեխառնութեան՝ լքեալ մեկնեցան 'ի Հելէնէնդորֆ Գանձակայ (167):

166. Զարևելեան խաղիւք Խոչաքարայ մերձ 'ի Կուր ձգի այժմեան ԳԱՐԴՄԱՆ վիճակ, յանուն գաւառին մեծի, յորմէ երբեմն բոլոր իսկ Ուտիացիք և Աղուանք Գարդմանեցիք կոչէին, և Թագաւորն Աղուանից՝ Տէր Գարդմանոյ. առ գետեզերբն կայ ցարդ Գարդման կամ Քըրխմանլի աւան, որոյ բերդ շինեցաւ յԷ դարու, որպէս թուի մերձ ՄԻՀՐ աւանի, սակաւուք յառաջ շինելոյ. յամին 633 Ջևանշիր Աղուանից իշխան հանդոյց յիւրաշէնն մեծի եկեղեցւոջ Գարդմանոյ զմասն կենարար փայտին զընկալեալն 'ի Հերակլեայ կայսերէ. Բուղա ոստիկան յամին 854 ըմբռնեաց 'ի սմա զԿարիճ զիշխան երկրին, և Աշոտ Երկաթ յինքն դրաւեաց զայն. ապա Պարսք, Վիրք և Թաթարք տիրացան. այժմ աւեր է տեղին և որ շուրջ զնովաւ. յեկեղեցւոջն մեծի ասին լինել գերեզմանք Կանկամանեանց, և 'ի նոցանէ իսկ շինեալ տունն և զԳարդման: Նշանաւորք 'ի վիճակիս ըստ մտից կուսէ են Կոնխոջան, Աէնորթլիւ վանք, Շահմըրզանոց-ջուր որ է Շահմրզայ-ջուր յիշատակեալ յԺԲ դարու յորում ժամանակի յիշի և Բէլը Շահմրզայ՝ 'ի նահանգիս յայսմ:

167. Բնիկ վիճակն Գանձակայ՝ որ ԿԷՆՃԷ կամ Գանջայ կոչի յայլազգեաց, յելից հարաւոյ այսոցն կայ, ըստ հարաւոյ գետոյն իւրոյ ցԿուրակ գետ. և է սա բնավայր ՇԱԿԱՇԷՆ գաւառի Ուտիոյ, որ այսպէս կոչեցաւ յանուն Շակէ ազգի կամ Սակաց Սկիւթացւոց տապաստակելոց 'ի Հայս յԷ դարու յառաջ քան զՔրիստոս. և զանուն նոցա ցարդ համարի կրել Շէքի գաւառ յայնկոյս Կուրայ յարևելս Գանձակայ (184): Քաղաքն ԳԱՆՁԱԿ որ ոչ յիշատակի առ նախնի մատենագիրս և 'ի բազմաց բազում կարծիս բերէ զհիմնադրէն, 'ի մերոյս Աղուանից պատմչէ առ՝ յԱլթայ կամ 'ի Վլթայ ումեմնէ ոստիկանէ շինեալ յամին 846 կամ 848, և լեալ մայրաքաղաք Աղուանից յետ Պարտաւայ. յետ Ժ դարու Փաղլուն ամիրայ տիրեաց կողմանց Գանձակայ և յամին 1088 Պուղան ոմն հրամանաւ Մէլիքշահի. յամին 1140 մեծաւ սասանութեամբ երկրի կործանեցաւ քաղաքն, և կորոյս անձինս և գանձս բազում, այլ ընդ հուպ վերականգնեալ՝ աթոռ եղև ամիրայից կամ կուսակալաց Պարսից, և բարգաւաճէր յոյժ յԺԲ և յԺԳ դարս, յորում Թաթարք աւերեցին զայն. այլ դարձեալ շինեալ՝ միշտ անուանի և բարգաւաճ եկաց ցաւուրս Շահաբասայ, որ առ քինու Օսմանեանց ետ քակել զքաղաքն և շինել զՆորն Գանջայ որ է Կէնճէ՝ 'ի ձախմէ գետոյն 'ի հարաւոյ հնոյն, որոյ միայն փլածք եւթ, և մզկիթ մի կանգուն՝ որ յառաջն եկեղեցի էր և 'ի նմա գերեզման երանելւոյ Նահատակին Խոսրովայ պատանւոյ: Բա-

զօամ խմասանոյ Պարսից և Հայոց խանձարուրք լեալ էր անդէն, յորոց մի և վարդապետան Մխիթար Գօշ։ Զայժմու քաղաքս շինեալ յետ անուն Աղստափայ կոչեաց, այլ հին անուանքն ըստ մեզ. Լեռնցիք յաւուր մահմեդցին գյաղաղաքս յամին 1721, յետոյ Օսմանեանք նուաճեցին, զամ մի և Վիւրք. այլ յետոյ անցելոյ գարուն ճանուս խան՝ մահմեդաց զելերգն Ռուսաց, առաւ և 'ի Նոցանէ ձողադրել կանխեցաւ՝ յամին 1804 պաշարեցաւ 'ի Նմին և առաւ. և Ռուսաց տիրացեալ յ'3 գեկտեմբեր ամսոյ՝ յաւուր տօնի Ս. Եղիսաբեթի՝ 'ի նորին անուն և 'ի կայսրուհւոյն իւրեանց՝ կոչեցին ԵՂԻՍԱԲԵԹՈՒՊՈԼԻՍ, որով ճանաչի արդ. համօրէն նահանգն. և աթոռ կուսակալի հաստատեցաւ 'ի նմա։ Նշանաւորք 'ի կանձայ շէնք՝ են բերդն 'ի բարձու 300 ոտից, ապարանք կուսակալին որ է գղեակն ճաւատոյ, կամուրջք որ 'ի հինգ թաղս արոհեն գետոյն զքաղաքն, վաճառանոց մեծ, և ձեռնկերք բարձրաբերձ սօսեաց. մզկիթն Շահաբասայ, մեծ եկեղեցին Հայոց շինեալ յամին 1833. և գործարանք մետաքսի 250իւ չափ։ Բնակիչք 20.000 որոց երրորդ մասն Հայ է։ — Ի հարաւոյ Գանձակայ յաջմէ գետոյն իբր 2 և կէս ժամու հեռի կայ Հելենենդորֆ (Հելլենեայ գիւղ) աւան Գերմանական գաղթականի 650 ոգւոց, որք պարապին 'ի մշակութեան. Մերձ յաւանն կան աւերակք հնոյ քաղաքի և հողաբլուրք գանձանոց մեծաշէնք, որոց ոչ ծանուցան շինողք և թաղեալք։ — Ցելից հարաւոյ Գանձակայ յեզր Կուրակայ կայ Գոռոլ–լու աւան, 'ի վերայ աղբերի ճանապարհին Գանձակայ և Շուշեայ. և 'ի հիւսիսոյ ելից հեռագոյն 'ի վերայ նորին ճանապարհի՝ Քոբլուլու–լու, ուրանօր Կուրան գետ ճեւանցի գաւառի (179) խառնի ընդ Կուրակայ։

## Դ. ԳԱՐԱՊԱՂ կամ ՇՈՒՇԻ

168. Նահանգն Գարապաղ 'ի հիւսիսոյ կողմանէ սահման ունի զԳանձակ, յելից զԿուր, 'ի հարաւոյ զԵրասխ, 'ի մտից զՀայկական նահանգն յՕրտուպատայ ցՍոթս. մեծ կէս երկրին՝ որ է արեւմտեանն՝ լեռնակոհակ է և անտառախիտ և այգեւէտ, վասն այնորիկ և ԳԱՐԱՊԱՂ կոչեցաւ կամ Գարա–պաղլըղ. արեւելեանն մասն՝ դաշտավայր տափարակ ընդ մէջ Կուրայ և Երասխայ, և է առ ՈՒՏԻ աշխարհ հին. իսկ արեւմտեանն և բուն Գարապաղ՝ կէս ԱՐՑԱԽ աշխարհ է առ Ուտեաւ, և կէս ՍԻՒՆԻՔ առ Հայկական նահանգաւն։ Արցախականն երկիր 'ի միջին գաւառաց և այսր ԽԱՉԷՆՔ կոչի, որ և ՓՈՔՐ ՍԻՒՆԻՔ. կոչի և ԱՌԱՆ 'ի Պարսից, որպէս և 'ի Հայոց 'ի միջին դարս, յանուն Առանայ Սիսակեանց, զոր Վաղարշակ արքայ կողմնակալ կարգեաց վայրացս, և 'ի զարմից նորա սերեցան թագաւորք Աղուանից և իշխանք ցամս իբրև հազար, վասն որոյ և Առանշահիկք կոչեցին։ — Գետք ոչ սակաւք իջանեն 'ի լերանցն, յորս հզօրագոյն է օժանդակն Կուրայ Թարթառ կամ Թէրթէր որ է Տրդու ըստ Նախնեաց. 'ի հիւսիսոյ նորա Կուրան և այլ գետակք. 'ի հարաւոյ՝ Գէօք խաչէնոյ և Գարգառ կամ Կարկառ. և սմանք յԵրասխ իջանեն 'ի հարաւ կոյս, որպէս Հագարի կամ Ակերա ընդ մէջ Սիւնեաց և Խաչենոյ, յինքն ընկալեալ զվտակս բազումս. և 'ի մտից նորա Զաւղըդուր, յելից՝ Քէնտիլան։ — Ի վեց գաւառս բաժանի արդ նահանգս, որք են Ջանկազօր, Մեղրի, Չլաբերդ, Վարանդին, Ճէվանշիր և Քէպէլէրլին, որք ընդ միոյ կուսակալի վարչութեամբ են, հաստատելոյ 'ի Շուշի քաղաքի, յորոյ անուն և նահանգն համօրէն կոչի երբեմն. իսկ ըստ զինուորական արոհմանց ընդ Շէմախեայ տեսչութեամբ է։ Ոչ ինչ աւելի քան զ'100,000 բնակեն 'ի նահանգիս, որոց չորրորդ մասն Հայք, կամ աւելի ևս։

169. Ա. ՋԱՆԿԱԶՕՐ գաւառ 'ի մտից հիւսիսոյ նահանգին կայ յարեւելից Տարալաղըղայ և 'ի հարաւոյ Սոթից և Այրումայ, 'ի մտից վտակաց Թարթառայ, Պարկուշատայ և Հագարեայ, և 'ի հիւսիսոյ Մեղրւոյ. և ունի զհին գաւառսն ԱՂԱՀԷՋ և ՀԱԲԱՆԴ, մասամբք այլոց ոմանց. որք 'ի միջին դարս կոչեցան ՔԱՇԱԹԱՂ և ՀԱԲԱՆԴ կամ ՀԱՆԲԱՑ. յորս աւելի քան զհարիւր գեօղս յիշէ Ստեփաննոս Ուռպելեան հարկատու թեմի Սիւնեաց աթոռոյն. այժմ հազիւ հարիւր գեօղք 'ի բովանդակ թեմին նշանակին և 16 'ի նոցանէ կալուածք են աթոռոյն. իսկ անուանք վիճակաց գաւառիս որպէս և մերձակայիցն ըստ դարս դարս փոփոխեալ են ընդ սահմանացն ըստ փոփոխել տէրութեանց նոցին. և չեն մեզ քաջածանօթ այժմու հանգամանքն։ Ցարեւմտից գաւառիս բղխէ Թարթառ գետ, և 'ի հարաւոյ կուսէ Պաղըր–լու որ առնու Բարկուշատայ Գէօփ կոչի և խառնի 'ի Հագարու գետ մերձ յԵրասխ. Հուպ յակունս նորա կայ Պաղարէնք գեօղ, յորոյ ելից ամբառնայ Գըլըշ կամ Կիւղէլ լեառն բարձր 11000', և 'ի հարաւոյ նորա Քիլիսէլի 9740'. յելից սոցա յայլոց լերանց իջանեն վտակք Հագարու գետոյ, յորոց մին Քաղաբաղ կոչի և առ նմին կան Ծիծեռնավանք։

170. Գլխաւոր տեղի գաւառիս է աւանն ԳՈՐԻՍ՝ Կիւրէու կոչեցեալ այժմիկ, 'ի հարաւակողմն առ վտակի միում Պարկուշատայ 'ի խորահովտի 3900' բարձու, 200 տամբք և ամրոցաւ. յելից նորա կայ Խնձորեսք անուանի 'ի պատերազմունս Ղափանեցւոց 'ի սկիզբն անցելոյ դարու քաջութեամբ բնակչացն արանց և կանանց. և Կամբիջոր կամ Կանաչոր 'ի հիւսիսոյ նորա 75 տամբք և սաքաշէն եկեղեցեաւ մեծաւ. Քարահունջ 'ի հարաւոյ Խնձորեսքոյ, 'ի զօժայռից, յորոց բարձանց իջանեն ջուրք. 'ի հիւսիսոյ և 'ի մտից Տեղ, Խողուտ, Խուշավար, Խոտ, և այլն։ Սիսիան և Գոռնասոփ կամ Բանակոթ յարեւելից լերանց Նախիջեւանու և Օրտուպատայ, և յարեւմտից գետոյն Որոտան, որ նոյն իսկ է Պարկուշատ. 'ի Բանակոթ անուանի է Թանկեան տոհմ մելիքաց Հայոց, որոց առ մեզ շինեալ է կամուրջն 'ի վերայ Պաղար–լու գետոյ և կարաւանատունն 'ի գլուխ Արփայի լերին որ տանի 'ի Նախիջեւան։ Հանդէպ Բանակոթայ յայն կողմն գետոյն կայ Գորաթլէք գեօղ։

171. Բ. ՄԵՂՐԻ 'ի հարաւոյ Ջանկազօրայ կայ, ընդ մէջ Օրտուպատայ, Երասխայ և Հագարեայ. և

միջասահմանին Օրտուպատայ և Մեղրեայ՝ զեռայ գետն ընդ տապարս և ընդ խոխոմս, տեսարանս յոյժ զմայլեցուցիչս աչաց և պակուցանողս գործելով, և ահագին գանչիւն ականջաց. նոյն կերպարանք յանդիման լինին և անդր քան զՄեղրի, այլ չափաւորք և նուազք, մանաւանդ ջրվէժք. այս է տեղին "ուր գետն Երասխ հատեալ զքարանձաւս լերանց՝ „ անցանէ ընդ խոխոմս ձիգս և նեղս, ահագին գըգըռչմամբ իջանէ 'ի դաշտն „ (Մուզանեայ), ըստ Խորենացւոյն ։ Բարեբեր և այգեւէտ են վիճակքն, և գեօղք չէնք 'ի նմին Աստուրս Թաթարաբնակ, Աւփողոր հայաբնակ, որոյ է մօտակայ Ջրաբաշխի մեծ և բարձր և միակամար 'ի վերայ խորահովտի միոյ. Նուղտի Թաթարաբնակ՝ 'ի բարեբեր խորահովտի։ Ցեղից սորա իջանէ Պաւուլ գետակ յԵրասխ առ Որովլ Ղանատուն աւան. և 'ի նորա եզեր Զաւլընփուր, որում մերձ կայ Թիւէ կամ Տեւլիթուլ գեօղ. իսկ ընդ մէջ Զավինգուրայ և Պերկուշատայ կայ Խածախան գեօղ և առ նմին աւերակ գիւղի խուլիճան կոչեցեալ. բազում գեօղք չէնք գոն 'ի գեղեցիկ հովտին Պերկուշատայ, և Հաքարու. յորս տակաւին տանուտերական պայազատութեամբ առաջնորդեն մելիքք Թաթարք և Հայք՝ սերունդք նախնի Սիսականաց, որք յամրութիւն երկրին իւրեանց և 'ի քաջութիւն վստահացեալ՝ հակեցին ընդերկար 'ի վերայ հայրենի ազատութեան. և մարթ է զբովանդակ երկիրս այս 'ի Գեղաքունեաց ցԵրասխ ընդ հարաւ, և 'ի դաշտէն Այրարատայ ցմեծ դաշտն Կուրայ կամ Ուտիոյ՝ կոչել Կովկաս Հայաստանեայց, կամ Ստորին Կովկաս. առաւելեալ քան զբարձրն բնակչացն բարգաւաճ բարուք։

174. Գ. ՋԼԱԲԵՐԴ գաւառ որ է ՃԱՌԱԲԵՐԴ ըստ նախնեաց և ՁԱՐԱԲԵՐԴ ըստ յետնոց, կայ 'ի հարաւոյ Այրումայ, յեզր Ջանկազորայ, Խաչէն և Գարգառ գետովք անջրպետի 'ի Վառանդենայ 'ի հարաւոյ, և յեզր ունի զՃեւանշիր գաւառ կամ զդաշտն Աղուանից։ Եւ է սա վերին մասն ԽԱՉԷՆ աշխարհի, որպէս կոչէր 'ի միջին դարս և այժմ, կամ ՓՈՔՐ ՍԻՒՆԻՔ, և ըստ հնոց նախնեաց միջին մասն Արցախ աշխարհի, վասն որոյ և ՄԻՋՆԱՐՑԱԽ կոչէր, և գաւառք 'ի նմա էին ՄԵԾԿՈՒՆԻՔ կամ Մեծ-կուանք որ և Մեծ-կողմանք, ՄԵԾԻՐԱՆՔ կամ Մեծ-իրանք, և ՄԻՒՍ-ՀԱԲԱՆԴ։ Գետն Թարթառ յարեւմտից յարեւելս անցանէ ընդ գաւառս այս՝ հատեալ յերկուս. հիւսիսայինն մասն բուն Ջլաբերդն է կամ ՎԵՐԻՆ ԽԱՉԷՆ, հարաւայինն ԿԻՒԼԻՍՏԱՆ կոչի այժմ, և է ՆԵՐՔԻՆ ԽԱՉԷՆ միջին դարուց. յորում ժամանակի և միջնակողմն առ Թարթառաւ ԶՂԱԽ կոչիւր. գետն Խաչենոյ խառնի ընդ մէջ Թարթառայ և Գարգառայ։ Հանդոյն արեւմտեայ գաւառաց Գարապաղու լեռնախիտ է և այս գաւառ, և 'ի հիւսիսային սահմանածայրսն մերձ 'ի Խոշխարա՝ ամբառնայ բարձրագոյն կատար չափեալ 'ի Գարապաղ՝ Մուրով կամ Մռաւ լեառն 11540'. ապաւէնք էին վտանգելոց 'ի ժամանակս պատերազմաց լերինքս անդստին յաւուրց Վարդանանց, որպէս ցուցանեն պատմիչք, և առ Բագրատունեօք և զկնի։ — Ի հիւսիսակողմն արեւելից գաւառիս առ ստորոտովք Մռաւայ ձգի փոքր վիճակն ԻԿԻՐՄԻՏԷՕՐԹ, այսինքն է Քսանեւչորս, սակս համաթիւ գիւղորայիցն, որք կոչին և յանուն գլխաւորին իւրեանց Չէյլօշ կամ Չէյլօշլու առ իւրանուն վտակաւ. Կէօլխարան բերդ 'ի հիւսիսոյ Թարթառայ. Պուլանըք և Գուրտուլուք գեօղք և մենաստանք։ Մերձ 'ի Չէյվայ և 'ի Մռաւ կայ Հօտէկ գիւղ, որ է Ռոտէկանն հին, ուր հանգուցաւ գլուխ Ս. Եղիշեայ առաքելոյ, և ապա փոխեցաւ 'ի մերձակայ վանսն Ներս-Միհր կոչեցեալ նախ և ապա Ջրվշտիկ մինչև ցայժմ. այժմու եկեղեցին նոր շինեալ է յամին 1279-85 յիշխանաց և յեպիսկոպոսաց Խաչենու. զհինն շինեալ էր Վաչագանայ Աղուանից արքայի 'ի վերջ կոյս Ե դարու. զի յետ բառնալոյ թագաւորութեանն Արշակունեաց՝ Աղուանք տիրէին կողմանց Խաչենոյ։ Մերձ 'ի սա կան աւերակք Մոյբոտաղաւ կոչեցեալ տեղւոյ. և վանքն Եղիշէ Մանկանց շինեալ յամին 1664։

175. Ցարեւելից վանացս առ Թարթառաւ յահեկէ կայ անառիկ ամրոցն Ջէբէրդ կամ ՃԱՌԱԲԵՐԴ որ և Ջէրմուկ կոչի, ապաւէն իշխանացն Խաչենոյ։ — Անուանի է և Հօպէրդ կամ Հայբէրդ բերդ 'ի մօտոյ կուսէ առ նովին Թարթառաւ, ուր յԺԲ դարու իշխէին Վախտանգեան իշխանք։ Միւս ևս բերդ անուանի էր Հանդաբէրդ 'ի ՎԱՑԿՈՒՆԻՍ Արցախոյ, յարեւմուտս հիւսիսոյ մերձ սահմանաց Ծար աւանի Գեղարքունեաց։ Եւ քան զսոսա անուանի էր Խաչենոյ Բէրդն որ Թուխ առ համանուն գետովն լինել, և սա ապաւէն իշխանացն Ներքին Խաչենոյ, որ և ԽԱՉԵՆԱՁՈՐ. որոց պայազատութիւն յիշի յԺԲ դարէ ցԺԵ դար, յորոյ սկզբան Ջալալբէկ իշխան նեղեալ յՕսմանեանց հասուած 'ի Պարս գնաց. 'ի նոյին իշխանաղանց Ջալալեանց կացին և կաթուղիկոսք Աղուանից ցմեր ժամանակս, որոց յետին աթոռ եղև ԳԱՆՁԱՍԱՐ, որ 'ի ստորոտս լերին համանուան (գանձուց կամ բոլորց սար) կայ, 'ի հիւսիսային ափն Խաչէն գետոյ. մենաստանն անուանի յիշի 'ի Ժ դարէ. բայց նոր շինութեամբք պայծառացաւ յԺԳ դարու 'ի ձեռն Ջալալդօլայ իշխանի մեծի, որոյ և գեղեցիկ արձան յիշատակի կայ յեկեղեցւոջն մեծի, ուր եդ զգլուխ Ս. Կարապետին և զայլ նշխարս սուրբս, զորս Եւստաթեայ աշակերտին Թադէի և Ս. Լուսաւորչին և Թոռին նորա Գրիգորիսի բերեալ էր, որոց և աթոռ ճանաչի տեղիս. և ինքն և նախնիք իւր և սերունդք և բազում կաթուղիկոսք Աղուանից անդ թաղեալ կան, որոց յոլովից մնան և արձանագիրք 'ի վանսն ցԺԶ դար. յամին 1657 նորոգեցաւ ուխտս յԱբովայ մելիքէ ԹԱԼԻՇայ (որ ընդ մէջ Թարթառ և Թուրուս գետոց յեզեր Կիւլիստանու), և անընդմէջ յաջորդութեամբ նստան 'ի նմա կաթուղիկոսունք Աղուանից ցամն 1815, յորում բարձաւ անուն իշխանութեանն և կոչեցաւ մետրապօլտութիւն. այլ ցեղ կաթողիկոսացն 'ի Ջալալեան տոհմէ է. որպէս և այժմու բարեպաշտ մետրապօլիտն, Տէր Բաղդասար Հասան-Ջալալեան։ — Հանդէպ Գանձասարայ առ գետովն 'ի բարձու քարակտուր լերին կայ բերդն Խօխան կամ Խաւախան, աւերեալ 'ի Թաթարաց։

176. Ի մօտոյ հարաւոյ Գանձասարայ կայ անուանի աւանն ԱՄԱՐԱՍ 'ի Հաթերք գաւառի Արցախոյ, ուր նախ Լուսաւորիչն հիմն արկ եկեղեցւոյ և Գրիգորիս Մծուշէն կանգնեաց զայն. և ննջէ անդ հանգուցեալ առ նշխարօք սրբոցն Զաքարիայ և Պանտալէոնի՝ զորս բերեալն էր 'ի Հայոց. և առ Վաչագանաւ յայտնեցան նշխարքն այն և իւրքն. և աթոռ եպիսկոպոսի հաստատեցաւ անդ, ուր նստան երբեմն և կաթուղիկոսք. յԹ դարու 'ի Պարսից աւերեցաւ, և յելս ԺԳ դարու գաւազանն Գրիգորիսի բարձաւ անտի և տարեցաւ 'ի Կոստանդնուպօլիս. առ մեօք նորոգեցաւ հին եկեղեցին 'ի մէջ Ղահնազարայ: — Միւս ևս անուանի ուխտ կայ սակաւուք հեռի 'ի Գանձասարայ յաջմէ Խաչենոյ Ս. Յակոբ վանք, որ է Մեծիրանից վանքն, յեզից Գըլուխ-Կեօլ լերին, յանուն Մծբնացւոյն, որոյ և աջ պահի 'ի անդ. կանգուն կան երեք եկեղեցիք նորոգեալք յամին 1691, այլ հնոյն թուի կանգնեալ 'ի կէս Ի դարու. իսկ եպիսկոպոս Մեծիրանից յիշի 'ի Զ դարէ. չէն է միաբանութեամբ այս և նոր նորոգեալ առ մեօք: Հանդէպ վանացս ամրանայ հաւախաղաց բերդ 'ի վերի բարձու, Ամգուղան-գալէսի կոչեցեալ այժմ. զոր առեալ թաթարաց յԺԳ դարու՝ կոտորեցին անգթութեամբ զապաւինեալսն 'ի նա: — Ի հարաւոյ Խաչենն գետոյ կան գեօղքս Տօղլուք, Կիւլէպտուխ, Բառուխ, և Ղահրամանլու աւան 'ի վերայ արքունի ճանապարհին Գանձակայ և Շուշւոյ, ուր Նատըր շահ կառոյց ամրոց, և Փանախան յաւել շինուածս. առ երի ամրանայ լեառն բաւաբեր և աղբերք 'ի նմա՝ օրինակ 'ի Նատըրշահէ. և 'ի գագաթանն հայ եկեղեցւոյ մնացուածք, յորոց միոյ այս ունի թուական ՉԺԲ (1263) և խաչարձան կանգնեալ 'ի Ղահանշահէ որդւոյ Աշոտոյ. յորոց երկու նշանաւոր աղի լինել 'ի հնումն, և կարծի ՏԻԳՐԱՆԱԿԵՐՏՆ կամ Տիգրանակերտ աւան: — Ի սորա 'ի վերայ ճանապարհին կայ Աւէնարան աւան յեզր Գարգարայ և ամրոց հզօր կառուցեալ 'ի Փանա-խանէ: Ի մօտոյ նորա կայ Մէխտի—Բէկի գեօղ, 'ի հարաւոյ Խանքէնտ, Խալֆալու մերձ 'ի Շուշի: — Ա՛ռ ափամբք Թարթառայ՝ որ է Տրտու կամ Տրտուական գետ՝ դադարեաց առ վայր մի Ս. Մեսրովբ և յերկարագոյնս աշակերտք նորա, կեալ 'ի հիւսիսոյ կողմանէ 'ի Մեծկուենեաց գաւառի մերձ յԱԿԱՆԱ քաղաք, 'ի մայրենար մենարանս, ուր և նահատակեցանն 'ի զօրացն Հոնաց, հանդերձ Թադէոսիւ Ուտիացի ոփինաւ, որոց մարմինք և հանդերձք սփռեալ ընդ բլուրն՝ 'ի գիշերի լուսեղափայլ ծագեցան, վասն որոյ կոչեցաւ տեղին Ասփեղ-բլուր. յորմէ աքանչացեալ զօրավարին Հոնաց՝ հաւատաց 'ի Քրիստոս և մկրտեցաւ իւրովքն. և 'ի նմին տեղւոջ կատարեցաւ նահատակութեամբ յիւրոց Թագաւորէն, որպէս և որդիք նորա 'ի Դիզափայտ լերին (178): Իսկ կէսք յաշակերտացն գաղթեցին 'ի հարաւոյ Տրտուայ 'ի Զղուխ կոչեցեալ հովիտ՝ գեաւղի համանուան ընդ միջ անցանելով, 'ի ՌՈՏՊԱՑԵԱՆ գաւառի միջասահման ընդ Մեծ-կողմանս և Մեծ-Իրանս, և անդ թաքուցին զնշխարս սուրբս՝ զոր յԵրուսաղեմայ բերեալ էին, յահէ ասպատակին հիւսիսոյ. և յետ ժամանակաց յայտնեցան նշխարքն և մարմինք նոցա յաւուրս Զուանշէրի տեառն Աղուանից յԷ դարու:



Vieille Eglise près de Schouscha.

177. ՇՈՒՇԻ կամ ՇՈՒՇԱ քաղաք յարևելեան հարաւային սահմանածայր գաւառին կայ, յահէկէ Գարգարայ, 'ի տարահարթի բարձու 4000', յանմատոյց վայրի, ամրացեալ և աշտարակօք և պարսպօք. զորս կառոյց Փանա խան Թուրքման յամին 1789, փոխեալ այսր զաթոռ իւր 'ի Շահպուլաղէ, նուաճելով զԳարաբաղ, և կոչեաց զբերդն յիւր անուն Փանապատ. այլ 'ի փոխադրիլ այսր բնակչաց մերձակայ Շուշի գեղջ, զայս անուն ընկալաւ. առ որդւովն նորա Իբրահիմաւ՝ շահն Պարսից երիցս պաշարեալ՝ ուր ուրեմն կառ զքաղաքն և բազում նախճիրս գործեաց. յամին 1805 Իբրահիմ եմուտ ընդ պաշտպանութեամբ Ռուսաց. այլ 'ի կամիլ նորա վտարանջել, և յետ նորա՝ որդւոյ իւրոյ, զրկեցան յիշխանութենէ և յամին 1822 Շուշի և Գարաբաղ մարզ կացին Ռուսաց: Քաղաքն ամուր է այլ գծուծ տեսլեամբ և անձուկ և ջրապակաս. չորք եկեղեցիք են Հայոց գաղթականաց Ագուլեցւոց և Ղազանճեցոց, և տպագրատուն, և առաջնորդարան յաջորդի աթոռոյն Աղուանից, որոյ թեմք են Գարաբաղ և Շիրուան: Զուարճալի են սահմանք քաղաքին անտառախիտք և մայրուածք, որպէս և քաղաքին տեսարան է 'ի վերայ դաշտին Աղուանից և լերանց Կովկասու և Արցախոյ: Բնակիչք 7.000, Հայ և Թաթար:

178. Դ. ՎԱՐԱՆԴԻՆ գաւառ յերից կողմանց ունի զգետսն Գարգար, Հաքար և զԵրասխ, և յելից զդաշտն Աղուանից կամ զՔէպէրլին գաւառ. հիւսիսակողմն և արևմտեանն լեռնախիտ որպէս ըզՉլբերդ, դաշտային ըստ հարաւոյ և ըստ արևելից.

և ունի գետ գլխաւոր զՔէնֆիլան, և 'ի յաջմէ նորա զԳուրբուլայ, և գետակս օժանդակս Երասխայ. և է տարբին մասն Արցախ աշխարհի, յորում Թուէին լինել գաւառքն հին ԳԱՐԴՄԱՆՔ, ԳԻՍՆՔ և ՀԱՐՃԼԱՆՔ, և ՄՈՒԽԱՆՔ 'ի հարաւոյ, յորմէ Թերևս ծագեալ Մուղանն անուան, որով կոչի դաշտն մեծ կամ անապատն 'ի հարաւոյ և յեզերս Երասխայ։ Ի միջին դարս կոչէր երկիրս ԴԻԶԱ կամ ԴԻԶԱՓԱՅՏ որ և ԴԻԶԱԿ և ՎԱՌՈՆԴԱ. յորս էին և 'ի յետին դարս մելիքք հայկազունք, և են իսկ ցարդ։ Բայց ոչ են մեզ քաջածանօթք այժմեան հանգամանք գաւառիս, յորում 'ի հնումն նշանաւոր էր Դիզափայտ լեառն, Թերևս Ջխուրբէն կոչեցեալ այժմ, յոր փախստեայ անկեալ որդւոց Սանատրկոյ Մաղթաց արքայի հաւատացելոց 'ի Քրիստոս քարոզութեամբ Սրբոյն Գրիգորիսի, հանդերձ 3870 արամբք, պաշարեալք 'ի բռնաւոր հօրէն' որ խարոյկ մեծ արկ զնոքօք և բոցակեզեաց, կատարեցան նահատակութեամբ, և յայտնեաց անուն լերանցն. և կամ վասն կոյսակրօն անկելոց սրբոց դիականցն որպէս զփայտս դիզացելոց 'ի վերայ լերանցն. ուրանօր կատարեցան յետ դարու միոյ և որդիք Թէոփիլոսի զօրավարին հոնաց նահատակելոյն յԱստեղաբլուրն (176). յետ միոյ ևս դարու յայտնեցան նշխարք նոցա յամին 883, և յիշատակ նոցա կարգեցաւ 'ի տօնս սրբոց։ — Գլխաւոր աւան գաւառիս յեզերս Ջխարբէթ լերին և 'ի հարաւոյ Գուրբուլայի նշանակի Թուղ. և 'ի վերայ ճանապարհին որ 'ի Շուշոյ տանի 'ի Պարսս ընդ հարաւ, Գարադագլու, Ախարէ, Աէօղլան բերդ, Գարախանլը, Գարքեադաղար, Դաշքէսէն, Ճէպրայիլ' յորում մաքսարան, և յեզրն Երասխայ Խուդաֆէրին, յանուն մեծի և հռչակաւոր կամրջոյն' որ նշանակէ Աստուածաշէն 'ի պարսիկ լեզու, զի հաստակառոյց է և մեծ 12 կամարօք, և ընդ այս է երթևեկ կարաւանաց յԱտրպատական. հուպ 'ի կամուրջն կայ Առաքէլու գիւղ Հայոց, և մաքսարան եկացն 'ի Պարսից. և առ կրկին գետեզերբք Երասխայ մարտկոցք և ամրոցք յոլով։

179. Ե. Զ. ՃԻՒԱՆՇԻՐ և ՔԷՊԻՐԼԻՆ գաւառք յեզերս կան Գարադաղու, ընդ մէջ Գանձակայ, Կուրայ և Երասխայ, և դաշտագետին վայրք են ընդարձակք, որ 'ի հնումն կոչէին Դաշտ Աղուանից կամ Կուրայ, զի և այն կողմն գետոյս նման սմին հարթածաւալ երկիր է ցտաս Կովկասու լերանց. և է սա տարբին կողմն Ուտի աշխարհի, յորում և բուն գաւառն ՈՒՏԻ ԱՌԱՆՁՆԱԿ և ՏՐԴԻՐՆ ԳԱՐԳԱՐԱՑԻՈՑ, յանուն գետոյն Գարգառայ, որոց սեփական ժողովուրդն սերեցաւ յորդւոց Առանայ (168) ըստ Մովսիսի Խորենացւոյ. այլ Թուի յառաջնոց քան զնա եղելոց Սիսակեան զարմից, որ Աղուանքն կոչէին, և անգր քան զԿուր սփռեալ կային. այլ նեղեալք ապա 'ի Կովկասայնոց ազանց' վտարեցան յայսկոյս և կալան առ փոքր փոքր զերկոսին նահանգսն զՈւտի և զԱրցախ, մասամբ Փայտակարանի, և կոչեցին Աղուանից աշխարհ, որ յետոյ և Առան։ Այժմու հանգամանք գաւառացս և տրոհմունք վիճակաց և գիւղորայից Թիւք և անուանք' սակաւածանօթք են մեզ, և ոչ նշանակին չէնք անուանիք յերկրի աստ. բայց Մանաֆէլ 'ի հիւսիսակողմն առ Կուրան գետով. և Թերբէր առ Թարթառաւ։

180. Ցեղք գետոյս յահէկէ կողմանէ կայ Պէրտէ գեօղ առ աւերակօք հնոյ մայրաքաղաքին Աղուանից, այն է ՊԱՐՏԱՒ, զորոյ շինութենէ պէսպէս աւանդեն արևելեայք, և Վրացն պատմիչ ընծայէ Բարտոսի եղբօր Հայկայ. իսկ Աղուանիցն պատմիչ սաէ 'ի կէս Ե դարու հրամանաւ Պերոզի արքայի շինեալ, վասն որոյ և ՊԵՐՈԺԱՊԱՏ կամ ՊԵՐՈԶԱՊԱՏ կոչի 'ի նմանէ և յայլոց. արդ Թէ յայսմ ժամանակի և Թէ վաղագոյն շինեալ' սակայն չէ սա Պարտաւն Պաւհլաւայ' զոր Արտաշիրն Սասանեան խոստանայր Անակայ, այլ նա 'ի բուն Պայթեաց աշխարհին էր. իսկ սա մայրաքաղաք եղև Աղուանից ցԸ դար և աթոռ կաթողիկոսի, և բարգաւաճ վաճառականութեամբ, վասն որոյ և Շահաստան կոչեցաւ. յամին 768 ժողով գումարեաց 'ի սմա Սիոն կաթուղիկոս Հայոց։ Ի կէսոյ Ը դարու և անդր Հագարացիք և Պարսք աւերեցին զնա, և բազում բռնաւորք յիրերաց խլէին, ընդ որս և Վիրք 'ի սկիզբն ԺԳ դարու, Օսմանեանք 'ի ԺԶ դարու, և այլն։ Ի բարգաւաճանս քաղաքին բազում իմաստունք Պարսիկք երևեցան 'ի քաղաքիս։ Ոչ գիտեմ երբ խաղաց յաւեր յամայի դարձաւ Պարտաւ, և մնան աւերակքն 'ի պղղաւէտ սահմանս, ուր լինի և ընտիր շերամ մետաքսի։ Մերձ 'ի Պարտաւ էին հովիւ տեղիք Թագաւորին Աղուանից Ալուէն կոչեցեալ, և կաթուղիկոսին' Բերդակոր։ Յիշատակին զվայրօքն և Դոսփոխոն գիւղ արքունի, և Դուրնոճ ուր Մաթէ աշակերտ Յովհաննու Մանդակունւոյ եղեալ էր մասն 'ի նշխարաց սրբոց Ղուկասուրշին և Հռիփսիմեայց։

181. Ցարևմտեան կողման գաւառիս առ խաղիւք Թարթառայ կան անուանի մենաստանքն Խութրայ կամ Խութրայ-վանք' պայծառացեալ 'ի ԺԲ-ԺԳ դարս. և Խութաւոյ վանք կամ Դադի վանք յանուն աշակերտի միոյ առաքելոյն Թադէոսի, որոյ կանգուն կայ եկեղեցին' մեծ շինեալ յԱրզուխաթունէ խաչենոյ տիկնոջէ յամին 1214, և արձանագիր նորա և այլոց, և գերեզմանք պայազատաց. մերձ սոցին և միւս վանք Գէտամէջ կոչեցեալ։ — Յերի վայրացս առ Դուտականաւ մերձ 'ի ստորոտս լերանց Արցախու էր Կաղանկատուայ աւանն, յորմէ էր Մովսէս պատմիչ տանն Աղուանից յԷ դարու. և ներքսագոյն 'ի լեռնակողմանն Պարտաւայ' ԳՈՐՈԶՈՒ ԵՐԿԻՐՆ և լեառն Քթիշ, ուր 'ի կէս Թ դարու Ապու-Մուսէ Աղուանից իշխան զամ մի ողջոյն գիմամարտեցաւ ընդ Բուղայի բռնաւորի, աւելի քան զքսան և հինգ անգամ հարեալ ընդ նմա և ոչ պարտեալ, մինչև եկին 'ի պայման հաշտութեան. անդ է Քթիշոյ վանքն շինեալ կամ նորոգեալ 'ի կէս ԺԳ դարու. 'ի նմին լերին նահատակեցաւ 'ի Բուղայէ' Մուկաթլ Վանանդացի։ — Յերկրիս Գորոզու որ և ԳՈՌՈԶ, Թուի Թէ և մերձ 'ի լեռանն Քթիշ, որ և Քէշ գրի, էր ԳԻՍ աւան, ուր Ս. Եղիշէ առաքեալ կանգնեաց զմայր եկեղեցեաց Աղուանից, և անդ կատարեցաւ մի յաշակերտաց իւրոց, իսկ ինքն 'ի Դաշտին Զարդանի 'ի տեղիս զոհարանաց գիցն։ Անդ զկայ էառ և Սուրբն Մես

բովիլ և չքնաղ եկեղեցի փոքր , ուր և Թաղեցոյց զմասն կենդանարար փայտին , և անդ նահատակեցան ոմանք յաշակերտացն . և յԷ դարու յայտնեցաւ նշխարն սուրբ և պատուեցաւ մեծահանդէս տօնիւ . առաջ Թերևս փոխադրեալ էր խաչն Գուրգէն 'ի վանս Ծառաթափ կոչեցեալ մերձ 'ի Կեչառ (145) , զոր յիշատակէ Վարդան պատմիչ : — Յայս կողմանս Թուի լինել և ՍԱՀԱՌՆ քաղաք՝ ուր եկն նախ սուրբ Եղիշէ առաքեալ , և մի յաշակերտաց իւրոց անդ նահատակեցաւ :

182 . Հարաւակողմն դաշտին Աղուանից՝ Քէպէկըլին գաւառ ընդ երկիր է ԳԱՐԳԱՐԱՑԻՈՑ , իսկ ստորին կողմն նորա Թուի ՑՐԻ գաւառ Ուտիոյ . 'ի սմա ընդ մէջ երկոցուն հզօր գետոցն՝ Կուրայ և Երասխայ , Թուի լինել քաղաքի միոյ մեծի ԲՆԼՈՒԿԱՄ կամ Պեյլեգան կոչեցելոյ , զոր պաշարեալ Հուլաղու խանն եառ՝ կապարեայ ռմբոք կործանեալ զպարիսպն . Լէնկթիմուր վերստին նորոգեաց , այլ յետոյ դարձեալ խանգարեցաւ . անուանի են ջրանցքն զոր Թիմուր եհան՝ ածելով յԵրասխայ ջուր 'ի քաղաքս , և կոչի Նահր-ի-Պէյլան՝ յանուն ազգատոհմին Թիմուրայ : Ոմանք յաջակողմն կամ 'ի հարաւակողմն Երասխայ 'ի Մուղան դաշտի կարծեն զքաղաքս : Ի հարաւային արևելեան սպառուած գաւառիս Քէպէկլիայ և համօրէն նահանգին Գարաբաղու գետախառնումք են Երասխայ և Կուրայ , և յանկեան անդ խառնրդոցն կայ Մօղանլը գեօղ՝ յանուն անապատին մեծի :

183 . Մինչև ցայս վայր են սեփական սահմանք Հայոց Մեծաց . յայնկոյս Կուրայ և Երասխայ ունելով միայն զՓայտակարանն աշխարհ կամ զԿաղբս , որոյ սահմանք և գաւառք ոչ ճանաչին քաջ , քանզի և ոչ միշտ ընդ ձեռամբ Թագաւորացն Հայոց նուաճեալ կայր . և այսմ հակառակ՝ երբեմն և Աղուանից աշխարհ որ ընդ մէջ Կուրայ և Կովկասայ , և այն կողմն եւս Կովկասայ մինչև 'ի Կասպից ծով 'ի Պարտաւայ ցԴարբանդ , հնազանդեալ էր Հայոց , արտաքոյ հնգետասանից աշխարհաց նոցա :

## Ե. ՇԷՔԻ ՆԱՀԱՆԳ

184 . Նահանգս այս սահմանի յարևմտից Կուր գետով և Ճէւանշիր գաւառաւ , 'ի հիւսիսոյ Սըղնաղ և Կախէթ նահանգաւ Վրաց , յարևելից Կովկաս լերամբք , 'ի հարաւոյ Շիրուանաւ . արևմտեան կողմն դաշտային է , արևելեանն լեռնավայր ստորոտք Կովկասու , միջակողմն երփնուտ և ցածագոյն լերամբք : Գետք ոչ սակաւ իջանեն 'ի Կովկասոյ 'ի Կուր , Ինէնչայ , Իւծիիլեան , Դուրիանչայ , Գարչայ , Կէօկչայ , և այլն : Բայց ջուրքն չեն բաւական , այլ և ախտաբերք ամարանի . երկիրն բերէ Թթենի շերամ որդոյ առատ յոյժ , ունի և արօտս շատ : Ի հնումն գաւառ էր սա բուն Աղուանից ՇԱՔԻ կոչեցեալ , որոյ եպիսկոպոսք յիշին 'ի Զ դարէ , և իշխանք յԹ դարու , յետ որոյ Պարսք տիրացան , յորոց զամ մի կորզեցին Վրացիք 'ի ձեռն սպարապետացն Զաքարիայ և Իւանեայ . այլ դարձեալ ընդ տէրութեամբ Պարսից եկաց ցամն 1805 , յորում Ռուսք հատին 'ի նոցանէ , և յետ 1820 ամին արկին խաղաղ ընդ վարչութեամբ ռուս օրինաց : Բնակիչքն ոգիք 100,000 , աւելի կամ պակաս՝ Թաթարք և Պարսք են ազգաւ , և Հայք առաւ կամ 15,000 : Ի չորս գաւառս բաժանի Շաքի , 'ի Նուխի , Խաչմաղ , Քաղալ և Արէշ :

185 . ՆՈՒԽԻ գաւառ 'ի հիւսիսակողմն արևելից կայ , և 'ի նմա էր ՇԱՔԻ քաղաք , Թերևս 'ի Շակաց շինեալ , 'ի ստորոտս Կովկասու . այժմու քաղաքն ՆՈՒԽԻ որ և իշխանանիստ է համօրէն նահանգին , կայ 'ի նմին լեռնակողման 'ի բարձու 2875' , շրջապատեալ պարտիզօք և սոխաղարդ ձեմելեօք . ունի բերդ ոչ ամուր և գղեակ Ճարտար արարեալ դրուագօք . վաճառք և Ճարտարութիւն քաղաքիս է մետաքս : Բն . 8,000 : — Ի ԽԱՉՄԱՋ գաւառի որ 'ի հարաւոյ Նուխեայ , 'ի ստորոտս լերանցն կան Խաղխաղ և Վարդաշէն աւան (յորում 100 երդ Հրեայ) , և Արմէնիք և Վարդանլը , հայկական անուամբք , նշանակք բնակութեան Հայոց և յայս կողմանս : — ՔԱԲԱԼԱ կամ ՂԱԲԱԼԱ գաւառ յարևելեան հարաւային ծայր նահանգին կայ , և է ԿԱԲԱՂԱԿ գաւառ Աղուանից , որ և ԿԱԲԱՂԱԿԱՆ , որոյ եպիսկոպոս յիշի 'ի Ե դարէ . Քաղել գեօղ Թերևս ունիցի զտեղի ԿԱԲԱՂԱԿ քաղաքի որ յիշի 'ի Վրաց պատմութեան յԺԲ դարու : Ոմանք յանուն արքայի Քէաբալ առնեն կարծեն զանուն գաւառիս . նոյնպէս ասեն և զանուանէ ԱՐԷՇ կամ ԱՐԷՇԻՆ գաւառի՝ որ 'ի մտից առաջնոյն կայ առ Կուրաւ . 'ի գեօղս սորա նշանաւորք և Էրմէնի-գաղար . իսկ գլխաւորն Գարափաղլը-պաղար :

## Զ. ՇԻՐՈՒԱՆ ՆԱՀԱՆԳ

186 . ՇՐՈՒԱՆ կամ ՇԻՐՈՒԱՆ նահանգ ընդարձակ է , 'ի մտից ունելով զՇաքի , 'ի հարաւոյ զԿուր և զԵրասխ , յելից զԿասպիական ծով և 'ի հիւսիսոյ զպարս Կովկաս լերանց . յորոց՝ 'ի հիւսիսային ծայր սահմանացն ամբառնայ Պաղա-դաղ 11150' . այլ անտի և 'ի վայր ցսահմանս Պաքուայ՝ ցածնուն լերինքն . և գետք հզօրք իջանեն 'ի նոցանէ Փիր-Սահաթ , Ճէյրան-Կէչմէզ և Ճինկի-չայ կամ Սումկայթ , որք 'ի ծովն Կասպից Թափին . իսկ Աքսու , Իսմիլլայ , Կիրդիման 'ի Կուր խառնին : — Հարաւային մասն նահանգիս ստորև խառնրդոց Կուր-Երասխայ՝ ՓԱՅՏԱԿԱՐԱՆ աշխարհն էր Հայոց հանդէպ Պաքուաւ , որ այժմ յառանձին կողմնակալութիւն զատուցեալ է . իսկ լեռնակողմն բնակեալ էր 'ի ՇՐՈՒԱՆ ազգէ , զոր յիշէ Խորենացի յաշխարհագրութեանն , և ըստ նորոյ պատմահօրս Չամչեան՝ 'ի Սիրուանայ յորդւոյ Սիսակայ Հայկազնոյ սերեալ և կոչեցեալ . հիւսիսակողմն և արևմըտակողմն երկիր էր ԼՓՆԱՑ և ԾՕԴԷԻՑ կամ Ծօդէացւոց , զորս յիշեն պատմիչք մեր առաջինք Մովսէս Խորենացի և Եղիշէ և այլք . և զյետնոցն ասի լինել սերունդս Առանայ , որպէս Գարդմանացիքն որ յայս կոյս Կուրայ . էր Լփնաց առանձին Թագաւոր , մերթ նիզակակից Հայոց և մերթ Պարսից . քարոզեաց առ նոսա և Ս . Մեսրովպ , իբրև յազգ մերձաւոր : Ցի-

շատակերտացն ընդ Լփնաց ԾԻՂԲՔ բնակէին 'ի ստոր_ոտս լերանց նահանգիս, և գլխաւոր քաղաք էր նո_ցա ՑՈՒԻ, ուր Ս. Գրիգորիս քարոզեաց: Ի նուա_ճել տէրութեան Հայոց և Աղուանից՝ Պարսք և ապա Հագարացիք և յետոյ դարձեալ Պարսք տիրեցին կող_մանցս, և հաստատեցին կուսակալ մեծիշխան, որ և կոչեցաւ Շրուան-Շահ. որոց 'ի յետին դարս փո_խանակեցին խանք Պարսից, և 'ի սկիզբն դարուս Ռուսք գրաւեցին զերկիրն, և յամին 1820 ըստ օրինի ռուսական աշխարհաց հաստատեցին վարչութիւն և կուսակալ 'ի Շէմախի քաղաքի, յորոյ անուն կոչի և նահանգն համօրէն. և արդ արահի 'ի գաւառս հինգ, Լահիչ, Քօլթուն, Գէրկուչէթ, Քապրիստան և Սա_լեան. յորս են միահամուռ իբրև 400 գեօղք և ա_ւանք բնակեալք, բնակիչք իբրև 140,000, յորս 12,000 Հայք, իբրև հազար մի Հրեայ, այլն ամենայն մահ_մետականք Պարսք և Թաթարք և սերունդք Արաբա_ցւոց:

187. Ա. ԼԱՀԻՋ գաւառ 'ի հիւսիսոյ և յարեւմտոյ նահանգին՝ կայ, և գլխաւոր տեղի 'ի նմա է համա_նուն աւանն 'ի ստորոտս լերանց: — Ի հարաւոյ նո_րա երկրորդ գաւառն ՔՕԹՈՒՆ, յորում մայրաքաղաք նահանգին ՇԱՄԱԽԻ կամ ՇԷՄԱԽԻ քաղաք հին, (զո_րոյ հիմնադրէն պէսպէս կարծիք են անհաւաստիք), յահեկէ Փիր-Սաղաթ գետոյ 'ի բարձու 2200'. ընդ_արձակ և անպարիսպ, քարաշէն տամբք և մզկիթօք, իջեւանօք կարաւանաց և մեծ շուկայիւ, և ամուր դղեկաւ կուսակալին զօրապետի. ունի բազում գոր_ծարանս ընտիր մետաքսի, զոր բերէ երկիրն բարգա_ւաճ: Բն. 18,000, յորս 1000 երդ Հայ, որոց 4 եկեղեցիք են և եպիսկոպոս որ նստի 'ի վանս Սա_ղեան գեղջ: Հին աթոռ Շրուան-Շահից 'ի հիւսիսոյ Շէմախեայ կայր՝ ՇՐՈՒԱՆ կոչեցեալ, և բերդն Կիւ_լիստան ուր նստէր շահն. զոր յԺԲ դարու էառ Դաւիթ Վրաց արքայ. և աւերակք նորա միայն ցարդ: Բազում ճանապարհք կարաւանաց ձգին 'ի Շամա_խեայ յայլեայլ դէմս: — Յարեւմտից Շէմախեայ առ Աքսու գետով կայ Նոր Շամախի բարգաւաճեալ առ_նաւուր շահիւ, այլ յետ մահու նորա բնակիչքն դար_ձան 'ի հին քաղաքն: — Ժամաւ մերձ է 'ի քաղաքն Սաղեան գիւղն վերոյիշեալ, ուր և վանք յանուն Ս. Ստեփանոսի շինեալ յամին 1660: Կայ և այլ մենա_ստան 'ի Մոսէսի գիւղ 'ի հարաւոյ քաղաքին, նորո_գեալ յամին 1680: — Գ. գաւառն ԳԷՐԿՈՒՉԷԹ յա_րեւմտակողմն կայ Կուրայ, դաշտավայր ընդարձակ. իսկ Դ՝ ՔԱԳՐԻՍՏԱՆ որ և ԽԱՆՋՕԳԱՆ 'ի հարաւոյ Շէ_մախեայ ձգի ցսահմանս Պաքուայ և Սալեանու, թուի յանուն Կէպրաց այսպէս կոչեցեալ: Կան 'ի սմա ա_ւերակք քաղաքի միոյ առ Մուրաղի գիւղիւ որ 'ի հա_րաւոյ Շէմախեայ 'ի վերայ արքունի ճանապարհին: Մասն է գաւառս Փայտակարան աշխարհի Հայոց, որ և ԿԱՍՊՔ, քանզի յանգի 'ի ծովեզերս:

188. Ե. Գաւառն ՍԱԼԻԱՆ որ է մասն Մուղան անապատի, կայ յարեւմտից հարաւոյ Քապրիստանայ, և յելից հարաւոյ Քէպէրլինայ, յելից Մողանայ Պար_սից. և յելից կուսէ պատեալ է 'ի ծովէ, յոր թափի ընդ այս գաւառ խառնուրդն Կուր-Երասխ գետոց՝ յարեւելից կուսէ լեզուաձեւ թերակղզւոյն Սալեանայ, որ և սրաձեւ կարկառի 'ի ծով ընդ հարաւ կոյս, լեռ 'ի մէջի անդ 'ի ծայրին ունելով, և պարփակս շուրջ 'ի ծովուն, և գուբս նաւթի 'ի ծովեզերսն: Նշանաւոր է գաւառս վասն նաւարկութեան մեծի գետոյն, զի մինչև ցխառնուրդն գնան նաւք մեծա_մեծք, և անտի 'ի վեր փոքունք առ վայր մի ընդ Կուր և ընդ Երասխ, և բերեն վաճառս 'ի շահա_ստանաց կողմից. և ձուկն առատ 'ի ծովէն, որոյ գլխաւոր վաճառանոց է քաղաքն ՍԱԼԻԱՆ կառու_ցեալ յանկեան բաժանման գետոյն 'ի կրկին առաջս, (յորոց նաւագնացայինն ընդ հարաւ արեւմտից դիմէ և բաժանեալ 'ի բազում առուս թափի 'ի ծով). քա_ղաքն իբրև երիւք ևեթ փարսախօք հեռի 'ի ծովէ, ժողով խիտ է կաւակերտ կարմիր տանց 15,000 բնակ_չօք, և մեծ ձկնատեան. 200,000 Ֆռանգաց բաժ է տէրութեանն յորսոյ ձկանցն, որոց գլխաւոր է սփառխանն, յորմէ զազնիւ աղկիթն ձկան գործեն (խաւեար). յոլովութիւն ձկանցս սրսան 'ի բերա_նոյ գետոյն և 'ի վեր մինչև հուպ 'ի խառնուրդս նոցին, թէպէտ և անդր ևս քան զայն յառաջեն ձկունքն 'ի կրկին գետս Հայոց և Վրաց. որոց ար_բուցեալ զաշխարհսն երկոսին առատօր զքաւեն հո_սանք 'ի սպառուածս Հայ աշխարհի: — Աստանօր 'ի դէպ է լինել և ՓԱՅՏԱԿԱՐԱՆ հնաւոր քաղաքի Հայոց որպէս կոչէ Խորենացին, ուր թագ կապեաց Սա_նատրուկ Արշակունի յետ մահուանն Տրդատայ. և 'ի մղոնաչափութիւնս ուրեք Հայոց քաղաքաց՝ հըն_գիւք ևեթ մղոնօք տարակաց 'ի ծովէն նշանակի, և նոյնքան 'ի ՎԱՐԴԱՆԱԿԵՐՏ աւանէ. որոց հարկ է մերձ յայժմուս Սալեան լինել, ուրանօր և աւերակք գան հնոյ քաղաքի. և չէ պարտ շփոթել զքաղաքս ընդ Տփխեաց և Պարտաւայ, որպէս ոմանք Փայտակարան կոչեցին և զնոսին:

## Է. ԹԱԼԻՇ ՆԱՀԱՆԳ

189. Նահանգս այս որ 'ի հարաւոյ կայ Սալեա_նայ և 'ի մտից Կասպից ծովու, յարեւելից Ատրպատա_կանի և 'ի հիւսիսոյ Կիլանայ Պարսից, (յորոց հանին զսա Ռուսք յամին 1812), վերջին սահման էր Հայոց 'ի հարաւոյ արեւելից, և ոչ բովանդակն, այլ որպէս թուի հիւսիսային կողմն ևեթ մասն էր Փայտակա_րան աշխարհի, և գետն Պոլորուփ որ սահման հա_տանէ ընդ Մուղան՝ բերէ զանուն ԲԱՂԱՌՈՑ և ՌՈՎ_ՏԻԲԱՂԱ գաւառաց կողմիցն Հայոց, և ԱՌՈՒՍՆ ա_ւան զԱՌՈՍԳԻԺԱՆի: Ի վաղ ժամանակս ազգ Կասպից բնակեալ էր յերկրիս, և Դեղք և Դելումք 'ի հարա_ւոյ կուսէ. Հայոց նուաճեալ զհիւսիսային մասնն կոչեցին յանուն Փայտակարան քաղաքի, այլ և 'ի հին անուն ազգին և ծովուն կոչէր ԿԱՍՊՔ: Արեւմտա_կողմն երկրին լեռնախիտ է և բարձր, արեւելեանն հարթ և բարեբեր, ջերմ և բարուոք կլիմայիւ, վասն որոյ և յաջողէ անդ մշակութիւն հարաւակեր բու_սոց: Ցերիս գաւառս արոհի նահանգս, յԱՐՔԵՒԱՆ, ՍԷՓԷՏԱՇ և ԼԷՆՔՈՐԱՆ, յորս միահամուռ 235 չէնք

համարին ընդ մեծ և ընդ փոքր, բնակիչք 35,000 մահմետականք, իսկ Հայք 200 ևեթ ոգիք ասին լինել։

190 · Ցառաշինումն գլխաւոր տեղի է Արգեւան աւան մերձ 'ի ծով, յեզր Վիլաշ գետոյ, յորոյ հիւսիսոյ բազում գետք մանունք մտանեն 'ի ծով. և առ բերանովք նոցա կայ Դըղըլաղաճ գեօղ յունչ ցամաքի, և յանունն նորա կոչի ծովածոցն գործեալ 'ի ցամաքակղզւոյն Սալեանայ, մերձ 'ի գեօղն կայ Սարա կղզեակ, առ որով հանգրուանք մարտիկ նաւաց Ռուսաց։ — Ի ՍԷՓԷՏԱՇ գլխաւոր տեղի է Աստարա աւան զոր նախ յիշեցաք յահեկէ Վիլաշայ։ Իսկ 'ի ԼԷՆԳՈՐԱՆ համանուն իշխանանիստ քաղաքն յեզր ծովուն և 'ի բերան յարանուն գետոյն, ուր նաւահանգիստ է անքոյթ և վարուն, և անտի հանեն զորիզ և առաքեն 'ի Ռուսս. տունք քաղաքին շրջապատեալ են պարտիզօք. ունի և բերդ ամուր 'ի Ռուսաց կառուցեալ։ Ի բնակիչսն են և 34 երդ Հայք, եկեղեցեաւ հանդերձ։ — Ի սպառուած նահանգին 'ի սահմանակցութեան Կիլանայ կայ ԱՍՏԱՐԱ քաղաքաւան, 'ի բերան համանուն գետոյ. առ նովին պայազատք խանից Թալիշայ։

## Ը · ՊԱՔՈՒ ՆԱՀԱՆԳ

191 · Նահանգս այս փոքր (իբրև 930 մղոն քառ.) որ և ընդ Շրուանայ կուսակալութեամբ դրի ըստ զինուորական տեսչութեան, կայ յարևելեան սպառուածի աշխարհիս Հայոց և յունչ Կովկասու, լեզուաձև երկայնեալ ընդ ծով, յելից Քապրիստանայ և Սումգայթ գետոյ, որով և 'ի լերանց Կովկասու անջրպետի։ Երկիր բարձր և քարուտ է, և հրաբանդանս յոլովս ունի յեզերս ծովու. գետ ոչ խաղայ յերկրի աստ, այլ լիճք միայն են տամկի չափ, և այնք դառն և աղի ջրոյ. վասն որոյ զանձրևաջուր ըմպեն 'ի դուբս ժողովեալ. այլ կլիմայն բարի է, ջերմ և անուշօդ, և բուսաբերութիւն ոչ յոյժ նըւաղեալ, բարգաւաճէ և վաճառականութեամբ։ Քան զամենայն նշանաւոր յերկրի աստ են դուբքն և լճակք նաւթի բոցավառ ծխելոյ. և հրաբուխքն, մանաւանդ թէ աղմաբուխ բլուրք, յորոց մին պատառեալ յամին 1817 զզայրեաց ընդ բոցոյ ծխոյ և տիղմն քարախառն։ Երկիրն համօրէն զանդեալ է նաւթի նիւթով, որ ոչ ուրեք այնպէս առատ գտանի որպէս աստ. և բազում այն է զի ծակոտեալ ծորէ արտաքս, որպէս առ Պալըխանի կամ Պալէխան գիւղիւ 'ի հիւսիսոյ արևելից քաղաքին, ուր և 85 աւազանս հատեալ է 'ի վաղուց ժամանակաց, և անդ ժողովի նաւթն թխագոյն և կարմրանիշ. այլ 'ի մերձակայ բլրէ ուսանէք բխէ և սպիտակ նաւթ, որ 'ի ջուր արկեալ բորբոքի. 200,000 Ֆրանգաց բաժ է տէրութեանն յայսմ նաւթէ։ Բնիկք երկրին 'ի պէտս լուսոյ և ջերմութեան վարեն զնաւթս, և վաճառականք տանին 'ի Պարս և 'ի Տաղստան։ Իսկ Կէպրք կամ Փարսիկք սերունդք հնոց հրապաշտից յառաջնոց անտի յանյիշատակ դարուց պաշտաման կրակի՝ գեգերեալ կան զվայրօքն, առորուշան մշտավառ հրոյ կազմեալ մերձ դրացն նաւթի և ծովուն, զոր Աթաշ-կէտհն կոչեն, այն է Կրակետղ, յԱտրուշ-Մըշտան տեղւոջ տափարակի, զորով վանս հաստատեալ է. և նաւթն պղպջակեալ ընդ գետինն եռայ, ծխէ և ցոլանայ. բուն մեհեանն յաւերժական վառման կրակին, Արթանիգ կոչեցեալ, որմովք պարսպեալ է, և բազմին բարձր ընդ աշտարակաձև խորանաւ, 'ի քառից ծայրից ունելով սիւնս բարձունս 25', ընդ որս ելանէ նաւթն խողովակօք խառնացեալ և բոցանայ ընդ ծխանսն զամպարափայլ ջահաւորութեամբ 'ի գիշերի՝ երեք ոտնաչափ բոցով, որ և նաւաց 'ի հեռուստ լապտերակերպ լոյս տայ. գործեալ են և շուրջանակի ծորակք կամ բերանք նաւթի, զոր մերձ ընդ մերձ բացեալ վառեն 'ի լուսաւորութիւն և 'ի հանդէս տօնից. անդ կատարեն հրամոլքն զաղօթս դենին իւրեանց, և ամի ամի ուխտաւորք գան 'ի Հնդկաց և 'ի Մալապարայ, և տանին 'ի սրբազան նիւթոյն։ Գոյ և լճակ մի նաւթի մերձ 'ի սոսա յարաշարժ ծածանմամբ, որ 'ի պայծառութեան գիշերոյ 'ի կապուտակային երփն հարեալ գեղեցիկ յոյժ փայլ հատանէ։ — Ի պատճառս կրակիս հաւանելի է զԱԹՇԻ կոչումն միոյ 'ի գաւառաց Կողբից աշխարհի Հայոց, որ և յընթերակայն իւր կցեալ 'ի ԲԱԳԱՒԱՆ՝ կոչեցաւ ԱԹՇԻ-ԲԱԳԱՒԱՆ. այժմ կոչի երկիրս այս ԱՓՇԵՐՈՆ, որ ստուգաբանի ըստ պարսիկ բարբառոյ Ապի-շէրան, այսինքն է Ջուր շառաչող, զի մեծապէս և անդուլ շառաչեն ալիք ծովուն՝ առ Աֆշէրան գիւղիւ 'ի ծայր թերակղզւոյն. յորում են 40իւ չափ գեօղք, և 32,000 բնակիչք, Պարսք և Փարսիկք և Թուրքք, և Հայք 600 ոգիք։ Յամին 1806 Ռուսք ունին զերկիրս։

192 · Քաղաքն ՊԱՔՈՒ, որ կրէ տակաւին զանուն Բագաւան գաւառի, 'ի հարաւային ծովեզեր թերակղզւոյն կայ, յեռի դրացն նաւթի, լուսնաձև տարածեալ 'ի բարձր քարափին, ծովու շուրջ պարըսպեալ, ունելով և դղեակ 'ի բարձրաւանդակի. ծովս գործէ նաւահանգիստ գեղեցիկ ընդ մէջ քաղաքին և երկուց կղզեաց. զմասն մի քաղաքին ծածկեալ է ալեօքն, և յայլմէ մասնէ հեռացեալ։ Նշանաւոր է 'ի քաղաքին աշտարակ մի բարձր Գըզ-գալէ անուն, մզկիթք, կարաւանատունք, եկեղեցի մի Հայոց և միւս Ռուսաց. բնակիչք 8,000։ Ամի ամի իբրև 220 նաւք գան 'ի Պաքու բառնալ նաւթ և քրքում և բամբակ, ևս և մետաքս և աղ և ձուկն և որիզ. և ընդ ցամաք ձգին արահետ ճանապարհք 'ի Դարբանդ 'ի Գանձակ և 'ի Թալիշ։ — Յելից քաղաքին առ ծովեզերին կայ Շիխ կամ Սիխ գիւղ, յորում մզկիթ մի ուխտատեղի օրիորդի Պիպէ-հէյպէթ կոչեցելոյ. ընդ մէջ գեղջն և քաղաքին կան 27 դուբք նաւթի։ Մերձ 'ի Պելըքան է Էմիր-Աճէմ գիւղ, յորում գործի կապերտ սփռոցի ազնիւ յոյժ։ — Ի հիւսիսոյ Ափշերոն գեղջ զոր 'ի վեր անդր յիշեցաք՝ կայ Բիրաղաղայ կղզի որ կոչի Սվէտոյ ըստ Ռուսաց։

## Թ. ՔՈՒՊԱ ՆԱՀԱՆԳ

193. ՔՈՒՊԱ նահանգ 'ի հարաւոյ ունի զՇաքի և զՇիրուան՝ բարձրաբերձ լերամբքն Կովկասու անջրպետեալ, 'ի հարաւոյ զՊաքու, յելից զծովն Կասպից, 'ի հիւսիսոյ զԴարբանդ և զՏաղստան։ Լեռնավայր է մեծ մասն երկրին, ծովակողմանն միայն դաշտանալով. և 'ի սմա ամբառնայ մի 'ի բարձրագոյն կատարաց Կովկասու Շահ-տաղ 13,100'. և գետք ոչ սակաւ իջանեն 'ի նոցունց. որոց գլխաւոր է Սամուր սաստկահոս և երագընթաց քան զամենայն գետս Կովկասու, որ յարեւմտից հիւսիսոյ 'ի Ճարոյ-Պելոգան (199) նահանգէ գայ և աղեղնաձև հատեալ զայս նահանգ՝ թափի 'ի ծովն բազում բերանօք. այլ գետք, Քուտիալ կամ Քուդիա, Գարա-չայ, Տէնկի, և այլն։ Չորք գաւառք են նահանգիս, Չաբրան, Պուտուխ, Քաղբի և Քուպա, յորս ընդ ամէն 300 գեօղք են և բնակիչք 90,000, Լէկզիք, Թուրքք և Պարսք. իսկ Հայք 2000 և Հրեայք 3000։ Ի հնումն Կովկասեան ժողովուրդք՝ Լեկք (յանուն Լեկանայ եղբօր Հայկայ) և այլք, և երբեմն և Աղուանք ունէին զերկիրս զայս։

194. Ա. ՇԱԲՐԱՆ գաւառ 'ի հարաւոյ կայ այլոցն առ Քարքխտաննու, Պաքուաւ և Կասպիականաւն. առ որով ամբառնայ Պէշբարմաք լեառն 3000', վասն հնգից ապառաժ գագաթանցն այսպէս կոչեցեալ. յելից նորա կայ Խըտըրզինդէ գիւղ, առ որով աւերակք հնոց շինից, և պահակի միոյ 'ի լերինն՝ նման Դարբանդայն, զոր և 'ի Նուշիրուանայ Պարսից արքայէ կարծեն ոմանք շինեալ, և թերևս իցեն առնուանեալ Դրանցն Ճորայ։ — Բ. ՊՈՒՏՈՒԽ գաւառ յարեւմտակողմն նահանգին երկայնեալ ձգի, լերինս բարձունս ունելով, և 'ի միում յայնցանէ յ'7000' բարձու կայ Պուտուխ աւան. սակաւածանօթ է երկիրն, որպէս և Գ. գաւառն ՔԱՂԲԻ համանուն աւանաւ յաջմէ Սամուրայ, որք թերևս յանուն խազրաց ազգի այսպէս կոչեցան, զի և ոչ հեռի 'ի վայրաց գերգերէին երբեմն նոքա, յորոց և Կասպիականն իսկ կոչեցաւ Ծով խազրաց։ Կանգնեալ է 'ի խաղքի մահարձան զօրավարի միոյ Շահ Թահմասպայ որ յամին 1458 մարտուցեալ ընդ Շրուանն Շահի առ անկաւ։ Ի հարաւոյ աւանին կայ Կեճէր կամ Խնէլոր գեօղ, ուր ձմերոցս հաստատեաց առ մօք կուսակալն Տաղստանու հայկազնն Արղութեան։

195. Դ. ՔՈՒՊԱ գաւառ յելից կայ և շրջափակեալ յայլոց և 'ի ծովէ. քաղաքն համանուն յաջմէ Քուտեալայ, բարձր 1875', ունի բերդ և հողաղանգուած պարիսպ և ցցապատնէշ փայտեայ, 800 տունս և վաճառանոցաւ անչէն կապերտից իմիր Աճէմայ (192). մզկիթք Քուպայ բրգաձևք են և ծխանաձև կատարաւ՝ ըստ կարգայ միւէզզինն։ Բնակիչքն 4,300, յորս և Հայք սակաւք. իսկ Հրեայք իբր 3000 նստին 'ի Քուլչոտ աւանի յայնմ կողման գետոյն, որք 'ի հազարաց ամաց հետէ անտն բնակեն 'ի գաւառիս յեօթն գեօղս և այս 'ի միումս յայսմ ամփոփեալ. առ անին խօսին աղքա զ'իւր բարբառ պարսիկ։ Ցամաքն քան զժէ գար 'ի սեղուզ Քուպայ կայր աւերակ հնոյ քաղաքի, զոր կարծեմ թագաւորանիստ լինել Մասքթաց 'ի Դ. դարու, և յելից նորին զԴաշտն Վատնեան՝ յորում Ս. Գրիգորիս թոռն Լուսաւորչին ընթացեալ ձիոց յարշաւանս կատարեցաւ վկայութեամբ, յամին 348, ծագէ 'ի ծագ հեռի յարեւմտեան սահմանացն Հայոց՝ 'ի նահատակութեան վայրաց հաւուն իւրոյ. և թերևս ցայժմ հարաւակողմն Դարբանդայ ՄՈՒՍՔՈՒՐ կամ ՄՈՒՍՔՈՒՐ՝ այսպէս կոչիցի յանուն Մասքթաց. յորոց զենեալ մահուան թոռին լուսաւորչին իւրեանց լուծին Հայք՝ հարեալ զնոսին և սպանեալ զարքայն նոցա զՍանեսան՝ որ զՍուրբն 'ի մահ դատապարտեաց։ — Ցարեւմտից հիւսիսոյ քաղաքին կայ Նօր Քուպա 'ի լերինս, ուր Երմոլոֆ զօրավար Ռուսաց որ նուաճեաց զկողմանս զայսոսիկ՝ հաստատեաց առնս զինուորաց կանամբեաց։

## Ժ. ԴԱՐԲԱՆՏ

196. Այս նահանգ որ երբեմն առանձին գաւառաւն անձուկ սահմանէր, և այժմ ընդարձակեալ զլուխ կայ բազմաց գաւառաց Տաղստանու՝ յելից կուսէ զծովն ունի, 'ի հարաւոյ զՔուպա, 'ի մտից զՇէքի և զՊէլոգան, 'ի հիւսիսոյ զԹարղու նահանգ Կովկասու. որոյ լերինք ագխագխեալ ունին զհանքէն երկիրս զայս, և գետք ոչ հզօրք խաղան ընդ խորահովիտս։ Բնակիչքն սերունդք նախնի լեռնաբնակաց Լեկաց և Հոնաց և այլոց բնիկ ազգաց և եկաց կան ընդ ձեռամբ Ռուսաց, այլ ոչ ամենեքին նուաճեալք։ Եօթն գաւառք են նահանգիս, յորոց երեք հիւսիսայինքն Տարկոյ, Գազի-քումուք և Քայթաք՝ յոյնկոյս կան պահակին Դարբանդայ, և չունին ինչ յարակցութիւն ընդ Հայ աշխարհի, վասն որոյ և արտաքոյ մնան տեղագրիս. իսկ չորքքին հարաւագոյնքն փոքր 'ի շատէ մերձաւորք են Աղուանից և Հայոց, և են Սամուր, Քուրալ, Թապասարան և Դարբանդ, որք 'ի հնումն բազում անգամ ազատ ժողովրդոց կալուածք, և երբեմն Հայոց և յաճախ ևս Պարսից հնազանդեալք։

197. Ա. ՍԱՄՈՒՐ յելից Քօթուճայ (187) կայ և 'ի հիւսիսոյ Պուտուխայ (192), և ունի զԱխտի բերդաւան յաջմէ Սամուր գետոյ յ'3300' բարձու, ուր նստի հրամանատար Ռուս։ Ցարեւելից նորա կայ Նոր Թիֆլիզ ամրոց։ 6,000 բնակիչք լեռնականք են գաւառիս, անդէորդք 'ի լերինս։ — Բ. ՔՈՒՐԱԼ յելից Սամուրայ կայ, և ունի զՔուրախ կամ Կիւրիւրէ գեօղ. բնակիչքն 10 կամ 15,000 ազգք Քուրա կամ Քուրբէ կոչեցեալք, որք երբեմն՝ վարէին ազատ իշխանօք Արսլանպէկ մականուանեալք յազգէ Աւարաց, զորս հալածեաց Նադիր Շահ յայնկոյս լերանցն, և զանբունքս նոցա գարձ ապարեալս անգրէն՝ գերեաց Շեամիլ առաջնորդն ազատ լեռնականաց յամին 1842։ Գլխաւոր տեղի գաւառիս է Քուրախ 'ի 4800' բարձու. ղապարանս իմիցն կամ Արսլանպէկից՝ յանկեր-

լանոց փոխեալ է Ռուսաց ։ — Գ. ԹԱԳԱՍՏԵՐԱՆ որ է ԹԱԽԱՍԳԱՐԱՆ յիշատակեալ 'ի մերոց նախնեաց, յեզր Քուրալոյ կայ և 'ի հարաւոյ Դարբանդայ, առ Սամուրաւ և առ Կասպիականաւ. Ռուսաց գետ խաղայ 'ի հովիտս լերանց նորա, որ բարեբերք են ։ Բնակիչքն իբր 12,000 հնազանդք Ռուսաց, և այլք աղտաք. գլխաւոր չէն Քորլուղ՝ առ վտակաւ միով Ռուսպատայ ։

198. Դ. ԲՆԻԿ գաւառն ԴԱՐԲԱՆԴ յեզր հիւսիսոյ Թապասարանայ կայ, և յեզր Քայթաքայ, 'ի հարաւոյ Թարղուի և 'ի մօտ ծովուն, ուրանօր դաշտանայ երկիրն ոռոգեալ 'ի Կի–մրէ–չայ և Պօղան գետոյ, որովք և պտղաբեր յոյժ գործի և հացաւէտ. 'ի սահմանս քաղաքին իբրև 8-900 պարտէզք են մրգոց, և պտղալից տրօտք 'ի լերինս ։ Անուանի է գաւառս այս վասն մեծի պահակին իւրոյ պարսպելոյ ընդդէմ ասպատակաց հիւսիսային ազանց լեռնականաց յ'2000 ամաց հետէ, և դրանցն մօտ յայս կամ յայն կողմն. վասն որոյ և 'ի գրաւ իմն բանից կարգեալ 'ի սկզբանէ ծանօթութեան վայրացն. մերթ 'ի նոցին հիւսիսայնոց նուաճեալ, 'ի Խազրաց և 'ի Հոնաց, և մերթ յԱղուանից և 'ի Հայոց, և ապա 'ի Պարսից, յետոյ յԱրաբացւոց և 'ի Թուրքաց, և ապա ուրեմն 'ի Վրաց և յԱղուանից, յետոյ դարձեալ 'ի Պարսից և յՕսմանեանց և 'ի Ռուսաց. որք միւսանգամ 'ի սկիզբն դարուս հանին զայն 'ի Պարսից, և կարգեցին յատանձին գաւառ զինուորական և աթոռ կողմնակալի զօրավարի. և են գաւառին 26 գեօղք. բնակիչք քաղաքայնովքն հանդերձ 40,000. յորս Հրեայք 3,000, Հայք 600. այլքն Պարսք և Արաբացիք ազգաւ ։

199. Քաղաքն ԴԱՐԲԱՆԴ որ է Տէրպէնտ Թարգմանի Կապ–ե–Դուան (որպէս և ոմն 'ի նախնեաց մերոց ստուգաբանէ), անուանի է ընդ ամենայն աշխարհ վասն Դրանն և Պահակին Ճորայ, զորմէ տեղաւ գոյցք են առ արևելեայս, և ոմանց գիրք (Տէրպէնտ-Նամէ). բաղաւէ մի Կովկասու յոլովայրէն մեծ ձգեալ 'ի Ճորոյ–Պելոդան կողմանց ձգի յայս կոյս ընդ արևելս մինչև մերձ 'ի ծովն, միջոց անձուկ թողեալ, ընդ որ անցք են գիւղին և միակ ընդ բովանդակ երկայնաձիգ պար լերանցն որ ընդ մէջ Պոնտոս և Կասպից ծովուց. միւս ևս անցից գոլով 'ի Տարիալ և այլ երրորդ անյայտ կամ անվարուն այժմ ։ Արդ յայսմ միջոցի ընդ լեառնն և ընդ ծով շինեալ է քաղաքն և Դուռնն, և 'ի մօտ կուսէ Պահակն, որ է պարիսպ երկուստեք 'ի ծովեզերէն ձգեալ 'ի լերինս իբր երից քառորդաց ժամուց ճանապարհաւ ընդ երկայնն, և վեց վայրկեան ընդ լայնն, և 'ի մէջ պարսպացն են Դրունքն, զոր նախ Հրուդենայ Դիւցազին Պարսից ասեն շինեալ (յամին 1650-1800 նախ քան զՔրիստոս). և ապա Աղեքսանդրի Մեծի եդեալ Դրունս երկաթիս, վասն որոյ և քաղաքն կոչի Տէմիր–Գափու, Երկաթի Դուռն, և երկայնեալ ասեն զպարիսպն յարևելից 'ի մէջ ծովուն հարուստ ասպարէզս, և յարևմտից ընդ լերինն ցանծանօթ սահման. այժմ երևին յայսմ կողման մնացուածք նորին ց'20 մղոն, և ուրեք ուրեք անդր ևս, որովք երևի մեծագոյն լինել քան զամենայն պարիսպս՝ յետ Չինացն, թէ և ոչ որպէս արևելեայք ոմանք ասեն՝ մինչև 'ի Սեաւ ծով ձգեալ ընդ բովանդակ պար լերանցն ։ Պահակս այս ըստ անուան զանազան ազգաց մերձակայից և անցողաց կոչեցաւ Պահակ Ճորայ կամ Հոնաց. Դուռն Աղուանից կամ Հոնաց, Դուռն Խազրաց, Կապան Ձորայ, ևս և Դուռն Կապէից (յոր անուն կան և այլ Դրունք), և Դուռն Ալանաց, այլ բնիկ Դուռն Ալանաց՝ Տարիալ է. Արաբացիք վասն կարևոր յարգի տեղւոյն՝ Դուռն Հաւատոյ՝ նա և Դուռն Դրանց (Բապ-իւլ-էվպապ) անուանեցին ։ Ի մերոցս պատմչաց յաճախակի կոչի Դուռն և Պահակ Ճորայ. և ինձ թուի սակս սկսանելոյ պարսպացն 'ի ՃՈՐ կամ ՁՈՂ մայրաքաղաքէ Աղուանից, որոյ տեղի հարկ է լինել 'ի Ճորոյ գաւառի Պելոդանայ (1), ուրանօր երևին խոկ հետք պարսպացդ ։ Բազում անգամ ասպատակք զօրաց ոչ կարացեալք ընդ Դրանն մարտնչել և անցանել, խրամատեցին զՊահակն և անցին. այսպէս արար և արքայն Աղուանից Վաչէ առ Պերոզաւ 'ի կէս Ե դարու. որդի սորա Կաւատ նորոգեաց զայն, վասն որոյ և յիւր անուն կոչէր Աղղու–Կաւատ. այլ առաւել ևս ամրացոյց նորին որդի Նուշրեւան Խոսրով 'ի Զ դարու. բայց յամին 628 Խազիրք կործանեցին ոչ սակաւ մասն 'ի պարսպացն և անցին ընդ Դուռնն. ընդ այն անցոյց զնոսա երկիցս և Հերակլ կայսր՝ ասպատակել յաշխարհն Պարսից. որք և յաւուրս տիրապետութեան Արաբացւոց՝ մերթ գրոհ տային ընդ այն և մերթ արգիլեալք լինէին ։ Ի ԺԱ և ԺԲ դարս քրիստոնեայք 'ի բուռն արկին զքաղաքս և Թագաւորք Հայք նստան 'ի նմա, որք և

(1) Երկիր այս ՃԱՐՈՑ–ՊԵՂՈԴԱՆ կամ ՊԵՂԱԴԱՆ կայ ընդ մէջ Կովկասու և Ալազան գետոյ, 'ի հիւսիսոյ արևմտից Շաքի նահանգի, և յեզր հարաւոյ Թելաւայ կամ Կախեթու Վրաց նահանգի. նուաճեալ 'ի Ռուսաց, այլ ազատ օրինօք քաղաքավարեալ. երեք պետութիւնք և գաւառք են 'ի նմա, Ճարոյ–Պելագան, Ենիսէլ և Իլիսուի, որք 'ի հնումն մասն էին աշխարհին Աղուանից ։ Գլխաւոր քաղաք բոլոր երկրին է Զաքաթալի 'ի Ռուսաց կառուցեալ և Պելագան 'ի լերինս ։ Ի հիւսիսոյ Զաքաթալեայ կայ 'ի լերինս Ճար աւան, զոր կարծեմ տեղի հնոյ ՁՈՂ մայրաքաղաքի Աղուանից որ և ՃՈՐ կոչի, ուր քարոզեաց նախ Ս. Եղիշէ առաքեալ Աղուանից, և անդ նստան յաջորդք Ս. Գրիգորիսի ցկէս Զ դարու. յորում ժամանակի թուի աւերեալ քաղաքին 'ի լեռնայնոցն, և անուանն նորին մնացեալ 'ի վերայ Պահակին, որ և ցայս վայր թուի ձգեալ. մինչև ցայսօր գտանին 'ի վիճակին Ճարայ բուն Աղուանք, քանզի զուտ այցի լեզուն խօսին ։ Ապա Դարբանդ ոչ էր բուն Քաղաքն Ճորայ, այլ Քաղաք Պահակին Ճորայ, որպէս գրեն պատմիչք մեր հինք, բայց յետոյ սովորութիւն եղև կոչել զնա այնպէս, և զնա միայն ։ — Ի մօտ Պելոդանայ կայ ՍՂՆԱԳ երկիր, մասն Կախեթու նահանգի Վրաց, յերիս տրոհեալ գաւառս, ընդ մէջ Ալազան և Եօռի գետոց, յՈւջանամախար, 'ի Բուն Սղնաղ և 'ի Ճէրախ. մասն են և սոքա հնոյն Աղուանից, և կոչէին 'ի հնումն ԿԱՄԲԵՃԱՆ կամ ԿԱՄԲԱՃԻԿՔ, որպէս և ցարդ կոչի վիճակ մի Կամբէչովանի, և ԲԱՂԱՍԱԿԱՆ ԴԱՇՏ, որ է խոպանն ընդ մէջ Կուրայ և Եօռայ. երկոքին ևս յիշին առ պատմիչս մեր ։

ցհենդ ազգ. յիշին · այլ յԺԳ դարու զերծան ընդ այն Թաթարք և նուաճեցին զնոսա և զայլ ազգս :

200 · Արդ. պարիսպք պահակիս ուր ուրեք կանգունն են՝ ունին 24-26՛ բարձրութեան և 8՛ թանձրութեան, 'ի կարմիր քարանց զանգեալ և ապխտակ վիմօք արտաքուստ ագուցեալ. Ճեմելիս լայնս 'ի վերայ ունելով ելանելիս սանդխօք. եօթն դրունք են քաղաքին. չորք ընդ հարաւ և մի ընդ հիւսիս, և մի 'ի միջնաբերդն հանելով, և միւսն է գերահռչակ Դուռնն Երկաթի, զորոյ և զմի 'ի թևոցն կարծեն լինել 'ի Կելաթի վանս Վրաց, յորում գոյ արաբացի արձանագիր՝ որ ասէ հրամանաւ Ապուլսուարայ (ամիրայի Դունայ) շինեալ զայն յամին 1063, այլ չասէ ուր և վասն էր. Դաւիթ արքայ Վրաց եբարձ զայն 'ի Դարբանդայ Ի սկիզբն ԺԲ դարու : Քաղաքն ըստ կարի բարեձև է, այլ վասն տօթոյ ամարայնոյ ոչ բարւոք 'ի բնակութիւն. նշանաւոր է 'ի շինուածոց մզկիթ մի երկայն, կամարակապ սեամբք և գմբեթաւ. միջնաբերդն 'ի բարձու յարևմտակողմն, յորոյ հարաւոյ սկսանի պարիսպ պահակին. իսկ 'ի ծովուն չերևին արդ ոչ պարիսպք և ոչ հետք ամբարտակաց՝ յորոց միջի առի եղեալ նաւահանգիստ անքոյթ. այժմ դժուարամերձ են ափունք քաղաքին, նաւակաց ևեթ համարձակելիք, որք բառնան զբրբուն՝ զընտիր վաճառ քաղաքին : Նշանաւորք են և գերեզմանք Դարբանդայ, և անուանի՝ կոչեցեալն Գըրքըլար, այսինքն Քառասնից մահմետականաց կոտորելոց 'ի քրիստոնէից կամ 'ի Թաթարաց : 2000 տունք են քաղաքին, և բնակիչք 12,000, մահմետականք պարսկազգիք, Հրեայք 180 երդ, և Հայք սակաւք. որոց նախնեաց բազում անգամ շահատակեալ է ընդ Դուռնս այս, մանաւանդ Վաղարշայ և որդւոյ նորին Խոսրովու և Թոռին՝ Տրդատայ. առ որով աւանդի Սուրենայ՝ եղբօր Լուսաւորչին մերոյ թագաւորեալ անդ : Ցեղ զարմիցն Տրդատայ՝ մեծն Վարդան հարեալ 'ի Հայս զպարսիկ մարզպանն Գաշնակին, էառ քանդեաց և զայն, և ետ զԴուռնն 'ի Վահան թագաւորազն Աղուանից. Թերևս յանուն նորա կոչէր Վարդանեան դաշտ հիւսիսակողմն Դարբանդայ, ուր Մազքութք բնակէին, ըստ աւանդութեան ուրուք 'ի մերոց նախնեաց : Որք և սակէպ յիշեն մնացան կամ երկոտասան ազգս կամ թագաւորս բնակեալս 'ի լերինս՝ յայն կողմն պահակին, զորս տեառք Դրանն վարձէին 'ի նիզակակցութիւն 'ի կարևոր պէտս մարտից. իսկ առաւելեալք՝ ընդ որս և ոմանք 'ի մերոց կրսեր պատմչաց՝ ազգս քսան և չորս ասեն յայնկոյս պահակին վտարեալս յԱղեքսանդրէ Մեծէ. զորս և առ հասարակ կոչեմք ԳՈՎԳ ԵՒ ՄԱԳՈՎԳ (Աճուճ-Մաճուճ) անուանեն, և 'ի նոցանէ խիթան զաւերումն աշխարհաց 'ի կատարած ժամանակաց :



Ի խաչարձանաց Անւոյ . — Des Monuments d' Ani.

# ՑԱՆԿ ԱՆՈՒԱՆՑ

ՀԱՄԱՌՕՏՈՒԹԻՒՆՔ. — բ=բերդ. գ=գիւղ. գտ=գետ. գւ=գաւառ. լ=լեառն. լճ=լիճ. վճ=վիճակ. ք=քաղաք:

